ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7 ՀՈՒԼԻՍ • 1964
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
„ЛЕНИНЯН УГИОВ" ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ



## Բովանդակություն

# Содержание







# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԱՌԱՋԱՄԱՐՏԻԿՆԵՐԸ

Պատմությունը լուրջ և պատասխանատու խնդիր է դրել մեր երկրի կոմունիստների առջև, որոնց առաջինը վիճակվեց փշրել ստրկացման ու շահագործման շղթաները և կառուցել նոր, կոմունիստական հասարակություն:

Սովետական Միության աշխատավորները, պինված գիտական կոմունիզմի վսեմ գաղափարներով, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, կատարեցին այնպիսի վիթխարի ռևոլյուցիոն վերափոխումներ, որոնց մասին դարեր շարունակ երազել է մարդը: Իսկ հիմա, մեր պարտիան, սովետական ժողովուրդը լուծում են երեք կարևորագույն խնդիրներ՝ ստեղծում են կոմունիզմի նյութատեխնիկական բազան, ձևավորում կոմունիստական հասարակական հարաբերությունները և դաստիարակում նոր մարդուն:

Այդ պատմական, հիրավի հոյակապ միսիան ստանձնել է ՍՄԿՊ-ն: Դա խիստ բարձրացնում է յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվությունը պարտիայի սրբազան նպատակի՝ կոմունիզմի կառուցման գործում: Պարտիայի ստեղծարար գործունեության, ժողովրդին դեպի կոմունիզմ առաջնորդելու հաջողությունը մեծապես կախված է կոմունիստներից: Ինչպես գետը հզորացնում, խոր ու լայն են դարձնում հազարավոր առվակների ու վտակների կենսաբեր ջրերը, այնպես էլ պարտիայի ամենօրյա, բազմակողմանի գործունեությունը բոլոր կոմունիստների անձնվեր աշխատանքի հանրագումարն է: Պարտիան ամբողջ երկրի կառավարումը, տնտեսական ու կուլտուրական հոյակապ շինարարությունը իրականացնում է նախ և առաջ իր անդամների միջոցով: Այստեղից էլ այն մեծ պարտականությունները, որ դրված են յուրաքանչյուր կոմունիստի վրա, սկսած շարքային աշխատողից մինչև ղեկավարը:

Կոմունիստները նոր հասարակարգի կերտման ջահակիրներն են, նրանք միշտ ընթանում են կոմունիզմ կառուցողների առաջին շարքերում: Որ բնագավառում էլ աշխատի կոմունիստը, ով էլ լինի նա, բանվոր թե կոլտնտեսական, ինժեներ թե բժիշկ, ուսանող թե գիտնական, ղեկավար թե շարքային աշխատող, կոչված է իր անձնական օրինակով դաստիարակելու, ուղղություն տալու անպարտիական մասսաներին՝ պարտիայի որոշումները կենսագործելու, իրենց հասարակական պարտքը պատվով կատարելու: Կոմունիստը միշտ պայքարում է հանուն նորի, առաջադիմականի. նրան խորթ են քարացածությունը, ինքնահանգստացումը, թերությունների նկատմամբ հանդուրժողականությունը:

Լինել առաջավոր, օրինակելի ամեն ինչում, կոմունիստի սրբազան պարտականությունն է: Սակայն դեռևս բավական չէ լինել առաջավոր, կատարել արտադրական պլանները, ցույց տալ հասարակական պարտքի կատարման

օրինակ: Չէ՛ որ մեր երկրում կոմունիստական շինարարության բոլոր ճակատներում մեծ խանդավառությամբ ու եռանդով գործում են բազմահազար անպարտիականներ: Կոմունիստի ավանգարդային դերն ավելի լայն հասկացություն է: Առաջավոր լինելով հանդերձ նա պետք է կարողանա հմտորեն իր հետևից տանել անպարտիականներին, օգնի նրանց հասնելու առաջավորների մակարդակին, նրանց ակտիվ պայքարի հանի պարտիայի որոշումները կենսագործելու համար: Այդ դեպքում միայն կոմունիստը լիովին կատարած կլինի ավանգարդային իր դերը:

Մեր օրերին բնորոշ երևույթներից մեկը կոմունիստական աշխատանքի շարժումն է: Միլիոնավոր աշխատավորներ ձգտում են ապրել ու աշխատել կոմունիստաբար, մի հանգամանք, որը վառ կերպով արտացոլում է մեր իրականությունը, կոմունիստական շինարարության հերոսական առօրյան: Այդ շարժմանը մասնակցում են ավելի քան 29 միլիոն մարդ: Մեր երկրում կան կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների պատվավոր կոչմանն արժանացած հազարավոր ձեռնարկություններ, տասնյակ հազարավոր արտադրամասեր, հարյուր հազարավոր բրիգադաներ ու տեղամասեր:

Անտարակույս, կոմունիստները չեն կարող հեռու մնալ այդ շարժումից. նրանք պետք է ղեկավարեն այն, դառնան նրա ոգին: Այս տեսակետից ուշագրավ է Երևանի Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարանի կոմունիստների օրինակը: Գործարանը ռեսպուբլիկայում առաջինն արժանացավ կոմունիստական աշխատանքի ձեռնարկության կոչման: Եվ կիրովցիները լիովին արժանի են դրան: Այս ձեռնարկության մարդիկ շարունակ ընթանում են սոցիալիստական մրցության ավանգարդում, ապահովում արտադրության անշեղ վերելքը, թողարկվող արտադրանքի աճը, իրենց աշխատանքում ու կենցաղում հիմնավորում կոմունիստական բարոյականության ու ապրելակերպի նորմերը: Գործարանի առաջադիմության, այնտեղ նոր մարդու դաստիարակության համար մղվող պայքարի առաջամարտիկները և անմիջական ղեկավարները կոմունիստներն են. իրենց հայրենանվեր գործերով, կազմակերպական ու պրոպագանդիստական աշխատանքով նրանք մոբիլիզացնում են ձեռնարկության կոլեկտիվի անդամների ուժերը՝ արտադրական նորանոր հաջողությունների հասնելու համար: Այդ լավ գործերը տալիս են իրենց պտուղները: Այս տարվա առաջին եռամսյակի առաջադրանքը կատարվել է 102,2, ապրիլինը՝ 105,2, մայիսինը՝ 104 տոկոսով: Միայն մայիս ամսին գործարանի կոլեկտիվը խնայել է ավելի քան 100 տոննա հումք և դրա հաշվին թողարկել մեծ քանակությամբ լրացուցիչ արտադրանք: Կիրովցիները հինգ ամսում տնտեսել են մեկ միլիոն 320 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա:

Մեր պարտիայի ու ժողովրդի առջև ծառացած ամենագլխավոր հարցը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումն է: Նոր հասարակարգի կառուցման այդ հրատապ պրոբլեմը լուծվում է ֆաբրիկաներում ու գործարաններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, հանքերում ու կառույցներում, գիտության օջախներում՝ միլիոնավոր մարդկանց հերոսական ջանքերով:

Նյութական արտադրության ոլորտը կոմունիզմի կառուցման վճռական ու կարևոր բնագավառ է: Հենց այստեղ է, որ կոմունիստները մեծ եռանդով կատարում են իրենց ավանգարդային դերը և ակտիվ, հայրենանվեր գործունեությամբ, բոլոր աշխատավորների հետ միասին ստեղծում են կոմունիզմի նյութատեխնիկական բազան, բազմապատկում մեր հայրենիքի հզորությունը:



Կոմունիստների երեք քառորդն այժմ անմիջականորեն զբաղված է նյութական բարիքների արտադրությամբ: Պարտիական կազմակերպություններն իրենց ուժերը տեղաբաշխում են այնպես, որ կոմունիստները միշտ գտնվեն արտադրության ամենավճռական ու դժվարին տեղամասերում և անձնական օրինակով ոգեշնչեն, իրենց հետևից տանեն աշխատավոր զանգվածներին:

Կոմունիստի ամենապայծառ ու փառավոր ուղին աշխատանքի և ժողովրդի երջանկության ու բարօրության համար պայքարելն է. նա պետք է աննահանջ ընթանա այդ ճանապարհով, երբեք չշեղվի դրանից, չփնտրի հեշտ ու հանգիստ գործ: «Կոմունիստը,— ասել է Ն. Ս. Խրուշչովը,— պետք է այրվի աշխատանքում, իր արյունն ու սիրտը նվիրաբերի ժողովրդի գործին»: Պարտիայի անդամի կոչմանն անհարիր է գործերը կողքից, հարևանցիորեն դիտելը: Նրա տեղը արտադրությունն է, այնտեղ, ուր ստեղծվում են նյութական բարիքները:

Բայց, դժբախտաբար, կան պարտիական կազմակերպություններ, որոնք ճիշտ չեն տեղաբաշխում կոմունիստների ուժերը: Կան այնպիսի ձեռնարկություններ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, որտեղ կոմունիստների ճնշող մեծամասնությունն զբաղեցնում է վարչական և օժանդակ պաշտոններ, իսկ բուն արտադրության մեջ նրանց թիվը քիչ է: Ահա, օրինակ, Մեղրիի արտադրական վարչության Կարճևանի սովխոզի պարտկազմակերպությունը: Այստեղ առանձին կոմունիստների կարելի է տեսնել դաշտում, այգում կամ ֆերմայում աշխատելիս: Մնացածները գրավում են վարչական և գրասենյակային պոստեր և, որն իրոք ավելի ցավալի է, պարզապես շատ քիչ են մտահոգվում սովխոզի գործերի վիճակով: Այդ հանգամանքն իր տխուր հետևանքն է թողել. տնտեսությունն անցած տարիներին չի կատարել բերքատվության ու անասունների մթերատվության բարձրացման պետական առաջադրանքները: Սովխոզը 1963 թվականին կրել է 30 հազար ռուբլու վնաս:

Կան նաև աշխատանքում ձախողված այնպիսի կոմունիստներ, որոնք «ղեկավար պաշտոն» գրավելու մարմաջով տարված, հրաժարվում են արտադրության մեջ աշխատելուց, մնալով առանց գործի՝ դիմումներ ու բողոքներ են հղում վերադաս օրգաններին՝ պահանջելով վերականգնել իրենց «օրինական» իրավունքները: Ցավալին ոչ միայն այն է, որ կան կոմունիստներ, որոնք անհիմն կերպով հավակնություն ունեն ղեկավար պաշտոններ վարելու, այլ այն, որ պարտիական առանձին օրգաններ անսկզբունքայնություն են ցուցաբերում և բավարարում են նրանց պահանջները:

Գնահատելով և խրախուսելով լավագույն կոմունիստներին, պարտիական կազմակերպությունները միաժամանակ պետք է դատապարտեն ետ մնացողներին, անձնական բարեկեցությունը գերադասողներին: Սովետական մարդկանց և, հատկապես, կոմունիստներին խորթ է քաղքենիական մոտեցումը կյանքին: Կոմունիստի ամբողջ կյանքը հաստատակամ ու եռանդուն պայքար է՝ հանուն ժողովրդի երջանկության, հանուն կոմունիզմի հաղթանակի: Իսկ ով շեղվում է այդ ճշմարիտ ուղուց, նա չի կարող վայելել ժողովրդի հարգանքն ու վստահությունը, չի կարող կրել լենինյան պարտիայի անդամի պատվավոր կոչումը:

ՍՄԿՊ կանոնադրությունը պարտիայի անդամին պարտավորեցնում է լինել նորի, առաջադիմականի կենսագործման ակտիվ մարտիկ, նա պետք է մինչև վերջ պայքարի գիտության, տեխնիկայի, արտադրության նվաճումների, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման համար: Եվ կոմունիստները պատվով են կատարում իրենց այդ պարտականությունը: Սակայն հաճախ լինում է և այն-

պես, որ նորը, առաջադիմականը ճանապարհ է հարթում մեծ դժվարությամբ: Երբեմն ձեռնարկությունների ղեկավարները և պարտիական կազմակերպությունները չեն աջակցում, բյուրոկրատական քաշքշուկ են առաջացնում, պահպանողականություն են հանդես բերում նորի արմատավորման խնդրում:

Երևանի նուրբ-բրդյա գործվածքեղենի և մահուդի կոմբինատում տեղակայված է «Միլլերս» մարկայի մեքենան, որը կտորը երկատում է, չափում և փաթաթում ֆաներայի վրա: Բայց այդ դեռ ամենը չէ. հարկավոր է կտորը հարթուկել: Այդ գործողությունն արդեն կատարում են չորս հսկա ագրեգատներ, որոնք մեծ տարածություն են գրավում: Եվ ահա, կոմբինատի ավագ վարպետ Պարույր Մանուկյանը երկար պրպտումներից հետո ճիշտ հաշվարկներ կատարելով կարողանում է նախագծել փոքր չափող-հարթեցնող մեքենա, որը վերոհիշյալ պրոցեսները միայն ինքն է կատարում: Մեքենան կատարում է 12 բանվորի աշխատանք: Ավելին. մեքենան ավտոմատ կերպով երկատում է լայն կտորը, կտրտում նրա խոտան տեղերը և, միաժամանակ, գործվածքի եզրին դրոշմում, թե ինչ չափսի կտոր է: Բացի այդ, շնորհալի գյուտարարը ստեղծել է նաև հատուկ հաշվիչ մեքենա, որը միաժամանակ և՛ գործում է, և՛ նախատեսված լայնությամբ չափում գործած կտորը:

Զարմանալի և ցավալի է, որ վարպետ Պ. Մանուկյանի այս նորարարական առաջարկությունները մինչև օրս չեն արմատավորվել արտադրության մեջ: Մինչդեռ Յարոսլավլի, Մոսկվայի, Լենինգրադի և այլ քաղաքների տեքստիլ ձեռնարկություններից խնդրում են ուղարկել իրենց այդ նախագծերը:

Մեր պարտիան իր ստեղծարար գործունեությամբ անշեղորեն ընդլայնում է իր ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Սա հենց պարտավորեցնում է յուրաքանչյուր կոմունիստի չանջրպետվել կոլեկտիվից, իրեն վեր չդասել մյուսներից: Հատկապես անթույլատրելի է, երբ պարտիայի որոշ անդամներ պահանջում են ինչ-որ առանձնահատուկ արտոնություններ, մոռանալով, որ կոմունիստը ոչ մի արտոնություն չունի անպարտիականների համեմատությամբ: Նա ունի միայն բարձր պարտավորություններ՝ լինել պայքարի ու աշխատանքի ամենադժվարին տեղամասերում, պատվով կատարել ժողովրդին ծառայելու իր նվիրական պարտականությունը:

Քննադատությունն ու ինքնաքննադատությունը կոմունիստների համար փորձված զենք են, որոնց միջոցով նրանք կարողանում են ժամանակին բացահայտել աշխատանքում տեղ գտած թերությունները, հարթել առաջընթացի ուղին արգելակող ամեն մի խոչընդոտ: Բայց, ցավոք սրտի, կան այնպիսի կոմունիստներ, որոնք սիրում են քննադատել ուրիշների թերությունները, վրիպումները, սակայն ամենևին չեն հանդուրժում, երբ աշխատանքային ընկերները քննադատում են իրենց: Հիմնարկների, ձեռնարկությունների, սովխոզների ու կոլտնտեսությունների առանձին ղեկավարներ հիվանդագին են ընդունում քննադատությունը և աշխատում են վարչարարական մեթոդներով ճնշել այն:

Ռեսպուբլիկայի ավտոտրանսպորտի մինիստրության № 2976 «Գ» ավտոշարասյան նախկին ավագ տնտեսագետ Ժ. Հովհաննիսյանը բացահայտել է իրենց հիմնարկում տեղ գտած աչքակապությունները, չարաշահումները: Նա միաժամանակ բողոքել է, որ շարասյան պետ Ս. Ռամազյանը և պարտկազմակերպության քարտուղար Գ. Գյուլզադյանը հալածում են թերությունները վերհանողներին:

Ստուգումներից պարզվում է, որ Հովհաննիսյանը ճիշտ է: Սակայն հիմ-



նարկի ղեկավարները, թերությունները վերացնելու փոխարեն, որոշում են հաստիքների կրճատման պատրվակով ազատվել «անհնազանդ» աշխատողից: Հետագայում, երբ վերադաս օրգանների միջամտությամբ Հովհաննիսյանը վերականգնվում է իր պաշտոնում, չեն դադարում վարչական հալածանքները նրա նկատմամբ: Սկզբնական պարտկազմակերպության բյուրոյում մերժում են նրա դիմումը՝ ՍՄԿՊ շարքերն ընդունվելու մասին: Ավելին, հանձնարարվում է ԼԿԵՄ կազմակերպությանը՝ պարզել Ժ. Հովհաննիսյանին կոմերիտմիության շարքերում թողնելու կամ չթողնելու հարցը: Նման անառողջ մթնոլորտը Հովհաննիսյանին ստիպում է «համաձայն իր դիմումի» հեռանալ աշխատանքից:

Աշխատողի նկատմամբ այդպիսի վերաբերմունքի, հիմնարկում թույլ տված օրինազանցությունների և աչքակապությունների համար Ս. Ռամազյանը և Գ. Գյուլզադյանը տույժի են ենթարկվել, իսկ ավտոտրանսպորտի մինիստրությունը հանձնարարել է Հովհաննիսյանին վերականգնել իր աշխատանքում:

Իսկական կոմունիստի խոսքի և գործի միջև անդունդ չի լինում: Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ մարդկանց վարքը գնահատելիս պետք է հաշվի առնել ոչ թե նրա բարի ցանկությունները, այլ գործերը, ոչ թե երևակայականը, այլ իրականը:

Մեզանում դեռևս կան այնպիսի կոմունիստներ, որոնք սիրում են ճառեր արտասանել, բարձր պարտավորություններ ստանձնել, երդվում են վերացնել թերությունները, բայց շուտով մոռանում են իրենց խոստումները և գործն ընթանում է այնպես, ինչպես առաջ էր: Ցավալի է, բայց փաստ է, որ մեր ռեսպուբլիկայում կան արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք աշխատում են վնասով, թերակատարում են պլանները, թողարկում անորակ արտադրանք: Այսպես, օրինակ, Գորիսի միկրոէլեկտրաշարժիչների գործարանը այս տարվա հինգ ամսվա պլանը կատարել է 95,8 տոկոսով: Կոմունիստները, գործարանի կոլեկտիվը վատ են օգտագործում արտադրական հնարավորությունները, թողարկում են անորակ արտադրանք: Ինչպես անցյալ, այնպես էլ այս տարի պատվիրատուները գործարանին են վերադարձրել մի քանի հազար միկրոէլեկտրաշարժիչներ, որի համար ձեռնարկությունը հարկադրված վճարել է մեծ տուգանք:

Կոմունիստական պարտիան այժմ թևակոխել է իր գործունեության մի այնպիսի ժամանակաշրջան, երբ առավել լրիվ է դրսևորվում նրա ստեղծագործական կարողությունը: Այդ հանգամանքը չափազանց բարձրացնում է կոմունիստների դերը, նրանց անձնական պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ: Այսօր կոմունիստն իր ուժերն ու եռանդը ամենից առաջ պետք է կենտրոնացնի ստեղծագործական խնդիրների լուծման վրա: Նա պետք է ամեն օր մտահոգվի աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, տեխնիկական առաջադիմությամբ, արտադրանքի որակի բարելավմամբ և ինքնարժեքի իջեցմամբ, ընկերներին օգնի այդ գործում և ապահովի իր առաջավոր դերը:

Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման բոլոր էտապներում պարտիան առանձնահատուկ ուշադրություն է հատկացրել սովետական մարդկանց, բոլոր կոմունիստների գաղափարական կոփվածությանը, նրանց մարքսիստական-լենինյան աշխարհայացքի ձևավորմանը:

Կոմունիստն ամենից առաջ գաղափարական մարտիկ է՝ պատրաստ է իր կյանքը զոհաբերելու կոմունիզմի վեհ իդեալների կենսագործմանը, հաղթահարելու ամեն տեսակ դժվարություններ ու վտանգներ:

Նոր մարդու դաստիարակության, երիտասարդությանը կոմունիզմի գաղա-

փարներով տոգորելու գործում մեծ անելիքներ ունեն ստեղծագործական հիմնարկների պարտիական կազմակերպությունները, մեր գրողները, արվեստագետները, գիտության, կուլտուրայի, մանկավարժական բնագավառների աշխատողները: Նրանք իրենց ստեղծագործություններով, գիտական ու մանկավարժական աշխատանքով մեր մարդկանց, հատկապես երիտասարդների մեջ պետք է պատվաստեն սեր աշխատանքի նկատմամբ, նրանց ամբողջովին համակեն կոմունիստական գաղափարայնությամբ, ապագայի հանդեպ մեծ հավատով, թշնամական գաղափարախոսությունների դեմ անհաշտելիության ոգով: Այս է գաղափարական ճակատի կոմունիստների պատվի գործը, նրանց առաջնակարգ խնդիրը:

Լինել օրինակելի և առաջավոր աշխատանքում՝ կոմունիստի ամենահիմնական պարտականությունն է: Սակայն այդ չի նշանակում, թե կոմունիստը կարող է պասսիվություն հանդես բերել հասարակական կյանքում, վատ վարք ունենալ ընտանիքում, կենցաղում: «Կոմունիստը պարտավոր է,— ասված է պարտիայի ծրագրում,— արտադրության մեջ, հասարակական և անձնական կյանքում իր ամբողջ վարքագծով ցույց տալ կոմունիստական հարաբերությունները վարգացնելու և ամրապնդելու պայքարի բարձր օրինակներ, պահպանել կոմունիստական բարոյականության սկզբունքները և նորմերը»:

Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի կենսագործումը կոմունիստի ամբողջ գործունեության չափանիշն է: Կոմունիստը իր անձնական կյանքը կառուցում է կոմունիստական բարոյականության պահանջներին համապատասխան. նա լավ ծնող է, հոգ է տանում, որ երեխաները մեծանան ու լինեն ազնիվ, աշխատասեր, հայրենիքին ու կոմունիզմի գործին հավատարիմ քաղաքացիներ: Այդ ամենով հանդերձ նա չի ներփակվում անձնական երջանկության, ընտանեկան բարեկեցության նեղ շրջանակներում: Նրա ողջ կյանքը տոգորված է բարձր գաղափարներով, իր էությամբ նա ձուլված է վսեմ իդեալների համար մղվող պայքարին: Սակայն, դժբախտաբար, կան կոմունիստներ, որոնք իրենց վարքով, ապրելակերպով հեռու են այդ բարձր պահանջները կատարելուց: Նրանց մեջ ուժեղ են անցյալի մնացուկները, մասնավոր սեփականատիրական ձգտումները: Ուստի պարտիական կազմակերպությունները լուրջ ջանքեր պետք է գործադրեն նրանց գիտակցությունից ու կենցաղից նման անառողջ երևույթները, ձգտումները արմատախիլ անելու համար:

Աշխարհում ամենաարդար հասարակարգի կառուցման ուղին հարթ ու դյուրին չէ. պահանջվում է պարտիայի բոլոր անդամների, սովետական ամբողջ ժողովրդի ստեղծագործական եռանդի ու ջանքերի լարում: Այդ ճանապարհին հանդիպում են դժվարություններ, բարդություններ, սակայն կոմունիստների բազմամիլիոն բանակը միաձույլ շարքերով, անպարտիական մասսաների և ամբողջ ժողովրդի հետ միասին, պատվով կկատարի իր սրբազան միսիան՝ իրականություն կդարձնի մարդկության նվիրական երազանքը՝ կոմունիզմի կառուցումը:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԳՆԱԳՈՅԱՑՈՒՄԸ ԵՎ ԳՆԵՐԻ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ԳԻՏԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ

Մ. ԱԴՈՆՑ

Տնտեսական գիտությունների դոկտոր

Սոցիալիստական հասարակարգում պահպանվում են ապրանքային արտադրության որոշ կատեգորիաներ, որոնցից են և արժեքն ու գինը: Գինն այն վճռական տնտեսական գործիքներից մեկն է, որը պարտիան լայնորեն օգտագործում է իր տնտեսական քաղաքականությունն անցկացնելիս:

Գնի օգնությամբ պլանավորվում ու հաշվի են առնվում հասարակականորեն անհրաժեշտ ծախսումները, որոշվում ժողովրդա-տնտեսական համամասնությունները, հաշվարկվում արտադրության տնտեսական արդյունավետությունը, բաշխվում ու վերաբաշխվում է ազգային եկամուտը, իրականացվում են տնտեսական կապերը սոցիալիստական տարբեր սեկտորների, տարբեր շրջանների ու ձեռնարկությունների միջև: Գների միջոցով կարգավորվում են սպառման ու կուտակման ֆոնդերի հարաբերակցությունները. գինը ձեռնարկությունների եկամտաբերության չափերը որոշող կարևոր գործոններից մեկն է: Առանց կատարելագործված գների չի կարելի հետևողականորեն կիրառել տնտեսական հաշվարկը և լիարժեք օգտագործել նյութական շահագրգռվածության լծակները:

Ի հակադրություն կապիտալիզմի, որտեղ գնագոյացումը տեղի է ունենում տարերայնորեն, սոցիալիստական հասարակարգում գները սահմանվում են պլանային կարգով: Տնտեսության պլանային զարգացումը սոցիալիզմի մեծագույն առավելություններից մեկն է:

Եթե սոցիալիստական հասարակարգում գները ենթարկվում են պլանավորման, դա դեռ չի նշանակում, որ սոցիալիստական պետությունն առանց տնտեսական հիմնավորման, քմահաճորեն կարող է ցանկացած գները սահմանել, կամ գոյություն ունեցող գները փոխել:

Անհատի պաշտամունքի տիրապետության տարիներին գների սահմանման, ինչպես նաև ժողովրդական տնտեսության պլանավորման բազմաթիվ այլ հարցերի նկատմամբ գոյություն ուներ վոլյունտարիստական մոտեցում: Որոշ ապրանքների համար սահմանվում էին այնպիսի գներ, որոնք նույնիսկ ինքնարժեքից ցածր էին և չէին ծածկում արտադրանքի թողարկման համար ձեռնարկության կատարած ծախքերը, իսկ որոշ այլ ապրանքների նկատմամբ

էլ սահմանվում էին այնպիսի բարձր գներ, որոնք այդ ապրանքներն արտադրող ձեռնարկություններին հնարավորություն էին տալիս նույնիսկ վատ աշխատանքի դեպքում ստանալ մեծ եկամուտներ։

Հատկապես ցածր գներ էին սահմանված գյուղատնտեսական մթերքների համար։ Այսպես, օրինակ, 1952 թվականին մեկ ցենտներ ցորենի մթերման գինն էր 97 կոպեկ, մինչդեռ նրա ինքնարժեքը հասնում էր մոտ 5 ռուբլու, այսինքն՝ մթերման գնից ավելի քան հինգ անգամ բարձր։ Նույն թվականին մեկ ցենտներ տավարի մսի մթերման գինն էր 2 ռուբլի 52 կոպեկ, իսկ ինքնարժեքը՝ ավելի քան 140 ռուբլի, մեկ ցենտներ կաթի մթերման գին էր սահմանված 2 ռուբլի 3 կոպեկ, իսկ ինքնարժեքը հասնում էր մոտ 9 ռուբլու։ Պարզ է, որ այսպիսի գների գոյության պայմաններում կոլտնտեսություններն ու կոլտնտեսականները բոլորովին էլ շահագրգռված չէին ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Սկսած 1953 թվականից, պարտիան մի շարք միջոցառումներ անցկացրեց գյուղատնտեսության շեշտակի վերելքի ապահովման համար։ Անցկացված միջոցառումներից է նաև գյուղատնտեսական մթերքների գնման գների բարձրացումը։ 1963 թվականին, 1952 թվականի համեմատությամբ, ցորենի գնման գները բարձրացել են 7,8, շաքարի ճակնդեղինը՝ 2,8, ծխախոտինը՝ 2,4, տավարի մսինը՝ 3,8, կաթինը՝ 4,9, բրդինը՝ 3,3 անգամ։

Գյուղատնտեսական մթերքների՝ ներկայումս գործող գնման գները հնարավորություն են տալիս կոլտնտեսականների աշխատանքը վարձատրելու ըստ արժանվույն և միաժամանակ անհրաժեշտ կուտակումներ ունենալու ընդլայնված վերարտադրության համար։

Վերջին տարիներս վերանայվել են նաև արդյունաբերական ապրանքների գները. բարձրացել են արտադրության միջոցների շատ տեսակների մեծածախ գները, որի շնորհիվ պլանային վնասով աշխատող ձեռնարկությունների թիվն զգալի չափով պակասել է։

Չնայած այդ ամենին, այժմ գործող գները դեռևս պետք է ճշտվեն և անընդհատ կատարելագործվեն։ Այժմ համատարած կարգով վերանայվում ու ճշտվում են արդյունաբերական ապրանքների մեծածախ գները։ 1965 թվականի հունվարի մեկից կգործեն ծանր արդյունաբերության արտադրանքի նոր գները, իսկ 1966 թվականից՝ թեթև ու սննդի արդյունաբերության արտադրանքի նոր մեծածախ գները։

Գների սիստեմի հետագա կատարելագործման համար մեր տնտեսական գիտահետազոտական ինստիտուտները պետք է մշակեն գների պլանավորման տնտեսական-մեթոդոլոգիական բոլոր արմատական հարցերը։

Գների փոփոխումն ու կատարելագործումն ինքնանպատակ չէ. այն պետք է ծառայի կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների հաջող լուծմանը։ Գների յուրաքանչյուր փոփոխություն պետք է տնտեսապես հիմնավորվի ու համապատասխանի մեզնից անկախ գործող սոցիալիզմի տնտեսական օրենքների պահանջներին։



ՍՄԿՊ ծրագրում ձևակերպված են գնագոյացման սկզբունքներն ու խնդիրները, ցույց են տրված գների կատարելագործման ուղիները կոմունիզմի ծա-



վալուն կառուցման ժամանակաշրջանում։ ՍՄԿՊ ծրագիրը պահանջում է. «...շարունակ բարելավել գների սիստեմը, այն համապատասխանեցնելով կոմունիստական շինարարության խնդիրներին, տեխնիկական առաջադիմությանը, արտադրության ու սպառման աճին, արտադրական ծախքերի նվազեցմանը։ Գները պետք է ավելի ու ավելի մեծ չափով արտացոլեն աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսերը, ապահովեն արտադրության ու շրջանառության ծախքերի փոխհատուցումը և որոշակի շահույթ՝ նորմալ կերպով աշխատող յուրաքանչյուր ձեռնարկությանը։ Աշխատանքի արտադրողականության աճի և արտադրանքի ինքնարժեքի իջեցման բազայի վրա գների սիստեմատիկ, տնտեսապես հիմնավորված իջեցումը հիմնական ուղղությունն է կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում գների քաղաքականության ասպարեզում (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, Հայպետհրատ, 1962, էջ 512)։

Այժմ գոյություն ունեցող գները շատ են հեռացել իրենց հիմքից՝ արժեքից, այդ պատճառով էլ դժվար է այդ գների հիման վրա հաշվարկել արտադրության տարբեր ճյուղերում ու տարբեր շրջաններում ստեղծված համախառն եկամտի ծավալը, որոշել կապիտալ ներդրումների և արտադրական ֆոնդերի արդյունավետությունը, հետևողականորեն կիրառել տնտեսական հաշվարկը և օգտագործել նյութական շահագրգռվածության խթանները։

Որպեսզի գները երկրի էկոնոմիկայում ավելի հաջող կատարեն իրենց դերը, անհրաժեշտ է, որ դրանք ավելի մեծ չափով արտացոլեն աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսերը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ գոյություն ունի պլանային գների հետևյալ սիստեմը՝ նյութատեխնիկական մատակարարման մեծածախ գներ, ձեռնարկության մեծածախ գներ կամ հաշվարկային գներ, մթերման գներ, առևտրի մեծածախ գներ և մանրածախ գներ։

Մանրածախ գները կազմված են ապրանքի արտադրության ու իրացման վրա կատարված նյութական ծախսումների արժեքից, աշխատավարձից և հասարակության համար արդյունքի արժեքից։ Գնի թվարկված երեք տարրերից սկզբի երկու տարրերի մեծությունն ինքնարժեքի տվյալների հիման վրա կարելի է որոշել, իսկ վերջինի մեծությունը որոշելը դժվար է, որովհետև գոյություն ունեցող գնագոյացման սիստեմի պայմաններում մի ապրանքի արժեքի որոշ մասը կամ հավելյալ արդյունքի արժեքի մի մասը կարող է իրացվել մի այլ տեսակի ապրանքի գներում։

Որպեսզի սահմանվող գները համապատասխանեն արժեքին, պետք է հասարակության համար արդյունքի արժեքը, այսինքն՝ շահույթն ու շրջանառության հարկը, տարբեր ապրանքների միջև բաշխել ըստ նրանց արտադրության համար պահանջվող հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումների։

Սակայն գների պլանավորման մինչայժմյան պրակտիկայում այդպես չի եղել։ Որպես կանոն շրջանառության հարկը գանձվում է միայն սպառման առարկաներից. այսինքն՝ կազմում է նրանց գների բաղադրամասը, իսկ շահույթը բաշխվում է ըստ արտադրության ճյուղերի և ըստ արտադրանքի տեսակների դիֆերենցացված, մեկ միավոր արտադրանքի ինքնարժեքի մեծության համապատասխան։ Մինչդեռ հայտնի է, որ շահույթի, կամ ձեռնարկության զուտ եկամտի աղբյուրը ոչ թե ինքնարժեքն է, որի մեջ բացի աշխատա-

վարձից մտնում է նաև ծախսված արտադրամիջոցների արժեքը, այլ կենդանի աշխատանքը։

Հասարակության համար արդյունքի արժեքն արտադրության ճյուղերի և արտադրանքի տարբեր տեսակների միջև ըստ ինքնարժեքի մեծության բաշխելիս, երբեմն ձեռնարկությանը ձեռնտու է լինում մշակել թանկարժեք հումք և այլ նյութեր, քանի որ պլանային ինքնարժեքի բարձր լինելու դեպքում համապատասխանորեն էլ մեծանում է ձեռնարկության շահույթը։

Հանդիսանալով պլանային գնագոյացման ելակետ, ինքնարժեքը պետք է ծառայի որպես հասարակության համար արդյունքի արժեքի բաշխման մասշտաբ՝ արտադրանքի տարբեր տեսակների միջև։

Երկար ժամանակ է, ինչ սովետական տնտեսագետների միջև վեճ է ընթանում այն մասին, թե հասարակության համար արդյունքի արժեքն ինչպես բաշխել արտադրանքի տարբեր տեսակների միջև, կամ, այլ կերպ ասած՝ ինչպես սահմանել գները։ Որոշ տնտեսագետներ (Մալիշև, Սոբոլ, Կոլգանով, Վաագ) առաջարկում են գները սահմանել արտադրության գնի կամ շահույթի միջին նորմայի օրենքի սկզբունքով։ Տնտեսագետների մի այլ խումբ (Բաչուրին) գտնում է, որ գների հիմքում պետք է դրվի միջինացված հասարակական արժեքը։ Ակադեմիկոս Ս. Գ. Ստրումիլինը, Կրոնրոդը և շատ ուրիշներ էլ գտնում են, որ ապրանքների գներն ամբողջովին պետք է համապատասխանեն իրենց արժեքին։

Այժմ սովետական տնտեսագետների մեծ մասն այն կարծիքին է, որ գների հիմքում պետք է դրվեն հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումները։ Տվյալ դեպքում այստեղից դեռ չի բխում, որ յուրաքանչյուր առանձին ապրանքի գինը պետք է համընկնի արժեքին։ Պնդել, որ յուրաքանչյուր ապրանքի գինը պետք է համընկնի իր արժեքին, դա կնշանակեր հրաժարվել գնի ակտիվ դերից, այն համարելով միայն հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումների հաշվառման գործիք։ Մինչդեռ իրականում գինը մեր էկոնոմիկայում բազմակողմանի ֆունկցիա է կատարում, և մենք պետք է ձգտենք գնի ակտիվ դերը մեր ժողովրդական տնտեսության մեջ է՛լ ավելի մեծացնել, այն իրոք դարձնել տնտեսական քաղաքականության կարևոր գործիք։ Գները պետք է նպաստեն արտադրության զարգացմանն ու տեխնիկական առաջադիմությանը, ժողովրդատնտեսական ճիշտ համամասնությունների ստեղծմանը, սպառման կառուցվածքի բարելավմանը, արտադրության ու շրջանառության ծախքերի կրճատմանը և եկամտաբերության բարձրացմանը։ Գների ամբողջ սիստեմը պետք է ծառայի սոցիալիստական տնտեսավարության գլխավոր սկզբունքի իրականացմանը— հանուն հասարակական շահերի նվազագույն ծախսումներով հասնել առավելագույն արդյունքների։

Գինն իր բազմակողմանի ֆունկցիաները կատարելու համար, որոշ սահմաններում, պետք է շեղվի արժեքից։ Այսպես, օրինակ, գինը պահանջարկի և առաջարկի հարաբերակցության վրա ոչ մի ազդեցություն չի կարող ունենալ, եթե այն չշեղվի արժեքից։ Գինը հանդիսանում է արժեքի դրամական արտահայտությունը և իր մեջ կրում է արժեքից շեղվելու հնարավորությունը։

Այս ամենից հետևում է, որ գնագոյացման գործոնները պետք է բաժանել երկու խմբի՝ ա) գործոններ, որոնք որոշում են արժեքի մեծությունը և արժեքի փոփոխմամբ փոփոխվում են նաև գները, բ) գործոններ, որոնք գինը շեղում են արժեքից։



Գնագոյացման գործում գլխավոր դերը պատկանում է առաջին խմբին։

Արժեքագոյացման գործոններն անհրաժեշտ է տարբերել գնագոյացման մյուս գործոններից։

Այժմ սովետական որոշ տնտեսագետներ (Նեմչինով, Դյաչենկո, Տուրեցկի, Ալավերդյան, Մստիսլավսկի) գտնում են, որ էլեկտրոնա-հաշվիչ մեքենաների առկայության պայմաններում, սոցիալիստական տնտեսակարգում հնարավոր է ռեգուլցիայի եղանակով հաշվարկել արտադրանքի արտադրության համար պահանջվող հասարակականորեն անհրաժեշտ աշխատաժամանակը։

Հաշվարկելով ամբողջական արդյունքի արտադրության համար պահանջվող հասարակականորեն անհրաժեշտ աշխատաժամանակը և գործող գների գումարը բաժանելով այդ ժամանակի տևողության վրա, կստացվի որոշ գործակից, որը բազմապատկելով յուրաքանչյուր ապրանքի արտադրության համար պահանջվող աշխատաժամանակով, կստանանք այդ ապրանքի արժեքը՝ արտահայտված գործող գների մասշտաբով։

Հաշվի առնելով, որ հասարակականորեն անհրաժեշտ աշխատաժամանակն անընդհատ փոփոխվում է, ենթադրվում է նրա հաշվարկումը կատարել նորմատիվային մեթոդով։

Հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ընդունումը որպես գնագոյացման գլխավոր գործոնի, մի առաջընթաց քայլ է գների պլանավորման գիտական հիմունքների մշակման գործում։ Մնում է, որ տնտեսագետները հաշվարկումների գիտական մեթոդներ մշակեն և ցույց տան հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումների հիման վրա սահմանված գների առավելությունները։



Գների վրա ազդում են ոչ միայն հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումները, այլև այն հանգամանքները, որոնք գները շեղում են արժեքից։ Գների տևական շեղումն արժեքից տեղի է ունենում տնտեսական կյանքում տեղի ունեցող օրինաչափ պրոցեսների և օբյեկտիվ գործոնների ազդեցության տակ։ Այդպիսի գործոններից են՝ 1) արտադրանքի սպառողական հատկությունները, 2) տնտհաշվարկային եկամտաբերությունը, 3) պահանջարկի և առաջարկի հարաբերակցությունները։ Վերջերս որոշ տնտեսագետներ գնագոյացման գործոն են համարում նաև արտադրանքի ֆոնդատարությունը։

Երբ խոսք է լինում արտադրանքի սպառողական հատկությունների մասին, որպես գնագոյացման գործոնի, նկատի է առնվում իրար փոխարինող տարբեր տեսակի ապրանքները, կամ նույն տեսակի արտադրանքի տարբեր սորտերն ու մարկաները։ Իրար փոխարինող արտադրանքների օրինակ կարող են ծառայել քարածուխը, նավթը, գազը, վառելափայտը, տորֆը, վառվող թերթաքարերը և այլն։

Տեխնիկայի և, հատկապես, քիմիայի զարգացմանը զուգընթաց շատանում են իրար փոխարինող արտադրանքի տեսակները. հանդես են գալիս բազմաթիվ նոր տեսակի արհեստական թելանյութեր, արհեստական կաուչուկի նոր տեսակներ, մետաղներին փոխարինող պլաստմասսայի նոր տեսակներ և այլն։

Բացի այդ մարդիկ հայտնագործում են նույն նյութի կամ արտադրանքի բազմակողմանի օգտագործման գաղտնիքները։

Սոցիալիստական տնտեսավարության սկզբունքը պահանջում է նույն սպառողական պահանջմունքը բավարարել արտադրանքի այնպիսի տեսակներով, որոնց թողարկումն ավելի քիչ հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումներ է պահանջում։ Իրար փոխարինող արտադրանքի տեսակներից այն տեսակն է համարվում տնտեսապես ավելի արդյունավետ, որի արտադրությունն ավելի քիչ ծախսեր է պահանջում։ Սակայն, եթե այս կամ այն պատճառով հասարակության պահանջներն էժան արտադրանքով լրիվին հնարավոր չէ բավարարել, ապա հարկադրված պետք է թողարկել նաև դրանց փոխարինող ավելի բարձր արժեք ունեցող ապրանքներ։

Քանի որ գների շեղումն արժեքից տարբեր ուղղություններով է կատարվում, և այդ շեղումներն իրար ծածկում են ու, վերջին հաշվով, գների գումարը հավասարվում է արժեքի ընդհանուր գումարին, արժեքի օրենքը չի խախտվում։

Գները պլանավորելիս իրար փոխարինող արտադրանքի տեսակները պետք է ընդունել որպես մեկ ամբողջական արտադրանք և հավասար սպառարժեքների համար սահմանել հավասար գներ, ելնելով ընդհանուր արժեքից։ Ապրանքի որակի բարձրացումը լրացուցիչ արտադրական ծախքեր է պահանջում, որի հետևանքով բարձրանում են նրա արժեքն ու գինը։ Սակայն միշտ չէ, որ այդ լրացուցիչ ծախսումները համապատասխանում են տվյալ արտադրանքի սպառողական հատկությունների լավացմանը։ Եթե նոր կոնստրուկցիայի մեքենայի թողարկումը պահանջում է խոշոր չափի ծախքեր, իսկ նրա արտադրողականությունը և աշխատանքի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները նախկինի համեմատությամբ չնչին չափով են բարձրացել, ապա տնտեսապես արդյունավետ չէ այդ նոր կոնստրուկցիայի մեքենայի արտադրությունը։ Հետևաբար նոր մարկայի մեքենայի գները սահմանելիս, նրա արժեքի մեծության հետ միասին անպայման հաշվի պետք է առնվեն նաև այդ մեքենայի սպառողական հատկությունները։

Եթե գները պլանավորելիս հաշվի չառնենք արտադրանքի սպառողական հատկությունները, ձեռնարկությունները կարող են որակի վատթարացման հաշվին իջեցնել ինքնարժեքը և ավելացնել իրենց եկամուտները, որը վնաս կպատճառի այդ արտադրանքն օգտագործող ձեռնարկություններին։ Դրանից հետևում է, որ արտադրության տնտեսական արդյունավետությունն անհրաժեշտ է տարբերել արտադրության միջոցների օգտագործման, կամ սպառման արդյունավետությունից։ Յուրաքանչյուր տնտեսավար պայքարելով հանուն ինքնարժեքի իջեցման և արտադրության արդյունավետության բարձրացման, միաժամանակ պետք է մտածի իր սպառողի տնտեսական արդյունավետության բարձրացման մասին։

Արտադրության միջոցների արտադրության արդյունավետությունը նրանց սպառման արդյունավետության հետ զուգակցելու համար պետք է իրար փոխարինող արտադրանքի տեսակների գները համապատասխանեն նրանց տեխնիկական ու տնտեսական համարժեքայնությանը։

Տեխնիկական համարժեքայնությունը նույն սպառողական պահանջները բավարարող տարբեր տեսակի, սորտի և մարկայի արտադրանքի սպառողական հատկությունների համեմատելիությունը և հավասարությունն է։ Տարբեր տեսակի վառելանյութերի տեխնիկական համարժեքայնությունը չափվում է



նրանց ջերմատվությամբ (կալորիա, պայմանական տոննա վառելիք), հանքապարների տեխնիկական համարժեքայնությունը՝ նրանցում պարունակված նույն տեսակի մետաղի քանակով, մեքենաներինը՝ նրանց կարողությամբ կամ արտադրողականությամբ։ Օրինակ, երկու տոննա քարածուխը նույնքան ջերմատվություն ունի, ինչքան մեկ տոննա մազութը, այսինքն՝ նրանք իրար նկատմամբ տեխնիկական համարժեքայնություն ունեն։ Ի տարբերություն տեխնիկական համարժեքայնության, տնտեսական համարժեքայնությունը որոշելու համար պետք է հաշվի առնել նաև իրար փոխարինող արտադրանքի տեսակների օգտագործման ծախսերը։ Օրինակ՝ երկու տոննա քարածուխը մեկ տոննա մազութի ջերմատվություն ունի, բայց նրանք տնտեսական համարժեքությամբ իրար հավասար չեն, քանի որ երկու տոննա քարածխի գնման ու օգտագործման համար ավելի շատ ծախսեր են պահանջվում, քան մեկ տոննա մազութի համար։

Տնտեսական համարժեքայնությանը համապատասխանող գները խթանում են ավելի արդյունավետ արտադրությունների արագ զարգացմանը և եկամտաբերության բարձրացմանը։

Սպառման առարկաների օգտագործման պրոցեսում կատարված ծախսերը չեն կարող իրար փոխարինող ապրանքների գների սահմանման չափանիշ ծառայել։ Այս դեպքում պետք է հաշվի առնել տվյալ պահանջմունքի բավարարման աստիճանը։

Սոցիալիստական հասարակարգը շահագրգռված է սպառման կառուցվածքի բարելավմամբ, մարդկանց այն պահանջմունքների առաջնահերթ բավարարմամբ, որոնք խոշոր սոցիալական նշանակություն ունեն և ընդհակառակը՝ այն ապրանքների սպառման սահմանափակմամբ, որոնց օգտագործումը վնասակար հետևանքներ է ունենում։ Սոցիալական կարևոր նշանակություն ունեցող ապրանքների օգտագործումը խթանելու և մատչելի դարձնելու նպատակով նրանց համար սահմանվում են արժեքից ցածր գներ (մանկական հագուստեղեն, դեղորայք և այլն), իսկ վնասակար հետևանքներ ունեցող ապրանքների սպառումը սահմանափակելու համար սահմանվում են արժեքից բարձր գներ (ծխախոտ, ոգելից խմիչքներ և այլն)։

Գների շեղումն արժեքից կատարվում է նաև տնտհաշվարկային եկամտաբերության ապահովման համար։ Չհանդիսանալով սոցիալիստական արտադրության նպատակը, շահույթը մեծ դեր ունի տնտհաշվարկային ձեռնարկությունների նյութական շահագրգռվածության բարձրացման գործում։ Ձեռնարկությունների եկամտաբերությունը խոշոր չափով կախված է գների մակարդակից։ Մինչև այսօր էլ դեռևս գոյություն ունեն արդյունաբերության այնպիսի ճյուղեր ու ձեռնարկություններ, որոնց արտադրանքի գներն արժեքից այնքան ցածր են, որ նրանք վնասով են աշխատում։ Միաժամանակ գոյություն ունեն արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք նույնիսկ վատ աշխատանքի դեպքում մեծ շահույթներ են ստանում, արտադրանքի գների բարձր լինելու պատճառով։ Այսպես, օրինակ, 1962 թվականին Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի ձեռնարկությունների 21 տոկոսն աշխատել է պլանային վնասով։ Նույն թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության եկամտաբերության ընդհանուր նորման եղել է 10.4 տոկոս, իսկ շաքարի արդյունաբերության եկամտաբերության նորման՝ 50,0, գունավոր մետալուրգիայինը՝ 24,6, քիմիական արդյունաբերությանը՝ 17,5, թեթև արդյունաբերությանը՝ 3,8 տոկոս։ Թեթև ար-

դյունաբերության զուտ եկամտի մեծ մասն ընդունում է շրջանառության հարկի ձև և դրանով էլ պետք է բացատրել նրա եկամտաբերության նորմայի ցածր լինելը։

Ներկայումս, երբ վերանայվում են արդյունաբերական ապրանքների մեծածախ գները, վնասով աշխատող արդյունաբերության ճյուղերի արտադրանքի գները բարձրացվում են, իսկ բարձր եկամտաբերություն ունեցող ճյուղերի արտադրանքի գները՝ իջեցվում։

Այլ պայմանների հավասարության դեպքում, արտադրության ճյուղի արտադրանքի գների բարձրացման առավելագույն սահմանը հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումներն են, իսկ նվազագույն սահմանը՝ տնտհաշվարկային եկամտաբերությունը։ Արտադրանքի առանձին տեսակների գները կարող են նշված սահմաններից բարձր կամ ցածր լինել։

Արտադրության ճյուղի արտադրանքի գների ընդհանուր մակարդակը հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումներին համապատասխանելու դեպքում ևս կարող է պատահել, որ նրա ձեռնարկությունների որոշ մասը վնասով աշխատի, կամ հակառակը՝ բարձր եկամտաբերություն ունենա։ Դրա պատճառն այն է, որ այդ ճյուղի ձեռնարկությունների տեխնիկական զինվածության մակարդակը և աշխատանքի բնական ու աշխարհագրական պայմաններն իրարից խիստ տարբերվում են, որի հետևանքով համապատասխանորեն տարբերվում է նաև նրանց արտադրանքի ինքնարժեքը։ Միայն բնական պայմանների բազմազանության պատճառով ՍՍՌՄ-ում արդյունահանված երկաթահանքի ինքնարժեքի տարբերությունները կազմում են 1:5, քարածխինը՝ 1:7, գորշ ածխինը՝ 1:12, բնական գազինը՝ 1:50, մեկ տոննա հացահատիկի ինքնարժեքի տարբերությունները կազմում են 1:6, շաքարի ճակնդեղինը՝ 1:5, մսինը՝ 1:3։

Բեռնափոխադրումների տարածությունների մեծ տարբերություններն իրենց համապատասխան արտացոլումն են գտնում ինքնարժեքում։ Աշխարհագրական գործոնի ազդեցությունը ինքնարժեքի վրա չեզոքացնելու համար սահմանվում են բեռնափոխադրումների դիֆերենցված տարիֆներ, կիրառվում են բեռների ֆրանկավորման տարբեր սիստեմներ, իսկ երբեմն էլ կատարվում է հեռավոր փոխադրումների բեռներն օգտագործող ձեռնարկությունների արտադրանքի գների զոնային դիֆերենցիա։

Եթե նույն զոնայում աշխատող ձեռնարկությունների բնական պայմանների տարբերությունները մեծ են, այդ դեպքում տնտհաշվարկային եկամտաբերության ապահովման համար զոնալ գների փոխարեն պետք է սահմանել հաշվարկային գներ։ Հաշվարկային գների ելակետը ոչ թե ճյուղային, այլ առանձին կամ մի խումբ ձեռնարկությունների ինքնարժեքն է։ Հաշվարկային գները հնարավոր են դարձնում գների դիֆերենցման միջոցով արտադրող ձեռնարկությունների տնտհաշվարկային եկամտաբերության ապահովումը զուգակցել սպառող ձեռնարկություններին վաճառվող արտադրանքի միասնական գների հետ։ Հաշվարկային գները դժվարացնում են արտադրող և սպառող ձեռնարկությունների միջև ուղղակի կապերի ստեղծումը։ Արտադրող ձեռնարկությունները արտադրանքը հաշվարկային գներով հանձնում են վաճառահանող կազմակերպություններին, իսկ վերջիններս այդ արտադրանքը միասնական գներով վաճառում են սպառող ձեռնարկություններին։

Տնտհաշվարկային եկամտաբերությունը որպես գնագոյացման գործոն



կոլտնտեսային սեկտորում, անշուշտ, ունի որոշ առանձնահատկություններ։

Կոլտնտեսությունները տնտեսությունը վարում են իրենց սեփական միջոցներով։ Արտադրանքի իրացումից ստացված դրամական միջոցները եկամտահարկի վճարումից հետո ամբողջովին մնում են կոլտնտեսությունների տրամադրության տակ։ Կոլտնտեսությունները պետական բյուջեից չեն կարող դոտացիա ստանալ։ Սոցիալիստական պետությունը կոլտնտեսություններին բաց է թողնում կարճատև և երկարատև վարկ և իր միջոցների հաշվին կառուցում է ջրանցքներ, մշակում դաշտապաշտպան անտառաշերտեր, չորացնում է ճահճակալած հողերը և այլն։ ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումներով պետական կապիտալ ներդրումները գյուղատնտեսության մեջ առաջիկա տարիներին նշանակալի չափով ավելանալու են։ Բայց անհրաժեշտ է նշել, որ գյուղատնտեսության մեջ իրականացվող կապիտալ ներդրումների նշանակալի մասը կատարվում է կոլտնտեսությունների հաշվին։ Եթե պետական ձեռնարկությունների աշխատողների սոցիալական ապահովագրության ծախսերը կազմում են արտադրանքի ինքնարժեքի մի բաղադրամասը, ապա կոլտնտեսություններում այդ ծախսերը կատարվում են զուտ եկամտի հաշվին։ Բացի այդ, կոլտնտեսությունները զուտ եկամտի հաշվին զգալի ծախսեր են կատարում ակումբների, գրադարանների, մանկամսուրների, մանկապարտեզների և այլ կուլտ-կենցաղային ձեռնարկությունների պահպանման համար, իսկ ժողովրդական տնտեսության պետական սեկտորում այդ ծախսերը հիմնականում ֆինանսավորվում են պետական բյուջեից։

Այդ բոլորից հետևում է, որ կոլտնտեսությունների արտադրանքի գնման գներում ներառված եկամտաբերությունը պետական ձեռնարկությունների տնտհաշվարկային եկամտաբերությունից բարձր պետք է լինի, հակառակ դեպքում նրանք չեն կարող ապահովել ընդլայնված վերարտադրության նորմալ ընթացքը։

Գնագոյացման գործոններից են և պահանջարկի ու առաջարկի հարաբերակցությունները։

Ստալինի տեսակետով սոցիալիստական հասարակարգում գնողունակ պահանջարկը շարունակ առաջարկից պետք է առաջ անցնի։ Այսպիսի տեսակետն արդարացնում է հերթերն ու սպեկուլյացիան։

ՍՄԿԿ ծրագրում ասված է. «Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը պետք է լիովին բավարարի այդ ապրանքների նկատմամբ աճող պահանջարկը և համապատասխանի դրա փոփոխություններին» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, Երևան, 1962 թ., էջ 515)։

Գների պլանավորման ժամանակ պահանջարկի և առաջարկի հարաբերակցությունները հաշվի չառնելիս առաջանում է որոշ ապրանքների պակաս, որը խափանում է առևտրի նորմալ ընթացքը և հակառակը՝ որոշ տեսակի ապրանքների ավելորդ կուտակումներ, որ բացասական ազդեցություն է ունենում փողի շրջանառության վրա։ Ներկայումս առևտրի ցանցում գերնորմատիվային կուտակումները հասնում են մի քանի միլիարդ ռուբլու, որոնք գլխավորապես կազմված են կտորեղենից, հագուստեղենից, կոշկեղենից, ժամացույցներից, կարի մեքենաներից և այլ ապրանքներից։ Դրա հետ միաժամանակ բնակչության պահանջները որոշ տեսակի արդյունաբերական ապրանքներով, դրանց թվում որոշ տեսակների կտորեղենով, դեռևս լրիվ չի բավարարվում։







Պահանջարկի և առաջարկի օրենքը տնտեսական շրջանառության տարբեր ոլորտներում տարբեր ուժով ու ձևով է գործում և տարբեր չափերով է ազդում գների վրա։

Տնտեսության պետական սեկտորի ներսում կատարվող տնտեսական շրջանառության մեջ, այսինքն՝ պետական ձեռնարկությունների և հիմնարկությունների նյութատեխնիկական մատակարարման ոլորտում պահանջարկի և առաջարկի դերը որպես գնագոյացման գործոնի, մեծ չէ։ Այստեղ արտադրության ու սպառման միջև կապն անմիջական է։ Ձեռնարկությունների պահանջները և այդ պահանջներին համապատասխանող արտադրական ծրագիրը, ինչպես նաև արտադրության միջոցների գնման համար պահանջվող դրամական միջոցների ծավալը սահմանվում են պետական պլանով։ Տնտեսության պետական սեկտորի ներսում ապրանքների իրացումը պայմանավորված է ձեռնարկությունների պլանային պահանջներով և ոչ թե գնողունակությամբ։

Տնտեսության պետական սեկտորի և կոլտնտեսությունների միջև կատարվող տնտեսական շրջանառության ոլորտում պահանջարկի և առաջարկի ազդեցությունը գների վրա ավելի շոշափելի է։ Պետությունն իրականացնում է կոլտնտեսությունների նյութատեխնիկական մատակարարումը։ Սակայն կոլտնտեսությունները պետության վաճառած բոլոր տեսակի արտադրական միջոցները չեն գնում, նրանք առաջին հերթին ձեռք են բերում իրենց համար տնտեսապես արդյունավետ արտադրության միջոցներ և դրանով իսկ ազդում գների և արդյունաբերական արտադրանքի ասորտիմենտի վրա։ Կոլտնտեսություններն իրենց հերթին պետությանը վաճառում են գյուղատնտեսական մթերքներ։ Պետությունը մեծ պահանջարկ ունեցող գյուղատնտեսական մթերքների (ցիտրուսների, տեխնիկական կուլտուրաների) համար սահմանում է համեմատաբար բարձր գներ, իսկ ոչ մեծ պահանջարկ ունեցող մթերքները առաջին հերթին գնում է այն շրջաններում, որտեղ արտադրական ծախսերը փոքր են և գները ցածր։

Պահանջարկի և առաջարկի դերը, որպես գնագոյացման գործոնի, մեծ է սպառման առարկաների շրջանառության ոլորտում։ Այստեղ արտադրության ու սպառման միջև անմիջական կապեր չկան և, քանի որ պահանջարկն ու առաջարկը պայմանավորված են բազմաթիվ հանգամանքներով, նրանց պլանավորման գործը չափազանց բարդանում է։

Գների տվյալ մակարդակի պայմաններում պահանջների չափերն ու բնույթը որոշվում են բնակչության դրամական եկամուտների գումարով, նրանցից գանձվող հարկի և այլ վճարումների չափերով, ոչ ապրանքային բնույթի ծախսերի ծավալով, սպառողների կազմով, կոլտնտեսային շուկայի վիճակով և այլն։ Իսկ գնողունակ պահանջարկի բավարարման համար անհրաժեշտ ապրանքային ֆոնդերի ծավալն ու կազմը որոշվում են թողարկված արտադրանքի չափերով ու կառուցվածքով, էքսպորտի և իմպորտի չափերով, արտաշուկայական ֆոնդերի տեսակարար կշռով սպառման առարկաների ընդհանուր ծավալում, ապրանքային պաշարների փոփոխությամբ և այլն։

Պահանջարկի և առաջարկի պլանավորման ժամանակ անհրաժեշտ է հաշվի առնել արտադրության ու պահանջարկի սեզոնայնությունը, նորանոր տարազների հանդես գալը, պահանջարկի ազգային և աշխարհագրական առանձնահատկությունները և այլն։

Պահանջարկի և առաջարկի հարաբերակցությունների փոփոխությունները



տարբեր ձևերով և ուղղություններով են ազդում գների վրա։ Եթե առաջարկը գերազանցում է պահանջարկին, նրանց միջև նորմալ հարաբերակցություններ ստեղծելու համար գները պետք է իջեցնել, իսկ եթե տևականորեն պահանջարկն է գերազանցում առաջարկին, գները պետք է բարձրացնել և միաժամանակ միջոցառումների դիմել՝ ընդլայնելու արտադրությունը, որպեսզի հետագայում գները նորից իջեցվեն ու բնակչության պահանջմունքները լրիվ բավարարվեն։ Պահանջարկի և առաջարկի սեզոնային փոփոխություններն անհրաժեշտ են դարձնում սահմանել սեզոնային գներ։

Պահանջարկի և առաջարկի ազդեցությամբ կատարվող գների փոփոխությունները չպետք է կրավորական բնույթ ունենան։ Եթե պահանջարկը և առաջարկն ազդում են գների վրա, ապա գները ևս իրենց հերթին ազդում են պահանջարկի և առաջարկի հարաբերակցությունների վրա։ Գների փոփոխություններն այն հաշվով պետք է կատարվեն, որպեսզի խթանեն կենսական և խոշոր սոցիալական նշանակություն ունեցող ապրանքների սպառումը, սահմանափակեն դեֆիցիտային և վնասակար հետևանքներ ունեցող ապրանքների օգտագործումը և, վերջապես, նպաստեն սպառման առարկաների արտադրության արագ վերելքին։

Ինչպես նշեցինք, որոշ տնտեսագետներ գտնում են, որ գնագոյացման գործոնների թվին պետք է դասել նաև արտադրանքի ֆոնդատարությունը։

Արտադրության արդյունավետությունը որոշվում է արտադրանքի մեկ միավորի թողարկման համար ծախսվող առարկայացած և կենդանի աշխատանքի չափերով։ Սակայն այդ ցուցանիշը չի կարող արտահայտել տվյալ արտադրության ժողովրդական-տնտեսական արդյունավետությունը։ Վերջինս որոշելու համար անհրաժեշտ է հաշվի առնել ո՛չ միայն արտադրանքի թողարկման համար կատարվող առարկայացած և կենդանի աշխատանքի ծախսումները, այլ նաև տվյալ արտադրության կազմակերպման համար պահանջվող կապիտալ ներդրումների չափերը։

Արտադրական հիմնական ֆոնդերն ամբողջովին մասնակցում են սպառարժեքի ստեղծմանը, իսկ արժեքի կազմավորմանը մասնակցում է միայն նրանց արժեքի փոխանցված մասը, այդ պատճառով էլ արժեքը և գինը լրիվ չափով չեն կարող արտահայտել արտադրության մեջ ներդրված ամբողջ ֆոնդերի արդյունավետությունը։

Հասարակությանը ձեռնտու է քիչ արտադրական ֆոնդերով շատ արտադրանք ստանալ։

Գոյություն ունեն այնպիսի արտադրություններ, որոնց արտադրանքի ինքնարժեքը ցածր է, բայց ժողովրդա-տնտեսական տեսակետից նրանց արդյունավետությունը բարձր չէ, քանի որ նրանց կազմակերպումը պահանջում է խոշոր կապիտալ ներդրումներ։ Օրինակ, հիդրոէլեկտրակայանների արտադրանքի ինքնարժեքը ջերմաէլեկտրակայանների արտադրանքի ինքնարժեքից ցածր է, սակայն բոլոր դեպքերում չէ, որ հիդրոէլեկտրակայանների կառուցումը ջերմաէլեկտրակայանների համեմատությամբ տնտեսապես ավելի նպատակահարմար է, քանի որ հիդրոէլեկտրակայանների շինարարությունը պահանջում է անհամեմատ ավելի մեծ ծախսումներ։

Ահա այդ բոլորից ելնելով է, որ որոշ տնտեսագետներ արտադրանքի ֆոնդատարությունը գնագոյացման գործոն են համարում։ Նրանք գտնում են, որ հասարակական միջինից բարձր ֆոնդատարություն ունեցող ճյուղերի ար-

տադրանքի գները պետք է արժեքից բարձր լինեն, իսկ ցածր ֆոնդատարության ունեցող ճյուղերի արտադրանքի գները՝ արժեքից ցածր։



ՍՄԿՊ-ն վերջին տասնամյակում հսկայական աշխատանք է տարել մարքսլենինյան տնտեսագիտության հետագա ստեղծագործական զարգացման, ժողովրդական տնտեսության պլանավորման կատարելագործման, տնտեսական ղեկավարության մակարդակի բարձրացման բնագավառներում։

Գների պլանավորման ասպարեզում եղած կամայականություններն ու սուբյեկտիվիզմը, որոնք բխում են անհատի պաշտամունքի էությունից, հաղթահարված են։ Սակայն գործող գների սիստեմում դեռևս գոյություն ունեն խոշոր թերություններ։

Ապրանքա-փողային հարաբերությունները կոմունիզմի կառուցմանը ծառայեցնելու նպատակով մեր տնտեսագետներն ավելի խոր ու բազմակողմանի պետք է մշակեն գնագոյացման և գների պլանավորման կարևորագույն հարցերը։

## ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ

● *Ժողովրդական համալսարանների* թիվը ՍՍՌՄ-ում հասնում է 12,9 հազարի։ Մեծ աշխատանք են տանում դրանք աշխատավորների կոմունիստական դաստիարակության, գիտական, տեխնիկական և գեղագիտական գիտելիքների հարստացման ուղղությամբ։ Միլիոնավոր բանվորներ, կոլտնտեսականներ, ծառայողներ, առանց արտադրությունից կտրվելու, բարձրացնում են իրենց կրթական մակարդակը կուլտուրայի համալսարաններում։

● *Ժողովրդական թատրոններ*. 768-ն են դրանք։ Դրանցից շատերը գործում են պրոֆեսիոնալ թատրոնների արվեստի ականավոր գործիչների ղեկավարությամբ։ Այդ թատրոնների ներկայացումներն իրենց գեղարվեստական վարպետությամբ մոտ են պրոֆեսիոնալ թատրոններին։

● *Հասարակական գրադարաններ*. ՍՍՌՄ-ում գործում են ավելի քան հինգ հազար հասարակական գրադարաններ, որոնք ունեն 8 միլիոն գիրք։ Միայն գրադարանների վարչություններում (խորհուրդներում) աշխատում են մոտ 23 հազար ակտիվիստներ։

● *Ժողովրդական գրախանութներ*. Վերջին տարիներս բացվել են հասարակական հիմունքներով գործող 740 գրախանութներ։ Երկրում կան երեք հազարից ավելի գրքի ժողովրդական կիոսկներ, որոնք գրականություն են վաճառում ձեռնարկություններում ու կոլտնտեսություններում։

● *Գեղարվեստական ինքնագործունեություն*. ՍՍՌՄ պրոֆմիություններում 1963 թվականին գործում են գեղարվեստական ինքնագործունեության 379 հազար կոլեկտիվներ։ Դրանք ընդգրկում են 7 միլիոն մասնակիցներ։

Բացի դրանից գեղարվեստական ինքնագործունեության տասնյակ հազարավոր կոլեկտիվներ են ստեղծվել ռեսպուբլիկական կուլտուրայի մինիստրությունների և կոլտնտեսությունների ակումբներին կից։

# ԲԱՇԽՄԱՆ ԵՐԿՈՒ ՁԵՎԵՐԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԾԱՎԱԼՈՒՆ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

Մ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Մեր երկրում ազգային եկամտի բաշխման հիմնական ձևերի ուսումնասիրությունն ունի տեսական ու գործնական խոշոր նշանակություն։ Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ բաշխումն օբյեկտիվորեն բխում է հասարակության արտադրական հարաբերություններից և ակտիվորեն ներգործում է արտադրության պրոցեսի վրա։

Սոցիալիզմի պայմաններում, երբ արտադրական հարաբերությունների հիմքում ընկած է արտադրության միջոցների հանրային սեփականությունը, երբ վերացված են անտագոնիստական հակասությունները արտադրության և բաշխման միջև, երբ արտադրության նպատակն է ամբողջ ժողովրդի անընդհատ աճող պահանջմունքների առավել բավարարումը, ազգային եկամուտը բաշխվում է հօգուտ ամբողջ հասարակության և նրա առանձին անդամների։

Սոցիալիզմի ժամանակ արտադրության զարգացման շնորհիվ ոչ միայն բարձրանում է աշխատավորության կենսամակարդակը, այլև փոխվում են բնակչության պահանջմունքների բավարարման եղանակներն ու ձևերը։ Անձնական սպառման շատ ձևեր սոցիալիզմի ժամանակ ստանում են հասարակական բնույթ։ Այսպես՝ կապիտալիզմի պայմաններում երեխաների դաստիարակությունը, կրթությունը, բժշկական օգնությունը և այլն կախված են մարդու եկամուտների չափից, մինչդեռ սոցիալիստական հասարակությունը պատմության մեջ առաջինը իր վրա վերցրեց բնակչության սոցիալ-կուլտուրական պահանջմունքների զգալի մասի բավարարումը՝ հասարակական ֆոնդերի հաշվին։

Բանվորների և ծառայողների աշխատավարձը, հանրային ու օժանդակ անձնական տնտեսություններից կոլտնտեսականների ստացած եկամուտները նրանց կենսամակարդակի բարձրացման միակ աղբյուրը չեն։ Սոցիալիզմի ժամանակ աշխատավորության կենսամակարդակի հիմնական ցուցանիշ են հանդիսանում նրանց իրական եկամուտները։ Իրական եկամուտները բաղկացած են բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձից, կոլտնտեսականների եկամուտներից, որոնք ստացվում են յուրաքանչյուրի աշխատանքի քանակին և որակին համապատասխան, ինչպես և այլ դրամական վճարումներից (որոնք չեն մտնում աշխատավարձի մեջ) և հասարակական ֆոնդերից տրվող ձրի կամ արտոնյալ ծառայություններից։

Սպառման հասարակական ֆոնդերն զգալիորեն ավելացնում են աշխատավորների եկամուտները։ Հասարակության յուրաքանչյուր անդամ, ներառյալ անչափահասներն ու ծերերը, այս կամ այն չափով օգտվում են սպառման հասարակական ֆոնդերի հաշվին իրականացվող ծառայություններից ու արտոնություններից։ Բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների իրական եկամուտներն աճում են ինչպես հասարակական ֆոնդերից տրվող դրամական վճարումների միջոցով (կենսաթոշակներ, նպաստներ, թոշակներ և այլն), որը հանդիսանում է աշխատավարձի ուղղակի լրացում, այնպես էլ ընտանիքին տրվող անուղղակի եկամուտների միջոցով (ձրի կրթություն, բուժում, բնակարանային ցածր վարձ և այլն)։

Ազգային եկամուտն իր օգտագործման փուլում բաժանվում է երկու խոշոր մասերի՝ սպառման և կուտակման ֆոնդերի։ Կուտակման ֆոնդն օգտագործվում է արտադրական և ոչ-արտադրական հիմնական ֆոնդերի, պաշարների ու ռեզերվների աճման, իսկ սպառման ֆոնդը՝ հասարակության ոչ արտադրական պահանջմունքների բավարարման համար։

Սպառման ֆոնդը բաժանվում է երկու մասի՝ սպառման անհատական ֆոնդեր և սպառման հասարակական ֆոնդեր։ Կոմունիզմին մոտենալուն զուգընթաց աստիճանաբար բարձրանալու է սպառման հասարակական ֆոնդերի տեսակարար կշիռը։

Սոցիալիզմի ժամանակ սպառման հասարակական ֆոնդերը բաշխման այնպիսի ձևերից մեկն է, որում պարզորոշ երևան են գալիս կոմունիստական բաշխման սկզբունքի տարրերը։ Ինչպես հայտնի է, սոցիալիստական հասարակարգում նյութական և կուլտուրական բարիքների հիմնական մասը բաշխվում է ծախսված աշխատանքի քանակին ու որակին համապատասխան։ Քանի դեռ չի ստեղծվել նյութական ու կուլտուրական բարիքների առատություն, և աշխատանքը յուրաքանչյուր մարդու համար չի դարձել առաջին կենսական պահանջ, ըստ աշխատանքի բաշխումը կլինի բաշխման գլխավոր ձևը, որն ապահովում է մարդկանց նյութական շահագրգռվածությունը արտադրության զարգացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ Բայց ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի հետ մեկտեղ սոցիալիստական հասարակարգում գոյություն ունի և զարգանում է սպառման հասարակական ֆոնդերի միջոցով իրականացվող բաշխման ձևը։

Սոցիալիզմի պայմաններում սպառման հասարակական ֆոնդերը դեռևս լրիվ չեն ներկայացնում բաշխման կոմունիստական ձևը։ Ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքից ըստ պահանջմունքների՝ կոմունիստական սկզբունքին անցնելը տեղի է ունենում աստիճանաբար։ Անցման բոլոր ձևերի մեջ լինում են հնի և նորի տարրերը։ Այդ պարզորոշ հանդես է գալիս հասարակական ֆոնդերում։

Հասարակական ֆոնդերի բաշխման հիմքում ընկած է հասարակության յուրաքանչյուր անդամի աշխատանքից անկախ նրա սոցիալ-կուլտուրական պահանջմունքների բավարարման սկզբունքը։

Հասարակական ֆոնդերից կատարվող անվճար ծառայությունները, որ ներկայումս կազմում են ամբողջ հասարակական ֆոնդերի մոտ կեսը, չնայած և մոտեցնում են ըստ պահանջմունքի բաշխման սկզբունքը, բայց չի կարելի ներկա պայմաններում համարել բաշխման կոմունիստական ձև, քանի որ այդ պահանջմունքները բավարարվում են ոչ լրիվ կերպով, և դրանց բա-



վարարման համար դեռևս օգտագործվում են աշխատավորության անձնական եկամուտները (դասագրքերի, դեղորայքի ձեռքբերում և այլն)։

Այսպիսով, սպառման հասարակական ֆոնդերը ներկայումս ըստ պահանջմունքի բաշխման անցման ձևն են։ Բայց այս հանգամանքը բոլորովին չի նսեմացնում հասարակական ֆոնդերի դերը։ Հասարակության արտադրողական ուժերի և արտադրության արագ զարգացմանը զուգընթաց մեծանում է հասարակական ֆոնդերի դերը։

Սպառման հասարակական ֆոնդերի նշանակությունը, առաջին հերթին՝ այն է, որ դրանց մեծ մասը ուղղվում են համընդհանուր օգտագործմանը և դրանց զարգացմամբ հավասար չափով շահում է ամբողջ հասարակությունը և նրա յուրաքանչյուր անդամ՝ առանձին վերցրած։

Ժողովրդական սպառման հասարակական ֆոնդերն օգտագործվում են հասարակության անդամների պահանջմունքների բավարարման համար, անվճար կամ արտոնյալ պայմաններով։ Նրանց մեջ են մտնում պետական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և հասարակական կազմակերպությունների՝ լուսավորության, առողջապահության, ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացմանը, բնակարանների պահպանմանը, բնակչության հանգստի կազմակերպմանը, մանկական նախադպրոցական և դպրոցական հիմնարկների պահպանմանն ուղղված բոլոր ծախսերը։

Որոշ տնտեսագետներ աշխատավարձը համարելով նյութական արտադրության ոլորտի աշխատողների անհրաժեշտ աշխատանքի հատուցման միակ ձևը, հասարակական ֆոնդերից կատարված բոլոր վճարումները դիտում են իբրև հավելյալ արդյունքի բաշխման ձև։ Տնտեսագետների մի մասն էլ, վկայակոչելով Կ. Մարքսի հայտնի դրույթը սոցիալիզմի պայմաններում անհրաժեշտ աշխատանքի սահմանների մասին, ի հակադրություն վերը նշված կարծիքի, գտնում է, որ աշխատավարձի հետ միասին անհրաժեշտ աշխատանքի հատուցման ձև են նաև սպառման հասարակական ֆոնդերից կատարված վճարումները։ Մեր կարծիքով թե առաջին և թե երկրորդ տեսակետներն սպառման հասարակական ֆոնդերի աղբյուրների մասին անհիմն են։

Սպառման հասարակական ֆոնդերի աղբյուր են հանդիսանում թե՛ հավելյալ և թե՛ անհրաժեշտ արդյունքների մասերը։

Անհրաժեշտ արդյունք են սպառման հասարակական ֆոնդից ստացված այն բոլոր նյութական բարիքները, որոնք գործադրվում են նյութական արտադրության ոլորտում աշխատողների կարիքները բավարարելու նպատակով։ Միաժամանակ սպառման հասարակական ֆոնդերից ստացված այն բոլոր նյութական բարիքները, որ սպառում են ոչ արտադրական ոլորտի աշխատողները, հավելյալ արդյունքի մի մասն են, քանի որ դրա հաշվին պահպանվում է ամբողջ ոչ արտադրական ոլորտը։

Այժմ. երբ մեր երկիրը թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, առանձնապես կարևոր նշանակություն ունի բաշխման երկու ձևերի հարաբերակցության ուսումնասիրությունը։ Սպառման անհատական ֆոնդերն ու սպառման հասարակական ֆոնդերը հանդիսանալով սպառման ֆոնդի բաղկացուցիչ մասերը, նրա աճմանը զուգընթաց սիստեմատիկաբար աճում են։ Բայց նրանց աճման տեմպերը, հատկապես ներկա պայմաններում տարբեր են. առավել արագ են աճում սպառման հասարակական ֆոնդերը, որի

հետևանքով նրա տեսակարար կշիռը սպառման ֆոնդի մեջ աստիճանաբար մեծանում է։

Յոթնամյակի վերջում բանվորների ու ծառայողների աշխատավարձը ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ միջին հաշվով կաճի 26 տոկոսով, իսկ ռեալ եկամուտները՝ ներառյալ սպառման ֆոնդերը՝ 40 տոկոսով։ Բաշխման երկու ձևերի աճման նման հարաբերակցության դեպքում կավելանա սպառման հասարակական ֆոնդերից արված հատկացումները աշխատավորության ռեալ եկամուտներում։

Այստեղ հատկանշականն այն է, որ սպառման հասարակական ֆոնդերը բարձրացնում են ցածր վարձատրվող աշխատավորական խմբերի ռեալ եկամուտները, քանի որ արտոնությունների մեծ մասը տրվում է՝ հաշվի առնելով յուրաքանչյուր ընտանիքի նյութական ապահովվածությունը, հատկապես՝ աշխատավարձի մակարդակը։

Այժմ կոնկրետ փաստական տվյալների հիման վրա համառոտակի վերլուծենք բաշխման երկու ձևերի դերը բնակչության նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման գործում։ ՍՍՌՄ-ում բանվորների ռեալ եկամուտները, 1913 թվականի համեմատությամբ, 1962-ին ավելացել են 5,9 անգամ («СССР в цифрах. в 1962 году» (стат. сборник), М., 1963, стр. 298)․ Բանվորների ռեալ եկամուտների աճը պայմանավորված է մի շարք գործոններով։ Դրամական աշխատավարձն ավելի արագ է աճել, քան ապրանքների գները և ծառայությունների վճարումները։ Բնակարանային վարձի և կոմունալ ծառայությունների ծախսերը, որոնք մինչև ռևոլյուցիան կազմում էին բանվորների բյուջեի 20 տոկոսը, իսկ առանձին դեպքերում կազմեցին աշխատավարձի 1/3-ը, ներկայումս իջել են 5—6 անգամ։

Մոտավոր հաշվումներով, արդյունաբերության և շինարարության բանվորներին կատարված վճարումներն ու նրանց արտոնությունները (առանց աշխատավարձի) 1962 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, համադրելի գներով ավելացան ավելի քան 20 անգամ։ Նույն թվականին գյուղացիության ռեալ եկամուտները, 1913 թվականի համեմատությամբ, ավելացան ավելի քան 7 անգամ։ Կոլտնտեսականներին տրվող վճարումներն ու արտոնությունները, ներառյալ կենսաթոշակները, նպաստները, ձրի ուսուցումն ու բժշկական սպասարկումը և սոցիալ-կուլտուրական սպասարկման այլ ձևեր, 1913 թվականի համեմատությամբ, 1962 թվականին, համադրելի գներով, ավելացան մոտ 38 անգամ։ 1940 թվականի համեմատությամբ 1962-ին ՍՍՌՄ-ում բանվորների և ծառայողների ռեալ եկամուտներն ավելացան 2,2, իսկ գյուղացիության ռեալ եկամուտները՝ 2,6 անգամ։

Պարտիայի ու կառավարության ցուցաբերած մեծագույն հոգատարության շնորհիվ մեր երկրում աշխատավորության ռեալ եկամուտները սիստեմատիկորեն աճում են։ Յոթնամյակի չորս տարիների ընթացքում մեկ աշխատողին ընկնող ռեալ եկամուտներն ավելացել են 18 տոկոսով։ «Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները 20 տարում կաճեն ավելի քան երեքուկես անգամ։ Ընդ որում, արդեն առաջին տասնամյակում բոլոր բանվորների և ծառայողների՝ մեկ աշխատողին ընկնող ռեալ եկամուտները (հաշվի առնելով հանրային ֆոնդերը) միջին հաշվով կավելանան գրեթե երկու անգամ, իսկ ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների ռեալ եկամուտները կաճեն մոտավորապես երեք անգամ։ Այսպիսով, արդեն մինչև առաջին տասնամյակի



վերջը երկրում չեն մնա բանվորների և ծառայողների ցածր վարձատրվող խմբեր» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, Հայպետհրատ, 1962, էջ 514)։

Բնակչության սպառման անհատական ֆոնդերի աճման փայլուն վկայությունն է պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության անշեղ աճը։

ՍՍՌՄ պետական և կոոպերատիվ մանրածախ առևտրի ապրանքաշրջանառությունը 1962 թվականին կազմեց 87,2 միլիոն ռուբլի, 1940 թվականի 17,5 միլիոնի դիմաց։ Նույն թվականին, 1940-ի համեմատությամբ, մանրածախ առևտրի ապրանքաշրջանառության ֆիզիկական ծավալն աճեց 3,6 անգամ։ Հայկական ՍՍՌ-ում 1928 թվականի համեմատությամբ պետական և կոոպերատիվ մանրածախ ապրանքաշրջանառությունը 1961 թվականին ավելացել է 13,7, իսկ 1940 թվականի համեմատությամբ նրա ֆիզիկական ծավալն աճել է 4,3 անգամ։ Յոթնամյակի միայն չորս տարիներին ռեսպուբլիկայի մանրածախ ապրանքաշրջանառությունը 1958 թվականի համեմատությամբ ավելացել է 37,4 տոկոսով։ Ռեսպուբլիկայի բնակչությունը 1958 թվականին գնել է 398,4 միլիոն ռուբլու ապրանք, իսկ 1962 թվականին՝ 568,3 միլիոն ռուբլու, այսինքն՝ 42,6 տոկոսով ավելի։

Բնակչության ռեալ եկամուտների աճին ուղեկցում է սպառման ֆոնդերի կառուցվածքի փոփոխությունը, որի ժամանակ մանրածախ առևտրում ապրանքների գների հաշվին իջնում են բնեղեն սպառման չափերը։ Ապրանքաշրջանառության մեջ աստիճանաբար բարձրանում է պետական և կոոպերատիվ առևտրի տեսակարար կշիռը։ Առանձնապես արագ է աճում արդյունաբերական ապրանքների վաճառքը, օգտագործվող ապրանքների մեջ բարձրանում է առավել որակյալ տեսակների տեսակարար կշիռը։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում սպառման անհատական ֆոնդերի աճման հետ արագ տեմպերով աճում են սպառման հասարակական ֆոնդերը, ի դեպ, առավել արագ, քան ազգային եկամտի աճման տեմպերը։

Քսանամյակի ընթացքում նախատեսվում է սպառման հասարակական ֆոնդերն ավելացնել ավելի քան տասն անգամ, 1960 թվականին 24,5 միլիարդ ռուբլուց 1980-ին հասցնել 255—265 միլիարդի։ Այդ նշանակում է, որ 1980 թվականին սպառման հասարակական ֆոնդերը կկազմեն բնակչության ամբողջ եկամտի կեսը։ Միության մասշտաբով այժմ այն կազմում է բնակչության եկամուտների մոտ մեկ երրորդը։

«Կոմունիզմին մոտենալու համեմատ, անձնական պահանջմունքներն ավելի ու ավելի մեծ չափով կբավարարվեն սպառման հանրային ֆոնդերի հաշվին, դրանց աճի տեմպերը կգերազանցեն ըստ աշխատանքի անհատական վարձատրության ավելացման տեմպերը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, 1962, էջ 514)։

Սպառման հասարակական ֆոնդերի զարգացումը բացառիկ կարևոր նշանակություն ունի աշխատավորության կենսամակարդակի բարձրացման, նրանց սոցիալ-կուլտուրական պահանջմունքների բավարարման, ինչպես նաև հասարակական արտադրության զարգացման գործում։ Սպառման հասարակական ֆոնդերը, միաժամանակ հասարակության անդամների եկամուտների տարբերությունների կրճատման կարևոր միջոց են։ Սպառման հասարակա-

կան ֆոնդերից, պետական բյուջեից և ձեռնարկությունների միջոցներից բնակչության արված վճարումներն ու տրված արտոնությունները 1952 թվականի 12,9 միլիարդ ռուբլուց 1962-ին հասան 28,4 միլիարդի։

Սպառման հասարակական ֆոնդերի աճման արագ տեմպերի մասին է վկայում ՍՍՌՄ պետական բյուջեից սոցիալ-կուլտուրական միջոցառումներին արված հատկացումների չափերի անընդհատ մեծացումը։ 1962 թվականին ՍՍՌՄ պետական բյուջեից սոցիալ-կուլտուրական միջոցառումներին հատկացվել է 28,7 միլիարդ ռուբլի, 1940 թվականի 4,1 միլիարդի դիմաց, այսինքն աճել է 7 անգամ։ Հայկական ՍՍՌ պետական բյուջեից 1962 թվականին սոցիալ-կուլտուրական միջոցառումներին հատկացվել է 198,1 միլիոն ռուբլի, 1940-ի 31,8 միլիոնի դիմաց։ Սոցիալ-կուլտուրական միջոցառումներին 1962 թվականին հատկացված միջոցները կազմել են ՍՍՌՄ պետական բյուջեի ամբողջ ծախսերի 35,8 տոկոսը, 1940 թվականի 23,5-ի դիմաց, իսկ Հայկական ՍՍՌ պետական բյուջեի՝ 45,3 տոկոսը։

Յոթնամյակի չորս տարիների ընթացքում ռեսպուբլիկայի բյուջեից սոցիալ-կուլտուրական միջոցառումներին արված հատկացումներն ավելացել են 62,5 տոկոսով, այսինքն տարեկան միջին աճը կազմել է 15,5 տոկոս։

Նախատեսված է 1964 թվականին ՍՍՌՄ պետական բյուջեից սոցիալ-կուլտուրական միջոցառումներին հատկացնել 32,7 միլիարդ, 1965-ին՝ 34,5 միլիարդ ռուբլի։ Վերջինս 1958 թվականին կատարված այդ հատկացումների համեմատությամբ 61 տոկոսով ավելի է, իսկ Հայկական ՍՍՌ-ում՝ ավելի քան երկու անգամ։

Սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորման արագ աճը պարզ ցույց է տալիս սպառման հասարակական ֆոնդերի ավելացման բուռն տեմպերն ու սպառման ընդհանուր ֆոնդում նրանց տեսակարար կշռի աստիճանական բարձրացումը։

Սոցիալ-կուլտուրական միջոցառումներին ուղղված հատկացումները գերազանցապես օգտագործվում են լուսավորության և առողջապահական հիմնարկների պահպանման, ինչպես նաև սոցիալական ապահովության ֆինանսավորման համար։

Սոցիալիզմը վերափոխելով մարդկանց տնտեսական հարաբերությունները՝ պայմաններ է ստեղծում գիտության, կուլտուրայի, արվեստի բուռն զարգացման, բնակչության կուլտուրական մակարդակի աննախընթաց վերելքի և հասարակության բոլոր անդամների հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարման համար։ «Առաջ ամբողջ մարդկային խելքը,— նշում էր Վ. Ի. Լենինը,— նրա ամբողջ հանճարն ստեղծագործում էր միմիայն նրա համար, որպեսզի մի կարգ մարդկանց տա տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր բարիքները, իսկ մյուսներին զրկի ամենաանհրաժեշտից՝ լուսավորությունից ու զարգացումից։ Իսկ այժմ տեխնիկայի բոլոր հրաշքները դառնալու են համաժողովրդական սեփականություն և այսուհետև մարդկային խելքն ու հանճարն էլ երբեք բռնության միջոցների, շահագործման միջոցների չեն վերածվի (Երկեր, հ. 26, էջ 589—590)։

Եթե ցարական Ռուսաստանում բնակչության երեք քառորդն անգրագետ էր, ապա ներկայումս Սովետական Միությունը դարձել է համատարած գրագիտության երկիր։ Մարդահամարի վերջին տվյալներով 59 միլիոն մարդ կամ 15 տարեկանից բարձր տարիք ունեցող բնակչության 40 տոկոսն ունի բարձ-



բագույն և միջնակարգ և ոչ լրիվ միջնակարգ կրթություն, 24 տարեկանից բարձր յուրաքանչյուր 1000 բնակչից 34-ն ունեն բարձրագույն և 495-ը՝ թերի բարձրագույն, միջնակարգ և ոչ լրիվ միջնակարգ կրթություն։

Ռեսպուբլիկայի ժողովրդական կրթության ու կուլտուրայի աննախընթաց վերելքը հնարավոր դարձավ միայն սպառման հասարակական ֆոնդերի արագ աճման շնորհիվ։ Եթե 1940 թվականին միայն ռեսպուբլիկայի պետական բյուջեից լուսավորությանն էր հատկացվում 23,8 միլիոն ռուբլի, ապա 1962 թվականին այն հասավ 111,9 միլիոնի, այսինքն՝ աճեց 4,7 անգամ։ 1963 թվականին ռեսպուբլիկայի պետական բյուջեից լուսավորության, գիտության և կուլտուրայի հիմնարկներին և կազմակերպություններին հատկացվեց 124,1 միլիոն ռուբլի, 1964-ին պետք է հատկացվի 132,2 միլիոն և 1965-ին 141,4 միլիոն ռուբլի։

Սոցիալիզմի պայմաններում հատուկ նշանակություն է ստանում բնակչության առողջապահության հարցը։ Սովետական իշխանության տարիներին ՍՍՌՄ բնակչության բժշկական սպասարկման ասպարեզում ձեռք են բերվել խոշոր հաջողություններ։

Սոցիալիզմն աշխատավորությանն ազատեց բուժման ծախսերից։ Բոլոր սոցիալիստական երկրներում բժշկական օգնությունն անվճար է, բժշկական հիմնարկները պահվում են հասարակական ֆոնդերի հաշվին։ Միայն 1962 թվականին պետությունն առողջապահության ծախսերի համար տրամադրել է 5,2 միլիարդ ռուբլի։ Հայկական ՍՍՌ պետական բյուջեից նույն տարում տրամադրվել է 37,3 միլիոն ռուբլի։ 1964—1965 թթ. պլանով նախատեսվում է առողջապահությանը տրամադրել ՍՍՌՄ մասշտաբով 11,1 միլիարդ, իսկ Հայկական ՍՍՌ-ում՝ 94 միլիոն ռուբլի։

ՍՄԿՊ ծրագիրը նախատեսում է գոյություն ունեցող բժշկական անվճար սպասարկման հետ միասին կազմակերպել հիվանդների սանատորիական անվճար բուժում, ինչպես նաև դեղորայքի ձրի բացթողում։

Սովետական պետությունը մաքսիմում հոգատարություն է ցուցաբերում մարդկանց նկատմամբ ծերության և աշխատունակությունը կորցնելու պայմաններում։ ՍՍՌՄ-ում ծերության համար տրվող կենսաթոշակի չափը կազմում է միջին աշխատավարձի 50—100 տոկոսը, որն զգալիորեն բարձր է, քան ցանկացած կապիտալիստական երկրում։ Կենսաթոշակային ապահովման սիստեմը ՍՍՌՄ-ում առավել մեծ արտոնություններ է ընձեռում նրանց, որոնց աշխատավարձը մինչև կենսաթոշակի անցնելը ցածր է եղել։ Նրանց կենսաթոշակը սահմանվում է լրիվ աշխատավարձի չափով։ 1962 թվականի հունվարի 1-ի տվյալներով Հայկական ՍՍՌ-ում պետական կենսաթոշակ են ստացել 159 հազար մարդ՝ տարեկան 40 միլիոն ռուբլի գումարով։

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գործում պետության ձեռնարկած միջոցառումների սիստեմում խոշոր նշանակություն ունի բնակարանային շինարարության լայն ծրագրի իրականացումը, որի շնորհիվ զգալիորեն բարելավվել են բնակչության կենցաղային պայմանները։ Պարտիան և կառավարությունը հատուկ ուշադրություն են նվիրում բնակարանային պրոբլեմի լուծմանը։ Մեր երկրում ամեն տարի բարեկարգվում և ավելանում է հասարակական բնակարանային ֆոնդը։

Հայրենական պատերազմից հետո, 1946—1958 թթ. ՍՍՌՄ-ում կառուցվել և շահագործման է հանձնվել 418,8 միլիոն, Հայկական ՍՍՌ-ում՝ 3100

հազար քառ. մետր բնակելի տարածություն։ Բնակարանային շինարարությունն առանձնապես մեծ թափ ստացավ յոթնամյակի տարիներին։ Յոթնամյակի չորս տարիներին (1959—1962 թթ.) ՍՍՌՄ-ում կառուցվել և շահագործման է հանձնվել 324,8 միլիոն քառ. մետր բնակելի տարածություն, որից պետական և կոոպերատիվ ձեռնարկությունների և կազմակերպությունների կողմից կառուցվել է 236,3 միլիոն քառ. մետր։ Նույն ժամանակաշրջանում Հայկական ՍՍՌ-ում կառուցվել և շահագործման է հանձնվել 2086 հազար քառ. մետր բնակելի տարածություն, այդ թվում պետական և կոոպերատիվ ձեռնարկությունների և կազմակերպությունների կողմից՝ 1252 հազար քառակուսի մետր։

1964—1965 թթ. մեր երկրում կկառուցվի 155 միլիոն քառ. մետր բնակելի տարածություն և 15 միլիոն մարդ կապահովվեն բարեկարգ բնակարաններով։ Հայկական ՍՍՌ-ում 1964—1965 թթ. միայն պետական կապիտալ շինարարության գծով շահագործման կհանձնվի 1125 հազար քառ. մետր բնակելի տարածություն, բացի դրանից ֆինանսավորման և կենտրոնացված աղբյուրների հաշվին, ինչպես նաև կոոպերատիվ և անհատական շինարարության միջոցով կկառուցվեն 509 հազար քառ. մետր տարածությամբ բնակելի տներ։

Իր վրա վերցնելով բնակարանային շինարարության հսկայական ծախսերը, պետությունը միաժամանակ հոգում է բնակարանային ֆոնդի պահպանման մասին։ Միայն 1964—1965 թթ. նախատեսված է այդ ֆոնդերի պահպանմանը և կոմունալ տնտեսությանը տրամադրել 5,7 միլիարդ ռուբլի։

Բնակարանային վարձը դրանց պահպանման համար պահանջվող ծախսերի շատ չնչին մասն է կազմում։ Մեկ քառակուսի մետր բնակելի տարածության պահպանումը պետության վրա ամիսը նստում է 30—40 կոպեկ, իսկ աշխատավորությունը նրանց օգտագործման համար վճարում է 7—13 կոպեկ։ Այս տեսակետից անմխիթարական է կապիտալիստական երկրների աշխատավորների վիճակը. բնակարանի համար նրանք ստիպված են վճարել ընտանիքի ամբողջ եկամուտների 25—30 տոկոսը։

ՍՄԿԿ ծրագրով նախատեսված է հետագայում աշխատավորությանն աստիճանաբար ազատել բնակարանային վարձից։

Սպառման հասարակական ֆոնդերի աճման արագ տեմպերը, ազգային եկամուտում նրա չափերի մեծացումը փայլուն ապացույց են այն բանի, որ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում լայնորեն ծավալվում է բնակչության բարեկեցության բարձրացմանը հատուկ՝ կոմունիստական ուղին, երբ նյութական ու կուլտուրական բարիքների զգալի մասը հասարակության անդամների միջև բաշխվում է անվճար։





# ԷԿԶԻՍՏԵՆՑԻԱԼԻԶՄԸ ԻՆԴԻՎԻԴՈՒԱԼԻԶՄԻ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆՆ Է

Ռ. ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ

Դասակարգային հասարակության գոյության սկզբից ևեթ ամեն տեսակի բարոյագիտական տեսություններն ու հայացքները միշտ էլ արտացոլել են մի որոշ դասակարգի շահեր։ Բարու և չարի, կամ մարդկային կյանքի նպատակի վերաբերյալ ուսմունքները պատմական յուրաքանչյուր էտապում նոր ձևեր են ընդունել, բայց դրանց բովանդակությունը մշտապես կախված է եղել այն բանից, թե սեփականության ինչպիսի տիպ է հաստատվել տվյալ հասարակության մեջ։ Ընդսմին որքան ավելի ու ավելի անհուսալի է դառնում տիրապետող դասակարգի ապագան, այնքան ավելի խորամանկ ու փարիսեցիաբար են հնչում նրա բարոյագիտական դոգմաները։ Այդ տեսակետից բացառություն չի կազմում էկզիստենցիալիզմի փիլիսոփայությունը, որն այնքան մոդայական է արևմուտքում։

## ՄՈՎՍԵՍԸ ԵՎ ՆՈՐ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՌԱՔՅԱԼՆԵՐԸ

Արդյոք գոյություն ունե՞ն վարքագծի նորմեր և ինչպիսի՞ն պետք է լինի բարոյական կյանքը։ Ավանդությունն ասում է, որ Մովսեսը ստանում է երկու քարե տախտակ, որոնց վրա Յահվեն գրել էր յուրաքանչյուր մահկանացուի համար պարտադիր սկզբունքներ՝ չսպանել, չկողոպտել, չշահամոլել։ Այսպես է ասված աստվածաշնչում։ Ի փառս աստծո կառուցվում էին տաճարներ, որտեղ դարեդար քարոզվում էին այս պատվիրանները, մինչդեռ վանքերի պատերից դուրս թե՛ կողոպտում էին, թե՛ սպանում և թե՛ յուրացնում ուրիշի աշխատանքը։ Այն ժամանակ, երբ թույլերը պաղատանքով իրենց հայացքը հառում էին երկնքին՝ պաշտպանություն հայցելով ամենաողորմած աստծուց, ուժեղները երկրի վրա հաստատում էին ջունգլիների օրենքները, որոնք արդարացնում էին միայն սեփականատերերի բարոյականությունը։ Մասնատիրական հարաբերություններին միշտ էլ ուղեկցել է այդ ինդիվիդուալիստական բարոյականությունը, որն առանձնապես այլանդակ ձևեր է ընդունել կապիտալիզմի պայմաններում։ Բնութագրելով բուրժուական Անգլիան, որն ամենից ավելի զարգացած կապիտալիստական երկիրն էր և որտեղ այդ օրենքները դրսևորվում էին առանձնապես ցայտուն կերպով, Էնգելսը գրել է. «Դարվինը

չէր կասկածում անգամ, թե ինքը ինչպիսի դառը երգիծանք է գրել մարդկանց և հատկապես իր հայրենակիցների վրա, երբ նա ապացուցեց, որ ազատ մրցակցությունը, գոյության պայքարը... կենդանական աշխարհի նորմալ վիճակն է» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հ. 20, էջ 359, ռուս.)։

Որքան էլ, որ ինդիվիդուալիզմի փիլիսոփայությունը համապատասխանեք այդպիսի հասարակարգի բնույթին, այնուամենայնիվ այն քիչ սքողված, նույնիսկ ցինիկ ձևով խոսում է սեփականատիրոջ շահերի պաշտպանության, մարդկային հասարակության մեջ տիրող գայլային օրենքների մասին։ Այնպիսի բարոյագիտական տեսությունները, ինչպիսիք են՝ ուտիլիտարիզմը և պրագմատիզմը, չէին կարող առանձնապես հրապուրիչ լինել լայն մասսաների համար, մանավանդ որ սոցիալիստական հասարակարգի պռաջացումը հաստատեց շահագործումից ազատ մարդկանց փոխօգնության ու եղբայրության սկզբունքները, և այդ հանգամանքը խարխլում էր բուրժուական աշխարհի բարոյական արժեքների անսասանությունը։ Առաջին համաշխարհային պատերազմը և մեր երկրում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը առաջացրին կապիտալիզմի քաղաքական ու բարոյական ճգնաժամ, որը բուրժուական գիտակցության մեջ հավասարազոր էր կատաստրոֆայի։ Գերմանացի էկզիստենցիալիստ Կ. Յասպերսը խոստովանում էր. «Տարուբերվեց պատմական հողը։ Այն ամենը, ինչը երկար ժամանակ հաստատված էր թվում մեզ, հարվածի տակ դրվեց... մեր սերունդներն իրենց զգացին կատաստրոֆիկ իրադարձությունների հորձանուտում։ 1914 թվականից սկսած դա չի դադարում և գնալով ավելի ու ավելի արագ տեմպով է ընթանում» (K. Jaspers. «Philosophen des 20. Jahrhundert». Stuttgarts, 1957, d. 43)։ Հուսախաբության, հուսահատության և ապագայի նկատմամբ հավատի բացակայության այդ մթնոլորտը բարեբար հող հանդիսացավ էկզիստենցիալիզմի փիլիսոփայության առաջացման համար։

Բուրժուական աշխարհը բարոյականության նոր առաքյալների կարիք էր զգում, և նրանք պետք է գային, որպեսզի վերակառուցեին եղած բարոյագիտական տեսությունը։ Ինդիվիդուալիզմի փիլիսոփայությունը իր ծագման պահից սկսած միշտ էլ հանդես է եկել ամենատարբեր զգեստներով, ամեն անգամ նոր ձևով հրամցնելով անձնական ազատության գաղափարը։

1927 թվականին գերմանացի գավառական պրոֆեսոր Մ. Հայդեգերը հրատարակեց «Կեցությունը և ժամանակը» գիրքը, որին վիճակված էր դառնալ էկզիստենցիալիզմի առաջին հայտնությունը։

Ի՞նչ էր ուզում ապացուցել իր գրքում Հայդեգերը։ Այն, որ մարդկային կեցությունն առեղծվածային է, որ կեցության իմաստը միայն այն դեպքում կարող է փիլիսոփայությունը հասկանալ, երբ նա ելնի ամենից առաջ մարդուց, նրա «էկզիստենցիայի» (լատիներեն՝ «գոյություն ունենալու») փաստից։ Մինչև այդ եղած փիլիսոփայական և ոչ մի սիստեմ չէր ցանկանում մոտենալ գոյության գաղափարին, քանի որ մարդը դիտվում էր որպես մի էություն՝ բաղկացած մարմնական, հոգևոր և հոգեկան տարրերից, սկզբունքներից, այսինքն՝ որպես «բանական կենդանի», մինչդեռ պահանջվում էր հասկանալ մարդուն որպես գոյություն։

Սակայն կարևոր է նշել, որ էկզիստենցիալիզմը և Հայդեգերը շատ բան են վերցրել ծայրահեղ ռեակցիոն, միստիկական, իդեալիստական փիլիսոփայության զինանոցից։ Բուն իսկ «էկզիստենցիա» հասկացությունը վերցված



է Ս. Քիերկեգորի (վախճ. 1853 թ.) գրվածքներից։ Նա դանիացի իդեալիստ փիլիսոփա էր. ի հակակշիռ բացարձակ իդեայի հեգելյան ուսմունքի, նա փորձում էր ստեղծել մի այնպիսի սպեկուլյատիվ տեսություն, որը պաշտպան կանգնի առանձին տառապող անհատին, քանի որ Հեգելի մոտ բացարձակ իդեան բացառում էր առանձին անհատի դերն ու նշանակությունը։ Քիերկեգորի այդ միստիկական ուսմունքը, որը գրեթե աննկատելի էր մնացել իր ժամանակակիցների համար, վերածնվեց Մ. Հայդեգերի և նրա հետևորդների շնորհիվ։

Ուշագրավ է այն հանգամանքը, որ նույնիսկ իրենք՝ բուրժուական հետազոտողները, էկզիստենցիալիզմի «նախորդների» թվին են դասում XIX դարի ամենահոռետես մտածողներին՝ Շոպենհաուերին, Նիցշեին, Բերգսոնին։ Ուստի և կեցությունը Հայդեգերի համար, ինչպես գրում է արևմտագերմանացի մի հեղինակ, նշանակում է ընկած լինել ժամանակի հորձանուտի մեջ, որից մարդ ոչինչ չի կարող ակնկալել, բացի կործանումից։ Արևմտյան հասարակության կյանքի մեծ թեմաներից մեկը XX դարում դառնում է ոչ թե վախի հաղթահարումը, այլ հենց ինքը՝ վախը (տե՛ս А. Хюбшер «Мыслители нашего времени», 1962, էջ 43—44)։

Էկզիստենցիալիզմը առանձնապես տարածվեց երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։ Դրա պատճառը կապիտալիզմի ավելի խոր ճգնաժամն է։ Հայտնի է, որ կապիտալիզմի թե՛ աշխարհագրական և թե՛ տնտեսական սահմանները նեղացել են աշխարհի սոցիալիստական և դեմոկրատական ուժերի հաղթանակի հետևանքով։ Բուրժուական հասարակության մտածողները հրապուրվեցին էկզիստենցիալիստների գաղափարներով, որոնք տարածվեցին Եվրոպայի, Ամերիկայի և Ասիայի տարբեր երկրներում։ Նրանց գրավում էր այն, որ այդ ուսմունքի մեջ արտակարգ սրությամբ դրվում էր մարդու պրոբլեմը, ցույց էր տրվում նրա դատապարտված լինելը այն գոտեմարտում, որ նա մղում է շահագործման և անհատի արժեքազրկման աշխարհի տարերային ուժերի դեմ։ Գոյության պրոբլեմը դարձնելով իր սիստեմի կենտրոնակետ, էկզիստենցիալիզմը ցանկություն է հայտնում օգնել մարդուն՝ որոշելու իր ինդիվիդուալ գոյությունը, ընդ որում նա մարդուն դիտում է ոչ որպես կեցության ձևերից մեկը, այլ որպես բացարիկ կեցություն։ Չէ՞ որ գոյությունը, ասում են էկզիստենցիալիստները, այդ այն է, ինչի վրա հենված է մարդը, ինչը շարժում և պայմանավորում է նրան, կազմում է կեցության հիմքը, մտքերի ու գործողությունների աղբյուրը։

Սակայն այդ փիլիսոփայության հումանիստական երանգը չէր կարող նրա գաղափարախոսներին զերծ պահել այն ամենից, ինչ հատուկ է մեր օրերի բոլոր հակագիտական, հակամարքսիստական հոսանքներին։ Պաշտպանելով բնության և հասարակության անճանաչելիության գաղափարը, միստիկական բնույթ վերագրելով մարդու կեցությանն ու նրա գիտակցությանը, անհատի պրոբլեմը դիտելով սուբյեկտիվ իդեալիստական դիրքերից, էկզիստենցիալիստները չկարողացան տալ գոյության հասկացության քիչ թե շատ համոզիչ սահմանումը։

Անհատը էկզիստենցիալիստներին հետաքրքրում է ոչ թե որպես սոցիոլոգիական, այլ որպես անտրոպոլոգիական պրոբլեմ։ Դրա հետևանքով էլ անհատը դիտվում է հասարակությունից, այն ռեալ միջավայրից կտրված, որտեղ նա ձևավորվում է և դրսևորում իր էությունը։ Կարևոր է նաև այն հան-

գամանքը, որ էկզիստենցիալիզմի փիլիսոփայությունը, անկախ իր ուղղությունից՝ աստվածաբանական է այն (Կ. Յասպերս, Գ. Մարսել, Ա. Քամյու և ուրիշներ), թե աթեիստական (Ժ. Պ. Սարտր, Մ. Հայդեգեր և ուրիշներ), օբյեկտիվորեն ծառայում է ռեակցիայի ուժերին։ Տարբերություն չդնելով սոցիալական դասակարգերի և հասարակությունների տիպերի միջև, էկզիստենցիալիստներն ամեն կերպ ճգնում են հիմնավորել ինդիվիդուալիզմի բարոյականությունը, Մովսես առաքյալից տարբերվելով միայն նրանով, որ հակամետ են գիտական տեսք տալու իրենց դատողություններին։

Հետաքրքրական է, որ երկրորդ համաշխարհային պատերազմից անմիջապես հետո Մ. Հայդեգերը հանդես եկավ «Նամակներ հումանիզմի մասին» աշխատությամբ, որտեղ նա խորհուրդ էր տալիս հրաժարվել «հումանիզմ» տերմինից, քանի որ հումանիզմի բոլոր տեսակներն էլ՝ անտիկ, քրիստոնեական և մարքսիստական, նրա կարծիքով մետաֆիզիկական բնույթ ունեն։ Նա ասում է, որ ավելի հումանիստական կլինի, եթե մենք հետևենք «Մարդը կեցության առանցքն է» թեզիսին։ Բայց ի՞նչ կարող է տալ մարդու այդպիսի «առանցքային» նշանակությունը։

## ԱՆՀԱՏԻ ԷԿԶԻՍՏԵՆՑԻԱԼ ԷՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՄ ՄԻԱՅՆԱԿՈՒԹՅԱՆ ՔԱՐՈԶԸ

Այժմ մոդայական է դարձել էկզիստենցիալիզմը մարքսիզմին հակադրելը, էկզիստենցիալիզմը մեր օրերի միակ հումանիստական հոսանք անվանելը։ Օրինակ, ֆրանսիացի էկզիստենցիալիստ Գ. Ռեյը գրում է, որ մարքսիզմը, որպես թե ի վիճակի չէ որևէ բան տալ մարդուն որպես անհատի, քանի որ «մարդը մարքսիստական գերհումանիզմի համար տիեզերքի լոկ մի ֆրագմենտ է» (Cabriel Rey. «Humanism et surhumanisme», Paris, 1957 p. 255)։

Ելնելով գոյությունից, որպես իրենց փիլիսոփայաբանությունների մեկնակետից, էկզիստենցիալիստները կեցությունը բաժանում են «իսկականի» և «ոչ իսկականի»։ Առաջինը հենց անհատն է, վերցված որպես էգոցենտրիստական «Ես», անջատված իր սոցիալական միջավայրից, իսկ երկրորդը ռեալ հասարակական կյանքն է, որի մեջ գտնվելով, անհատը տարրալուծում է իր անհատականությունը, կորցնում իր ազատությունը։ Էկզիստենցիան բացահայտվում է որպես այնպիսի մարդկային ապրումների գումար, ինչպիսիք են դատապարտվածության, լքվածության, մեղքի և, որ գլխավորն է՝ վախի զգացումները։ Էկզիստենցիան հանդես է գալիս կյանքի հանդեպ ունեցած վախի մեջ, և Կ. Յասպերսը նույնիսկ ասում է, որ վախը ժամանակակից մարդու ամբողջ կյանքի չարագուշակ ուղեկիցն է։

Հակադրվելով գիտական, մարքսիստական աշխարհըմբռնմանը, որը հասարակությունն է հիմնական և որոշիչ համարում անհատի պրոբլեմը վերլուծելիս, էկզիստենցիալիստները խեղաթյուրում են հասարակության մեջ եղած փոխհարաբերությունների իրական պրոցեսը և, փաստորեն, զարգացնում միայնակի վերաբերյալ ուսմունք, միայնակ, որը ժամանակակից բուրժուայի տեսակետից անընդհատ վախ և անվստահություն է զգում իր ճակատագրի համար։ Բնորոշ է, որ այդ հատկանիշները վերագրվում են ընդհանրապես մարդուն, որպես ի սկզբանե նրա բնությանը հատուկ գծեր։ Մարդուն շրջա-



պատող ամբողջ աշխարհը դիտվում է որպես գոյության համար խորթ և թշնամական միջավայր, ուստի և մարդը մշտապես և ամենուրեք համակված է վախով, դեռ ավելին, մարդը ապրում է մահվան մշտական սպասման պայմաններում, ինչը որ, Մ. Հայդեգերի խոսքերով, «գոյության ամենից ավելի յուրահատուկ հնարավորությունն է» (M. Heidegger, «Sein und Zeit». Halle, 1931, s. 263).

Իրերի նկատմամբ այսպիսի վերաբերմունք ունենալու դեպքում զարմանալի չէ, որ նրանք ամբողջ հասարակությունը պատկերացնում են որպես անհատների մի պատահական, քաոսային կուտակում։ «Եզակին» աբստրակտ մարդն է, որը գտնվում է պատմական պայմաններից դուրս, միստիկական է իր էությամբ և երազում է իր փրկության մասին, ինչը որ օգնում է դրսևորելու իր էկզիստենցիան, այսինքն՝ ի հայտ բերելու իր մարդկային անհատականությունը։ Էկզիստենցիալիստներն ասում են, որ այդ, հիրավի, շատ դժվարին խնդիր է, բայց և այնպես այդպիսի դրսևորման ձգտումը, իր եզակիության ու անկրկնելիության հաստատումը պետք է լինի բոլոր արարքների գլխավոր նպատակը։ Իսկական կեցության ձգտումը կանգ չպետք է առնի նույնիսկ մահվան առաջ։

Դժվար չէ տեսնել, որ էկզիստենցիալիզմի այս դրույթները, փաստորեն, արտացոլում են անհատի օտարվածությունը արդի կապիտալիստական հասարակության մեջ։ Բայց անհատին օտարող օբյեկտիվ պայմանները, այսինքն՝ կապիտալիզմի անտագոնիստական հակասությունները ուսումնասիրելու փոխարեն էկզիստենցիալիստները երեսները շուռ են տալիս հասարակությունից, նյութական աշխարհից և քրիստոնյա աստվածաբանների նման իսկական կեցություն են հռչակում «կեցությունը մահվան հանդեպ»։

Ի դեպ, օտարման ուսումնասիրությունը էկզիստենցիալիստների ծառայությունը չպետք է համարել։ Պատմական ճշմարտությունն այն է, որ դա Մարքսի երախտիքն է։ Իր վաղ շրջանի աշխատություններում նա ցույց տվեց, որ կապիտալիզմի պայմաններում մարդը օտարվում է հասարակությունից ու հակադրվում նրան։ Այդ պայմանավորված է նրանով, որ աշխատանքը, որպես մարդու կենսագործունեության հիմք ու էություն, իր բնույթով դառնում է օտարված աշխատանք։ Այդ «մարդու օտարված աշխատանքը, նրանից օտարելով 1) բնությունը, 2) նրան իրեն, նրա սեփական գործունյա ֆունկցիան, նրա կենսագործունեությունը, դրանով իսկ մարդուց օտարում է սեռը (հասարակությունը — Ռ. Ն.). նա սեռային կյանքը մարդու համար դարձնում է անհատական կյանքը պահպանելու միջոց... անհատական կյանքը, իր աբստրակտ ձևով վերցրած, դարձնում է սեռային կյանքի նպատակ՝ նույնպես նրա աբստրակտ ու օտարված ձևով» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Из ранних произведении, 1956, էջ 565)։ Այդ ձևով բացահայտելով այն պատճառները, որոնք անհատին հակադրում են հասարակությանը, Մարքսը չսահմանափակվեց դրանով, նա ցույց տվեց նաև այդ վիճակից դուրս գալու ելքը, այն է՝ «մասնավոր սեփականության դրական ժխտումը», այսինքն՝ հասարակության ռևոլյուցիոն վերակառուցումը։ Օտարման վերլուծությունից տրամաբանորեն բխող այսպիսի հետևություն չի կարելի գտնել էկզիստենցիալիստ «հումանիստների» գրվածքներում։

Էկզիստենցիալիստներն իրենց փիլիսոփայության հիմնական նպատակն

են համարում այնպիսի բարոյական նորմերի քարոզը, որոնք արտահայտում են առանձին մարդու անսահման ազատության պահանջ։

Պետք է ասել, որ էկզիստենցիալիզմը մերժում է բարոյականության բուր- ժուական տեսությունները, դրանք համարում կեղծավոր, բայց, ըստ էության, ինքն էլ արտահայտում է բուրժուական բարոյականությամբ տոգորված մի այնպիսի միայնակի բողոք, որը հուսահատ վիճակում պատրաստ է դեն նետել առհասարակ բոլոր բարոյական նորմերը։ Նրա համար չկան մարդու արարք- ների մեջ բարին ու չարը տարբերելու նախապես տրված օբյեկտիվ չափանիշ- ներ, և նա ամեն անգամ հարկադրված է լինում ընտրություն կատարել այս կամ այն քայլի մեջ, ամեն անգամ դառնալով իր նորմերի օրենսդիրը։ Ժ. Պ. Սարտրը ուղղակի մատնանշում է, որ մարդու համար «չկա մի ուրիշ օրենսդիր, քան հենց ինքը, և որ նա հարկադրված է լիովին մենակ որոշել իր ճակատա- գիրը» (Ж. П. Сартр, Экзистенциализм—это гуманизм, М., 1953, էջ 23)։

Ժխտելով հասարակության, դասակարգի կամ կոլեկտիվի համար պար- տադիր բարոյական նորմերը, դրանով իսկ էկզիստենցիալիստները փաստորեն ժխտում են հասարակական զարգացման օրինաչափությունները, անհատի բարոյական արարքների մեջ չեն ցանկանում տեսնել ոչ մի այլ հիմք, բացի իր՝ բուն անհատի սուբյեկտիվ որոշումից։ Ժ. Պ. Սարտրը այդ բանը համեմա- տում է գեղարվեստական ստեղծագործության ակտի հետ։ Գեղագետը իր երկը ստեղծելիս, ինչպես և ամեն մի անհատ, ընդունում է որոշում, չառաջնորդ- վելով ոչ մի ընդհանուր գաղափարով կամ սկզբունքով. «Երկու դեպքում էլ մենք մեր առջև ունենք ստեղծագործություն և գյուտ» (նույն տեղը, էջ 24)։ Այլ կերպ ասած, մարդը պետք է առաջնորդվի այն ազատ կամքի գիտակցու- թյամբ, որը քամահրում է հասարակության շահերը և կամայականորեն է որոշում բարին ու չարը։ Եվ մարդը, ասում են էկզիստենցիալիստները, միայն այդ ճանապարհով է հասնում իր էությանը, որովհետև գոյությունը ակտիվ ընտրություն է։ Կ. Յասպերսը տվել է նույնիսկ այսպիսի մի բանաձև. «Քանի ես ընտրում եմ, ես գոյություն ունեմ, եթե ես չեմ ընտրում, ես գոյություն չունեմ»։

Այստեղ նոր ֆրազներով սքողվում է բուրժուական բարոյականության հնացած տեսություններից վերցված կեղծիքը։ Մարքսիզմը վաղուց է մերկաց- րել այդ խոսքերի կեղծիքը, ցույց տալով այն բոլոր ուսմունքների սնանկու- թյունը, որոնք մարդուն դիտում են որպես աբստրակտ էակ։ Մարդն իր էու- թյամբ հասարակական բոլոր հարաբերությունների ամբողջություն է։ Ինչպես որ չի կարելի մարդուն դիտել հասարակությունից անջատ, այնպես էլ մարդու արարքները, նրա ընտրության դրդապատճառները չի կարելի բացատրել նրա անձնավորության, նրա բարոյական գիտակցության ձևավորման, կոնկրետ պատմական պայմաններից անջատ։

## ՎԱԽԸ ՈՐՊԵՍ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԴՐՍԵՎՈՐՈՒՄ

Դեռևս 1895 թվականին Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ այն փիլիսո- փան, որը քննում է «առհասարակ անհատը», ուսումնասիրում է ոչ թե ռեալ անհատի իրական զգացմունքներն ու մտահղացումները, այլ միայն այն հատ- կանիշները, որ ինքն է վերագրել մարդուն, դրանք առավել ռացիոնալ համա- րելով նրա համար։



Երբ մարքսիզմը խոսում է ազատության մասին, նա նկատի ունի իրակա- նության, այսինքն անհրաժեշտության օբյեկտիվ օրենքների ճանաչումը և պրակտիկ գործադրումը հասարակության օգտին, որ ենթադրում է նաև բա- նական որոշման ընդունում։ Այդ իմաստով էլ Էնգելսը նշում էր, որ կամքի ազատությունն ըստ էության գործիմացությամբ որոշում ընդունելու ունակու- թյունն է։ Ազատությունը պահանջմունքները բավարարելու հնարավորու- թյունն է, դա այն վիճակն է, երբ մարդ հասնում է իր նպատակներին։ Իսկ էկզիստենցիալիստների համար ազատությունը որոշումների կամայական ընտրությունն է։ Նրանք ազատությունը սահմանափակում են գործնականում ոչ մի քայլ չձեռնարկող մարդու գիտակցության շրջանակներով։ Էկզիստեն- ցիալիստները չեն էլ թաքցնում այդ։ «Առանձին մարդու ազատություն ասելով,— գրում է Յասպերսը,— մենք հասկանում ենք բուն մտածողությունը և սեփական հայեցողությամբ կատարած գործողությունը, դրանով իսկ իր սե- փական գոյության շրջանակներում կենցաղավարելը» (K. Jaspers. Ibid., s, 293)։

Դժվար չէ տեսնել, որ այս դրույթների իսկական իմաստը տվյալ դեպքում կապիտալիզմի հետ հաշտվելն է։ Զուր չէ, որ Ժ. Պ. Սարտրը ազատությունը բնորոշում է ոչ որպես նվաճում, այլ որպես այնպիսի ծանր մի բեռ, որ պետք է կրի յուրաքանչյուրը։ Սա բարոյականության տեսակետից նշանակում է նաև, որ հասարակության վրայից վերցվում է մարդու օտարման ամեն մի պատասխանատվություն և ամբողջ մեղքը դրվում է մարդու ուսերի վրա։

Այդ փիլիսոփայության մեջ դժվար է գտնել պարտքի պրոբլեմի ռեալիս- տական լուծում։ Եթե ժխտվում է մարդու արարքների արտաքին, սոցիալական պայմանավորվածությունը, ապա ուրեմն պարտքը կարելի է դիտել որպես մի պարտականություն ո՛չ թե ուրիշների, ո՛չ թե կոլեկտիվի, այլ հենց իր հան- դեպ։ Պարտքի այդպիսի ըմբռնումն ամբողջապես ինդիվիդուալիստական է և իրենից ներկայացնում է Հայդեգերի տխրահռչակ «լքվածության» վիճակից «վերադարձ դեպի ինքը»։ Դուրս է գալիս, որ գլխավորը էգոցենտրիստական «Ես»-ի ցանկությունն է, իսկ այդ «Ես»-ին չի կարելի դնել այնպիսի վիճակի մեջ, որ նա կախված լինի կոլեկտիվի շահերից, որովհետև դա կարող է սահ- մանափակել նրա ընտրության ազատությունը։ Սարտրի «Միայն ճշմարտու- թյուն» պիեսի հերոսը հետևյալ կերպ է արդարացնում այդ դրույթը. «Կյանքը մի հրդեհ է, որ բռնկվել է թատրոնում։ Բոլորն էլ ելք են որոնում և ոչ ոք չի կարողանում գտնել այն։ Բոլորն էլ ոտնատակ են անում իրար...»։ Մասսայի մեջ չի կարող լինել համերաշխություն կամ փոխօգնություն և հենց դա էլ որո- շում է յուրաքանչյուրի բարոյական դեմքը։ Հասարակության մեջ, որը Հայդե- գերը «ոչ իսկական կեցություն» է անվանում, կյանքը հանդիսանում է մի «լարված, խորհրդավոր վիճակ, երբ մեկը հսկում է մյուսին, հետևում նրան... «Մեկը մյուսի համար» դիմակի տակ քողարկված է «մեկը մյուսի դեմ»-ը» (M. Heidegger. Ibid., s, 174)։

Էկզիստենցիալիստների մոտ խոսք անգամ չկա պատասխանատվության մասին, բացառությամբ այն պատասխանատվության, որ յուրաքանչյուրը պետք է ունենա իր սեփական խղճի հանդեպ. ինքը մարդն է իր արարքների դատավորը։ Բայց դա փաստորեն նշանակում է, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, վերականգնել «կամքի ազատության անմիտ հեքիաթը» հանուն անհա- տի այն կարծեցյալ ազատության, որն անտեսում է յուրաքանչյուր անհատի

արարքները պայմանավորող պատճառների օբյեկտիվ բնույթը: Սակայն
մարքսիզմը ապացուցել է, որ որքան էլ հակահումանիստական համարվի դրան
հակադիր թեզիսը, այնուամենայնիվ «դետերմինիզմի իդեան՝ մարդկային ա-
րարքների անհրաժեշտություն սահմանելով, ... ամենևին չի ոչնչացնում մար-
դու ո՛չ բանականությունը, ո՛չ խիղճը, ո՛չ էլ նրա գործողությունների գնա-
հատությունը (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 1, էջ 187):
էկզիստենցիալիզմի բարոյագիտության իռացիոնալիզմի մասին է խոսում
նաև այն փաստը, որ նա ընտրությունը կապում է ոչ թե բանականության, այլ
անհատի տրամադրության հետ: Տրամադրությունը, ասում են էկզիստենցիա-
լիստները, մարդու առջև ավելի խորն է բացահայտում նրան շրջապատող աշ-
խարհը, այն իրադրությունը, որի մեջ նա գտնվում է:
Մեր ընթերցողի համար տարօրինակ կլինի լսել, որ էկզիստենցիալիստ-
ները որպես հիմնական տրամադրություններ և զգացմունքներ հիշատակում
են մեղքը, դատապարտվածությունը, տագնապը, անհուսությունը: Նրանք այդ
բոլորի մեջ գլխավորը համարում են վախը, որը, որպես թե, տոգորում է ան-
հատի ամբողջ գոյությունը, տիրապետում է ամենուրեք, անկախ այն բանից,
թե կյանքն ինչպիսի հասարակության կամ պետության մեջ է ընթանում: Միշտ
էլ հենվելով իր վրա և անորոշ ընտրություն կատարելով, մարդը չի խուսա-
փում իր ընտրության կամ արարքի անակնկալ հետևանքներից: Վախը պետք
է համարել ազատ ընտրության հետևանք: էկզիստենցիալիստներն ասում են,
որ որքան անհրաժեշտ է ընտրությունը, նույնքան անհրաժեշտ է նաև վախը:
Միստիֆիկացիայի ենթարկելով իրենց բարոյագիտության նաև մյուս
կատեգորիաները՝ մեղքը, հուսահատությունը, անհուսությունը և այլն, այդ տե-
սաբանները ցույց չեն տալիս, թե ինչ ձևով կարելի է ազատվել դրանցից,
թեպետև մարքսիզմն արդեն պրակտիկայում ապացուցել է, որ տառապանք-
ները, հուսահատությունը և ապագայի հանդեպ ունեցած վախը, որ տիրապե-
տում են բռնության ու սովի աշխարհում, կարելի է հաղթահարել միայն այն
պայքարի միջոցով, որը մղվում է մարդու կողմից մարդու շահագործումը վե-
րացնելու համար: Բայց էկզիստենցիալիստները չեն ցանկանում ընդունել
այդ, և եթե ուզենանք գտնել նրանց բարոյագիտության սոցիալական հիմքե-
րը, ապա ամենից առաջ պետք է քննենք այն բուրժուական ինդիվիդուալիստի
զգացմունքներն ու մտահղացումները, որին Մ. Հայդեգերը խորհուրդ է տա-
լիս «չարձագանքել խղճի կանչին»: Խիղճը պետք է լռի, խրատում է Հայդե-
գերը, որովհետև նա ճնշված է վախի ներքո: Բուն իսկ վախի փաստը հաստա-
տում է, որ «գոյությունը... դրված է իր սեփական անպատասխանության հան-
դեպ», որից կարելի է փրկվել միայն մենակության մեջ: «Միայն վախի մեջ
կա գերազանց բացահայտման հնարավորություն, քանի որ նա առանձնաց-
նում է մարդկանց» (M. Heidegger. Ibid., ss. 186, 190): Այսպիսով ստաց-
վում է, որ միայն վախի շնորհիվ է յուրաքանչյուր անհատ հնարավորություն
ստանում դրսևորելու իր անհատականությունը, այսինքն՝ ընտրության իր ու-
նակությունը և դրանով իսկ իրականացնելու այն «կարևոր ակտը», առանց
որի ազատությունը չի կարող դրսևորել իրեն: Խոր պեսիմիզմը, որով ներթա-
փանցված է այս մոդայական «հումանիզմը», չի սահմանափակվում դրա-
նով: Հասարակական նորմերից ու կապերից հրաժարվելը, մենակության ու
վախի քարոզը կղերական էկզիստենցիալիզմի ներկայացուցիչների մոտ հաս-
նում են այնտեղ, որ նրանք քարոզում են հրաժարումն կյանքից, կյանքի



նպատակ են հռչակում հենց մահը, որի մեջ յուրաքանչյուրը որպես թե արտա-
հայտում է իր ամբողջականությունը, վերադառնում է իր «Ես»-ին:
Այս փիլիսոփայությունը, որը հնչում է որպես հանգուցյալի վրա կարդաց-
վող աղոթք, բխում է «Կեցությունը և ժամանակը» գրքից, որը մեր ժամանա-
կակիցներին հրամցվում է որպես հումանիստական մտքի վերջին խոսք: Նա
իր առավել հրեշային ձևերն ընդունեց «սառը պատերազմի» ամենաթեժ ժա-
մանակաշրջանում, երբ Կ. Յասպերսը հանդես եկավ «Ատոմային ռումբը և
մարդկության ապագան» գրքով: Այդտեղ ամենանողկալի ու մարդատյաց
դրույթներ զարգացնելով՝ նա ճգնում էր ապացուցել ՍՍՌՄ-ի դեմ մղվելիք
պատերազմում միջուկային զենքի օգտագործման անհրաժեշտությունը հանուն
էկզիստենցիալ ազատության:

## ԱՐԴՅՈՔ ՄԱՐՔՍԻԶՄԸ ԷԿԶԻՍՏԵՆՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԼՐԱՑՄԱՆ ԿԱՐԻՔՆ ԶԳՈ՞ՒՄ Է

Արդի պայմաններում էկզիստենցիալիստներն ավելի ու ավելի հաճախ են
դնում մարքսիզմը էկզիստենցիալիզմով լրացնելու հարցը: Դա նպատակ ունի
ապացուցել, թե մարքս-լենինյան փիլիսոփայությունը չունի հումանիստական
բովանդակություն: Այդ տարօրինակ հարցադրումը առաջ են քաշում գլխավո-
րապես աթեիստական թևին պատկանող էկզիստենցիալիստները, ցանկանալով
ինչ-որ մարտահրավեր նետել մարքսիստ փիլիսոփաներին: Այստեղ անհրա-
ժեշտ է նշել մի շարք մոմենտներ:
Իհարկե, միանգամայն անհեթեթ է անհատի՝ որպես իսկական կեցության,
մեկուսացած գոյությունը: Այդ իսկ պատճառով էկզիստենցիալիստները ճըգ-
նում են ավելի ու ավելի մեծ ուշադրություն նվիրել հասարակության մեջ եղած
փոխհարաբերությունների պրոբլեմին, միջավայրի դերին: Օրինակ, Ժ. Պ.
Սարտրը դեն չի նետում սոցիալական միջավայրը միայն այն պատճառով,
որպեսզի ապացուցի, որ այդ միջավայրի բնույթը որոշվում է անհատի կող-
մից, անհատի դրած նպատակով: Իսկ Կ. Յասպերսը նույնիսկ առաջ է քաշել
«կոմունիկացիաների» տեսությունը, որն այժմ ընդունել են շատ էկզիստեն-
ցիալիստներ: Այդ տեսության նպատակն է ապացուցել, որ էկզիստենցիան
ներփակված չէ իր մեջ և ներքուստ կապված է այլ էկզիստենցիաների, այ-
սինքն՝ անհատների հետ: Բայց քանի որ անհատը որպես էկզիստենցիա հո-
գևոր ամբողջություն է, ապա, ուրեմն, կոմունիկատիվ կապերը լոկ հոգևոր
կապեր են, որպիսիք կարելի է ապրել ու զգալ միայն այն դեպքում, երբ ան-
հատն ընկնում է «սահմանամերձ իրադրության», այսինքն՝ այնպիսի պայ-
մանների մեջ, երբ նա, դրսևորելով իր էությունը, կոնֆլիկտի մեջ է մտնում
մյուս անհատների հետ: Այսպիսով, սահմանելով մի անհատի հարաբերությու-
նը «մյուսի» նկատմամբ, բայց չբացահայտելով հասարակական փոխհարա-
բերությունները, էկզիստենցիալիստներն ըստ էության չեն հրաժարվում ին-
դիվիդուալիզմից, մանավանդ որ նրանց տեսակետով անհատը, հասնելով իր
«իսկական գոյությանը», պետք է ավելի ու ավելի միայնակ դառնա: Կարելի
է ասել, որ կոլեկտիվից մեկուսացած այդ էկզիստենցիալ անհատը վերջին
հաշվով հենց այն անհատն է, որին ամեն կերպ պաշտպանել է նաև բուրժուա-
կան հին, հենց էկզիստենցիալիստների մերժած տրադիցիոն բարոյագիտու-
թյունը:

Իրենց փիլիսոփայությունը կառուցելով բացառապես մարդու պրոբլեմի շուրջը, էկզիստենցիալիստները հավակնություն ունեն կոչվելու նոր «փիլիսոփայական անտրոպոլոգիա» ստեղծողներ։ Բայց մեր օրերում իդեալիստական անտրոպոլոգիան արդի բուրժուական գաղափարախոսության տեսական հիմնական փաստարկներից մեկն է։ Հայտնի է, որ բուրժուական գաղափարախոսությունը, ձգտելով սքողել անհատի և բուրժուական հասարակության միջև ստեղծված անդունդը, նպատակ ունի ժխտելու սոցիալական վերափոխությունների միջոցով անհատի վիճակը բարելավելու սկզբունքային հնարավորությունը։ Այդ անտրոպոլոգիական փիլիսոփայությունը, ինչպես մենք արդեն տեսանք, ջանում է հիմնավորել բարոյագիտական ռելյատիվիզմը, պնդելով, թե չկան բոլորի համար ընդհանուր բարոյական նորմերի չափանիշներ, յուրաքանչյուր ոք ինքն է ստեղծում իր սեփական բարոյականությունը։ Ինդիվիդուալիզմի այդ փիլիսոփայության յուրահատկությունն այն է, որ նա դիմակավորվում է հումանիզմի լոզունգներով, թեպետև այդ հումանիզմը իռացիոնալ ու հակագիտական բնույթ ունի։ Էկզիստենցիալիզմի օրինակով մենք տեսնում ենք, թե հետադիմական ուժերն ինչպես են ճգնում «ապացուցել» մարդու անկարողությունը տիրապետելու հասարակության օրենքներին, ընդ որում հասարակության հետ նրա ունեցած հակասությունները, սոցիալական միջավայրի հետ նրա ունեցած կոնֆլիկտները և նրա էության օտարումը հրամցըվում են ոչ թե որպես կապիտալիստական հարաբերությունների հետևանք, այլ որպես մարդկային գոյության ընդհանուր ողբերգության, անհատական մահի անխուսափելիության փաստի դրսևորում և այլն։ Էկզիստենցիալիստների մոտ անհատը սոցիալական պրոբլեմից վերածվում է անտրոպոլոգիական պրոբլեմի, ընդ որում այն հասարակական չարիքը, որն իր հետ բերում է կապիտալիզմը, համարվում է անհաղթահարելի և դեռ ավելին, հատկանշական հենց իրեն՝ մարդուն, նրա մարդկային էությանը։

Իրենց «փիլիսոփայական անտրոպոլոգիան» հիմնավորելու համար էկզիստենցիալիստները հարկադրված եղան (և դա առանձնապես նկատելի է հետպատերազմյան տարիներին) վերակառուցել՝ հումանիզմի «հին» պատմությունը։ Այդ «վերակառուցումը» աչքի է ընկնում ամենից առաջ մարքսիզմի հանդեպ ունեցած թշնամությամբ և պատմական փաստերի անպատկառ աղավաղումով։ Օրինակ, Յասպերսը գրում է. «Հումանիզմն ունի հարգանքի արժանի տրադիցիա։ Առանց նրա չէին կարող լինել Դանթեն... Քիերկեգորը և Նիցշեն։ Հոգևոր տեսակետից առանց նրա չէին կարող լինել անգամ նրա (հումանիզմի) այնպիսի սկզբունքային հակառակորդներ, ինչպես Կ. Մարքսը» (K. Jaspers. Ibid., s. 282)։ Ասենք Մարքսը միակը չէ, որ ներկայացված է ծուռ հայելու մեջ, ստահոդ գնահատականներ են տրվում գերմանական պատմության բազմաթիվ այլ գործիչներին, ինչպես, օրինակ, Լյութերին, Գյոթեին և այլոց։ Գերմանացի կոմունիստ փիլիսոփա Գ. Մենդեն անհրաժեշտ համարեց ընդգծել, որ «սովետական գրող Մարիետա Շահինյանը իր «Գյոթե» գրքով կարող էր Յասպերսին ցույց տալ, թե նա ինչպիսի մոլորության մեջ է Գյոթեի իր գնահատության հարցում, երբ ասում է, թե «Գյոթեն, թվում է, ավելի մոտ է Հոմերոսին, քան մեզ»։

Կեղծարարական ոտնձգություններ են կատարվում, հատկապես, Կ. Մարքսի վաղ շրջանի երկերի նկատմամբ, որոնցում տերմինաբանական տեսակետից արտացոլված է հին փիլիսոփայության ազդեցությունը, որը Կ. Մարքսը



վերջնականապես հաղթահարեց 1846 թվականին։ Այդ երկերում (առանձնապես «1844 թ. տնտեսագիտական-փիլիսոփայական ձեռագրերում») Մարքսը զարգացրել է օտարման այլ տեսություն, որը տարբերվում է Հեգելի ու Ֆոյերբախի ուսմունքից, որոնք օտարման պրոբլեմը դրել էին իրենց փիլիսոփայական սիստեմի կենտրոնում։ Դրա հիման վրա կարծեցյալ ազգակցություն սահմանելով իրենց և Մարքսի միջև, էկզիստենցիալիստները, ինչպես և ամեն երանգի ռևիզիոնիստներն ու ռեֆորմիստները, Մարքսի հասուն շրջանի որպես թե հումանիստական բովանդակություն չունեցող աշխատություններին հակադրում են նրա վաղ շրջանի երկերը։ Վերջին ժամանակներս «վաղ և ուշ շրջանի Մարքսի» այդ տեսությունը տարածում է գտել ամերիկյան բուրժուական իրականության մեջ։ Որոշ հեղինակներ մարքսիզմը զուգակցում են էկզիստենցիալիզմի հետ, Ֆոյերբախի ու Մարքսի «մոտիկության» հիման վրա, գտնելով, թե «նրանք երկուսն էլ կարող են համարվել սոցիալական էկզիստենցիալիզմի իսկական նախորդներ» (տե՛ս E. A. Tiryakian. «Sociologism and existentialism. V, 1962, թ, 164)։ Եվրոպայում Ժ. Պ. Սարտրը առաջ քաշեց իր այն թեզիսը, թե քանի որ արդի մարքսիզմը, մոռացության մատնելով Մարքսի վաղ շրջանի աշխատությունների հումանիզմը, չի քննում անհատի պրոբլեմը, ուրեմն մարքսիզմը կկարողանա վերադառնալ դեպի այդ հումանիզմը, միայն իր մեջ էկզիստենցիալիզմը ներառնելու միջոցով։ Սարտրը իր այդ գաղափարը վերջին անգամ հայտնեց իր «Դիալեկտիկական բանականության քննադատություն» գրքում, որի մասին Ռ. Գարոդին իր «Պատասխան Ժ. Պ. Սարտրին» գրվածքում (Մ., 1962, էջ 61), ասաց, որ ավելի ճիշտ կլիներ այն վերնագրել «Հակակոմունիզմի հիմունքների ուրվագիծ»։

Այդ հանդիմանությունը նետելով Սարտրին, ֆրանսիացի կոմունիստը միաժամանակ չի անտեսում նրա ծառայությունները արդի Ֆրանսիայի պրոգրեսիվ շարժման մեջ, խաղաղության և զինաթափման համար մղվող պայքարում նրա խաղացած ակտիվ դերը։

Էկզիստենցիալիստների առաջ քաշած փիլիսոփայական տեսությունն, իր էությամբ լինելով հակահումանիստական, արտահայտում է բուրժուական գիտակցության ճգնաժամը, իսկ այդ գիտակցությունը ներկայումս այնպիսի պատմական փակուղու մեջ է ընկել, որ չունի զարգացման ոչ մի հեռանկար։

## ԵԶՐԱՓԱԿՈՒՄ. ՀԻՆ ԱՌԱՍՊԵԼՆԵՐԸ ԵՎ ՄԵՐ ԻՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Իր վերջին աշխատություններից մեկում ֆրանսիացի էկզիստենցիալիստ Ա. Քամյուն (վախճ. 1959 թ.) անհրաժեշտ համարեց հիշել Սիզիֆին։ Այդ առասպելական կերպարը մարմնավորում է մի մեծագույն նահատակի։ Աստվածները պատժել էին նրան և հրամայել մի հսկայական քար բարձրացնել լեռը, բայց հենց որ Սիզիֆը կատարում էր այդ, քարը ցած էր գլորվում և Սիզիֆը նորից հարկադրված էր այն բարձրացնել սարն ի վեր։ Ա. Քամյուն Սիզիֆի այդ ապարդյուն ձգտումները, հավիտենական տանջանքների դատապարտված լինելը համարում է էկզիստենցիալ գոյության սիմվոլ, ընդսմին Սիզիֆի մեծությունը տեսնելով այն բանում, որ նա գիտակցել է իր գործի անհուսալիությունը։

Կ. Մարքսը հունական հարուստ դիցաբանության մեջ գերադասեց Պրո-

*մեթեոսի կերպարը, որն աստվածներից կրակ էր գողացել մարդկանց համար։ Ուստի, եթե փորձենք հակադրել Սիզիֆի և Պրոմեթեոսի կերպարները, ապա աշխարհայեցողության մեջ, գաղափարական պայքարի մեջ նրանք մարմնավորում են կյանքի և գոյության իմաստի նկատմամբ ունեցած այն մոտեցումները, որ հակադիր դիրքերից պաշտպանում են էկզիստենցիալիզմը և մարքսիզմը։ Առաջինը այդ բանը տեսնում է ինդիվիդուալիզմն արդարացնելու, դեպի նեղ, ներքին ապրումների սոցիալապես աղքատ աշխարհը ձգտելու մեջ, գոյության իմաստը համարելով ինքնօտարումը. երկրորդը այդ բանը տեսնում է կոլեկտիվի աշխատանքին ակտիվ ստեղծագործական մասնակցություն ունենալու, իսկական ազատության, հավասարության ու երջանկության աշխարհ ստեղծելու մեջ, իսկ յուրաքանչյուր անհատի ուժը բացատրում է կոլեկտիվի հետ նրա ունեցած սերտ կապով։ Անհատի նկատմամբ ունեցած այդ երկու վերաբերմունքից ո՞րն է ավելի ճիշտ՝ ինդիվիդուալի՞զմը, թե՞ կոլեկտիվիզմը. այդ որոշվում է պատմության ընթացքով, և ահա պատմությունը վկայում է սոցիալիզմի և կոլեկտիվիզմի գաղափարների հաղթանակի մասին։ Այդ պատմական, ռեալ փաստի պատճառները ՍՄԿՊ ծրագրի մեջ բացատրվում են նրանով, որ մարքսիզմ-լենինիզմը շատ ավելի լավ, քան որևէ մի այլ գաղափարախոսություն, «արտահայտում է բանվոր դասակարգի, մարդկության հսկայական մասի կենսական շահերը, որը ձգտում է խաղաղության, ազատության, առաջադիմության, արտահայտում է կապիտալիզմին փոխարինելու եկող նոր հասարակարգի գաղափարախոսությունը»։*



# ՓԱՍՏԵՐԸ ՀԵՐՔՈՒՄ ԵՆ ԿԵՂԾԻՔԸ

Վերջերս ԱՄՆ-ի կենտրոնական հետախուզական վարչությունը հրապարակեց «փաստաթղթեր» այն մասին, թե իբր սովետական էկոնոմիկան ավելի դանդաղ տեմպերով է զարգանում, քան իրականում ներկայացվում է։

Այս կապակցությամբ խմբագրությունը դիմեց Հայկական ՍՍՌ կենտրոնական վիճակագրական վարչության պետ ընկ. Գ. Փահլևանյանին՝ խնդրելով նրան լուսաբանել Սովետական Միության, մասնավորապես ՀՍՍՌ-ի էկոնոմիկայի և ԱՄՆ-ի էկոնոմիկայի զարգացման ընթացքը։

Հարց — *Ի՞նչ կարող եք ասել մեր ընթերցողներին ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի էկոնոմիկայի զարգացման տեմպերի մասին։*

Պատասխան. — *ԱՄՆ-ի պետական գործիչները և բուրժուական տնտեսագետները ճգնում են ապացուցել, որ վերջին ժամանակներս Սովետական Միության ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում իջնում են արտադրության տեմպերը։*

*Սովետական Միության կոմունիստական պարտիայի կենտրոնական կոմիտեի փետրվարյան պլենումում ընկ. Ն. Ս. Խրուշչովը իր ճառում, վիճակագրական տվյալների հիման վրա, համոզիչ կերպով հերքեց ամերիկյան պետական գործիչների և տնտեսագետների կեղծ պնդումները և ապացուցեց սովետական էկոնոմիկայի զարգացման անհերքելի հաջողությունները ԱՄՆ-ի հետ տնտեսական մրցության մեջ։*

*Սակայն անբարյացակամները չեն լռում, ժամանակ առ ժամանակ հանդես են գալիս իրենց անհեթեթ հորինվածքներով, երբեմն էլ չկարողանալով խուսափել անհերքելի փաստերից, ձգտում են ընդհանուրից հանել մասնավորի և այս անգամ փորձում նսեմացնել այն մեծ նվաճումները, որոնք ձեռք են բերել ազգային եղբայրական ռեսպուբլիկաների ժողովուրդները սովետական իշխանության տարիներին։*

*Ուստի, լավ կլինի մի անգամ ևս անհերքելի վիճակագրական տվյալներով ցույց տալ, թեկուզ մեր ռեսպուբլիկայի օրինակով, էկոնոմիկայի այն վիթխարի առաջընթացը, որին հասել է Սովետական Հայաստանի աշխատավորությունը, հատկապես վերջին տասնամյակի ընթացքում։*

*Քանի որ կապիտալիստական երկրները դեռևս չեն հրապարակել 1963 թվականի պաշտոնական վիճակագրական տվյալները էկոնոմիկայի և կուլտուրայի մասին, ստիպված ենք մեր համեմատությունները կատարել Հայաս-*

տանի ժողովրդական տնտեսության զարգացման 1962 թվականի տվյալնե-
րի հետ:

Եթե ԱՄՆ-ում 1962 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ար-
դյունաբերական արտադրանքն աճել է ընդամենը 30 տոկոսով, ապա ՍՍՌՄ-
ում այն աճել է 150 տոկոսով:

Արտադրության միջին տարեկան աճը 9 տարիների (1954—1962 թթ.) ըն-
թացքում ԱՄՆ-ում կազմեց 2,9, ՍՍՌՄ-ում՝ 10,7%:

Հարց.— Իսկ ինչպե՞ս կբնորոշեք Հայկական ՍՍՌ արդյունաբերության
զարգացման ընթացքը:

Պատասխան.—Հայկական ՍՍՌ-ում 1962 թվականին, 1953 թվականի հա-
մեմատությամբ արդյունաբերական արտադրանքը աճել է 155 տոկոսով, ինը
տարում միջին տարեկան աճը կազմել է 11 տոկոս: Այս թվերն ավելի ցայ-
տուն կլինեին, եթե համեմատելու լինեինք Հայաստանի արդյունաբերության
արտադրանքի թողարկման աճը ըստ առանձին տեսակների, ինչպես՝ քիմիա-
կան նյութերի, հաստոցների, դազգահների, էլեկտրաշարժիչների, տրանս-
ֆորմատորների, ցեմենտի, շինանյութերի և այլ շատ կարևոր արտադրանք-
ների հետ: Բավական է նշել, որ միայն 1963 թվականին, 1962 թվականի
համեմատությամբ, այսինքն՝ մեկ տարվա ընթացքում Հայաստանի քիմիա-
կան արդյունաբերության արտադրանքն ավելացավ 35, մեքենաշինությանը
և մետաղամշակմանը՝ 18, շինանյութերի արտադրությունը՝ 14, գունավոր
մետալուրգիայինը՝ 8 տոկոսով:

1962 թվականին աշխատանքի արտադրողականությունն արդյունաբե-
րության մեջ, 1953 թվականի համեմատությամբ, բարձրացավ ՍՍՌՄ-ում՝
78, Հայաստանում 63, ԱՄՆ-ում միայն 47 տոկոսով:

Վերջին տարիներս Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերական արտադրանքի
թողարկման տարեկան տեմպը գերազանցեց Անգլիայի, Գերմանական Ֆե-
դերատիվ Ռեսպուբլիկայի, Դանիայի, Նորվեգիայի, Ֆինլանդիայի, Ֆրանսիա-
յի, Շվեդիայի տեմպից:

Ժողովրդական տնտեսության և էկոնոմիկայի զարգացման համեմատե-
լի ցուցանիշներից մեկը համարվում է ազգաբնակչության մեկ շնչին ընկնող
արտադրանքի ծավալը, առանձնապես՝ էլեկտրաէներգիայի, մեքենաշինու-
թյան, քիմիայի և ծանր արդյունաբերության այլ ճյուղերի արտադրանքի և
սպառման ուղղությամբ:

Այսպես՝ 1962 թվականին մեր ռեսպուբլիկայում մեկ շնչի հաշվով ար-
տադրվել է ավելի շատ էլեկտրաէներգիա, քան Ասիայի, Աֆրիկայի և Ամերի-
կայի որևէ երկրում, բացառությամբ Ամերիկայի Միացյալ Նահանգների,
Կանադայի և Ճապոնիայի: Սովետական Հայաստանը մեկ շնչին ընկնող
էլեկտրաէներգիայի արտադրությամբ վաղուց է անցել մի շարք եվրոպական
կապիտալիստական երկրներից՝ Դանիայից, Իտալիայից, Իռլանդիայից, Իսպա-
նիայից, Պորտուգալիայից, Հունաստանից: Մեր ռեսպուբլիկային սահմանակից
Թյուրքիայի համեմատությամբ մեզ մոտ մեկ շնչին 11, Իրանի համեմատու-
թյամբ 25 անգամ ավելի էլեկտրաէներգիա է ընկնում:

1962 թվականին մեր ռեսպուբլիկայում մեկ շնչի հաշվով արտադրվել
են ավելի շատ մետաղահատ հաստոցներ, քան կապիտալիստական որևէ երկ-
րում, ներառյալ և ԱՄՆ-ը: Այսպես է դրությունը նաև գունավոր մետալուր-
գիայի, քիմիայի, շինանյութերի մի շարք կարևոր տեսակների արտադրու-



թյան բնագավառում: Այսպես, եթե 1962 թվականին, 1957 թվականի համեմա-
տությամբ, ԱՄՆ-ում մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերու-
թյան արտադրանքն ավելացավ 23, իսկ քիմիական արդյունաբերությանը՝ 54
տոկոսով, ապա նույն ժամանակաշրջանում մեր ռեսպուբլիկայում մեքենա-
շինության և մետաղամշակման արտադրանքն ավելացավ 211, իսկ քիմիական
արդյունաբերությանը՝ 160 տոկոսով: Պարզ է, որ այդ ամենևին չի նշանակում,
թե մեզ մոտ թեթև և սննդի արդյունաբերության արտադրանքի մակարդակը
ցածր է: 1962 թվականին մեկ շնչի հաշվով արտադրվել է ավելի շատ բամ-
բակյա գործվածքեղեն, քան Անգլիայում, Ֆրանսիայում, Գերմանական Ֆեդե-
րատիվ Ռեսպուբլիկայում, ավելի շատ բրդյա գործվածքեղեն՝ քան ԱՄՆ-ում և
Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում, ավելի շատ տրիկոտաժեղեն և
գուլպաներ՝ քան ԱՄՆ-ում, Ֆրանսիայում, Գերմանական Ֆեդերատիվ Ռես-
պուբլիկայում:

Մեկ շնչին ընկնող պահածոների, գինու, կոնյակի և մի շարք այլ սննդա-
մթերքների արտադրությամբ Սովետական Հայաստանը գրավում է աշխարհի
առաջին տեղերից մեկը:

Մեր ռեսպուբլիկան, որը նախառևոլյուցիոն տարիներին ցարական Ռու-
սաստանի հետամնաց ծայրամասերից մեկն էր, ագրարային մի երկիր, սովե-
տական իշխանության տարիներին, արդյունաբերության զարգացման բարձր
տեմպերի շնորհիվ, դարձավ զարգացած ինդուստրիալ երկիր, բազմաճյուղ
արդյունաբերությամբ. բավական է նշել, որ ռեսպուբլիկայի ազգային եկամտի
ավելի քան 86 տոկոսը կազմում են արդյունաբերությունը, շինարարությունը,
տրանսպորտը և կապի ձեռնարկությունները: Եթե Հայաստանում ազգային
եկամուտը 1962 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կազմեց
128,6%, ապա նույն ժամանակաշրջանում ԱՄՆ-ում այն կազմեց միայն
117,8%:

Ներկայումս ռեսպուբլիկայի ազգաբնակչության 53%-ն ապրում է քաղաք-
ներում:

Սրանք են այն անհերքելի փաստերը, որ չեն ուզում տեսնել կապիտալիս-
տական երկրների տեսաբանները և վարձված տնտեսագետները:

Հարց.— Ի՞նչ տեղաշարժեր կան գյուղատնտեսության զարգացման բնա-
գավառում:

Պատասխան.— Սովետական Միությունը վերջին տարիների ընթացքում
կաթի, կենդանական յուղի և շաքարի արտադրությամբ գերազանցել է Ամերի-
կայի Միացյալ Նահանգներին, իսկ հացի, մսի և գյուղատնտեսական այլ
մթերքների արտադրությամբ զգալի չափով բարելավվել են հարաբերական
ցուցանիշները:

Մեր ռեսպուբլիկայի օրինակով ցույց տանք, թե ինչպիսի տեղաշարժ է
կատարվել գյուղատնտեսական արտադրության մեջ: 1962 թվականին գյուղա-
տնտեսության արտադրանքը համեմատական գներով, 1953 թվականի հա-
մեմատությամբ, աճեց 155 տոկոսով, ընդ որում մսինը՝ 42, կաթինը՝ 70, ձվինը՝
125, բրդինը՝ 52, խաղողինը՝ 236, պտուղներինը՝ 62, ծխախոտինը՝ 25, բամ-
բակինը՝ 35, ճակնդեղինը՝ 62 տոկոսով և այլն:

Ազգաբնակչությունը ռեսպուբլիկայում 1962 թվականին, 1953 թվականի
համեմատությամբ, աճել է 36 տոկոսով. ինչպես տեսնում ենք, ազգաբնակ-
չության աճը համեմատաբար ցածր է գյուղատնտեսական արտադրանքի

և հիմնական մթերքների աճից։ Այդ նշանակում է, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության կազմակերպումը մեզ մոտ ճիշտ հիմքերի վրա է դրված։

1963 թվականի բացառիկ աննպաստ բնակլիմայական պայմանները ցույց տվին, որ գյուղատնտեսական մթերքների արտադրանքի ավելացման համար անհրաժեշտ է գյուղատնտեսության մեջ կենսագործել մի շարք նոր պրոգրեսիվ միջոցառումներ։

Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեն դեկտեմբերյան (1963 թ.) և փետրվարյան (1964 թ.) պլենումներում քննարկեց և մշակեց մի շարք գործնական միջոցառումներ, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի առավել ավելացման նպատակով։ Արդյունաբերական առաջավոր ճյուղերի, առաջին հերթին՝ քիմիական արդյունաբերության հետագա զարգացումը պայմաններ կստեղծի գյուղատնտեսության հետագա ինտենսիֆիկացման, նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդման, անասնաբուծական մթերքների, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության, մասնավորապես հացահատիկի արտադրության ավելացման համար։

Հարց.— Կարո՞ղ եք ընթերցողին կոնկրետ պատկերացում տալ կապիտալ ներդրումների ծավալի մասին։

Պատասխան.— Ինչպես ամբողջ Սովետական Միությունում, այնպես էլ ռեսպուբլիկայում տարեցտարի աճում են կապիտալ ներդրումները. այսպես՝ 1952—1962 թվականների ընթացքում Սովետական Միության ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալն աճել է 285, իսկ Հայաստանում՝ 359 տոկոսով, այնինչ նույն ժամանակամիջոցում Ամերիկայի Միացյալ Նահանգներում կապիտալ ներդրումների ծավալն կազմեց միայն 116, Անգլիայում՝ 176, Ֆրանսիայում՝ 186 տոկոս և այլն։ Կապիտալ ներդրումների ծավալի տարեկան միջին աճի տեմպը ՍՍՌՄ-ում կազմել է 11,3, Հայաստանում՝ 13,6 տոկոս, համապատասխանորեն ԱՄՆ-ում 2,1, Անգլիայում՝ 4,8, Ֆրանսիայում՝ 5,4 տոկոս։

Եթե Սովետական Միությունում վերջին տասը տարվա ընթացքում կապիտալ ներդրումների ծավալն արդյունաբերության մեջ աճել է 245, գյուղատնտեսության մեջ՝ 333%-ով, ապա Ամերիկայի Միացյալ Նահանգներում նույն ժամանակաշրջանում կապիտալ ներդրումները նվազել են արդյունաբերության մեջ 13, գյուղատնտեսության մեջ՝ 17 տոկոսով։

Կապիտալ ներդրումների ծավալը մեր ռեսպուբլիկայում առավել մեծ չափերի հասավ յոթնամյակի անցած տարիներին. այսպես՝ ընդհանուր կապիտալ ներդրումների ծավալի տարեկան աճը 1962 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կազմեց 15,8 տոկոս, ընդ որում արդյունաբերական շինարարության գծով՝ 16,1, գյուղատնտեսական շինարարության՝ 16,3, իսկ բնակարանային շինարարության գծով՝ 13,1 տոկոս։ Կառուցված բնակելի տարածության միջին տարեկան աճը յոթնամյակի տարիներին կազմում է 18,5 տոկոս. այդպիսի աճ չի տեսել ոչ մի կապիտալիստական երկիր։

Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան (1963 թ.) և փետրվարյան (1964 թ.) պլենումները նոր լիցք հաղորդեցին մեր երկրում կապիտալ ներդրումների տեղաբաշխմանն ու ռացիոնալ օգտագործմանը։ Առաջնությունը տալով արտադրական, առավելա-



պես արդյունաբերական շինարարությանը, պարտիան լայն միջոցառումներ մշակեց նաև գյուղատնտեսական շինարարության տեմպերն արագացնելու նպատակով։

Պլենումների որոշումների կենսագործումը մի նոր ավանդ է կոմունիստական շինարարության ճանապարհին, մի նոր հարված կապիտալիստական երկրների ղեկավարների ու նրանց տեսաբանների հերյուրանքներին։

Հարց.— Էկոնոմիկայի առաջընթացը ինչպիսի՞ փոփոխություն է առաջացրել ժողովրդի նյութական կյանքում։

Պատասխան.— Ինչպես հայտնի է, ՍՍՌՄ-ում ազգային եկամուտը տարեցտարի ավելացել է։ Միայն յոթնամյակի չորս տարվա ընթացքում ազգային եկամուտն ավելացել է ՍՍՌՄ-ում՝ 31, ՀՍՍՌ-ում՝ 40 տոկոսով, մինչդեռ ԱՄՆ-ում այն ավելացել է ընդամենը 17 տոկոսով։

Կապիտալիզմի ջատագովները վերջերս հայտարարեցին, որ Սովետական Միությունում աշխատավորության զբաղվածության տարեկան միջին աճը 1,7-ից իջել է 1,3 տոկոսի. հայտնի չէ՝ որտեղից են վերցված այդ թվերը, սակայն փաստացի տվյալները ցույց են տալիս, որ մեր երկրում 1954—1958 թվականներին բանվոր-ծառայողների զբաղվածության տարեկան միջին աճը կազմել է 3,8, իսկ 1959—1963 թվականներին՝ 4,1 տոկոս, համապատասխանորեն Սովետական Հայաստանում 1959—1963 թվականներին՝ 7,1%։ Այդ նշանակում է, որ ՍՍՌՄ աշխատավորության զբաղվածությունը (մասնակցությունը) ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ամբողջ աշխատունակ ազգաբնակչության համեմատությամբ 1958 թվականի 82 տոկոսից 1963 թվականին հասել է 86-ի, համապատասխանորեն Հայաստանում՝ 85,1%. Նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ում աշխատավորության զբաղվածությունը կազմել է 71 տոկոս։ ԱՄՆ-ում, իրենց իսկ պաշտոնական վիճակագրական տվյալների և պրեզիդենտ Ջոնսոնի հայտարարության համաձայն կան մոտ 5 միլիոն գործազուրկներ։

Կարելի է հոգնել, բայց չափը պետք է ճանաչել։ Մի քանի խոսք էլ աշխատավորության կուլտուրական մակարդակի մասին. համեմատենք այն մի քանի կապիտալիստական երկրների հետ։ Այսպես, ելնելով 10 հազար ազգաբնակչության քանակի հաշվարկից, 1960—61 թվականների ուսումնական տարում բոլոր հանրակրթական դպրոցներում սովորում էին՝ Հայաստանում՝ 1785, Թուրքիայում՝ 970, Իրանում՝ 678, Պակիստանում՝ 653 երեխա։

Նույն ժամանակաշրջանում բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում էին Հայաստանում՝ 107, Թուրքիայում՝ 18, Իրանում՝ 7, Պակիստանում՝ 11 ուսանող։

1960 թ. 10 հազար բնակչին Հայաստանում ընկնում էր 24, Թուրքիայում՝ 4, Իրանում՝ 2 բժիշկ, համապատասխանորեն հիվանդանոցներում մահճակալների թիվը կազմում էր Հայաստանում՝ 70, իսկ Թուրքիայում՝ 15 մահճակալ։

Ռեսպուբլիկայի աշխատավորությունը, մտնելով համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, հաջողությամբ կատարեց յոթնամյակի անցած հինգ տարիների առաջադրանքները։

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆԵՐԻ ՍՏՐԱՏԵԳԻԱՆ ՈՒ ՏԱԿՏԻԿԱՆ ՆԵՐԿԱ ԷՏԱՊՈՒՄ

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

Մարքս-լենինյան պարտիաների ստրատեգիան ու տակտիկան գիտություն է այն պայքարի մասին, որ մղում են պրոլետարիատը և աշխատավորները հանուն կոմունիզմի հաղթանակի ու ճնշված ժողովուրդների ազգային ազատագրման։ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը մշակեցին ռևոլյուցիոն միջազգային պրոլետարիատի ստրատեգիայի ու տակտիկայի հիմունքները, որոնք իրենց հետագա զարգացումն ու ամբողջացումն ստացան Վ. Ի. Լենինի երկերում։ Արդի պայմաններում այդ ստրատեգիան ու տակտիկան առավել զարգացած ձևով ձևակերպված են ՍՄԿՊ XX, XXI, XXII համագումարների նյութերում, պարտիայի ծրագրում ու եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների ծրագրային փաստաթղթերում։

Բանվոր դասակարգի միջազգային ռևոլյուցիոն շարժումը, զինված մարքս-լենինյան ստրատեգիայով ու տակտիկայով, համաշխարհային պատմական հաղթանակներ է տարել, որի շնորհիվ հիմնովին փոխվել է աշխարհի քաղաքական դեմքը։

117 տարի առաջ, 1847 թվականին, ստեղծվեց կոմունիստական առաջին կազմակերպությունը՝ «Կոմունիստների միությունը», որն իր շարքերում համախմբում էր ընդամենը 300 կոմունիստ։ Մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան կոմունիստական պարտիա կար միայն Ռուսաստանում։ Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին արդեն 43 երկրներում գործում էին կոմունիստական պարտիաներ, որոնց շարքերում հաշվվում էր 4202000 կոմունիստ։ Պատերազմի վերջին կոմունիստական պարտիաների թիվը հասավ 75-ի, իսկ այդ պարտիաների անդամներինը՝ 20 միլիոնի։ Այսօր աշխարհի 90 երկրներում կան կոմունիստական ու բանվորական պարտիաներ, որոնց շարքերում միավորված է 43 միլիոն կոմունիստ։

Համաշխարհային կոմունիստական արդի շարժումը դարձել է մեր դարաշրջանի ամենաազդեցիկ քաղաքական ուժը։ Աշխարհի յուրաքանչյուր երեք մարդուց մեկը հաստատակամորեն քայլում է սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիով։

Ժամանակակից կոմունիստական շարժումը բաղկացած է երեք հիմնական ջոկատներից։ Առաջին ջոկատի մեջ մտնում են այն կոմունիստական պարտիաները, որոնք իշխանության գլուխ են կանգնած. դրանք սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաներն են։ Երկրորդ ջոկատի մեջ մտնում են կապիտալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաները, իսկ երրորդի մեջ՝ այն երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաները, որոնք նվաճել են անկախություն կամ պայքարում են հանուն ազգային անկախության։ Այդ երեք ջոկատների ստրատեգիական նպատակը նույնն է՝ կապիտալիզմի տապալումը և սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցումը։

Ունենալով մեկ ընդհանուր ստրատեգիական նպատակ, կոմունիստական շարժման այդ ջոկատներն իրենց առջև դրել և լուծում են առանձին տակտիկական խնդիրներ։ Այսպես, սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաներն իրենց երկրներում սոցիալիզմ և կոմունիզմ են կառուցում։ Այդ ստրատեգիական նպատակին նրանք հասնում են պայքարի բազմազան ձևերով, հաշվի են առնում իրենց երկրների կոնկրետ պայմաններն ու յուրահատկությունները, ցուցաբերում ստեղծագործական մոտեցում սոցիալիզմի ու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։ Սովետական Միության կոմունիստական պարտիան՝ միջազգային կոմունիստական շարժման ճանաչված ավանգարդը, ցույց է տալիս կոմունիզմի կառուցման լավագույն օրինակ։

Միջազգային կոմունիստական շարժման ստրատեգիական ու տակտիկական գլխավոր սկզբունքները մշակվել են մարքս-լենինյան պարտիաների ներկայացուցիչների Մոսկվայի 1957 և 1960 թվականների խորհրդակցություններում։ Համաշխարհային կոմունիստական և ամբողջ ազատագրական շարժման համար խոշոր նշանակություն ունեն ՍՄԿՊ XX և XXII համագումարների ընդհանրացումները, մեր պարտիայի նոր ծրագիրը։

Կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների՝ 1957 թվականի Դեկլարացիայում գիտականորեն հիմնավորված են սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության գլխավոր օրինաչափությունները, որոնք պարտադիր են բոլոր երկրների համար։ Դրանք են. խաղաղ կամ ոչ խաղաղ ձևով պրոլետարական ռևոլյուցիայի իրականացումը. պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն ձևի հաստատումը և այդ գործում աշխատավոր զանգվածների ղեկավարումը բանվոր դասակարգի կողմից, որի կորիզը մարքս-լենինյան պարտիան է, բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության հիմնական մասի և աշխատավորության մյուս խավերի հետ. արտադրության հիմնական միջոցների մասնավոր սեփականության վերացումը և հանրային սեփականության հաստատումը. տվյալ երկրների գյուղատնտեսության աստիճանական սոցիալիստական վերափոխումը. ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացումը. սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացումը գաղափարախոսության ու կուլտուրայի բնագավառներում և սոցիալիզմի գործին նվիրված ինտելիգենցիայի ստեղծումը. ազգային ճնշման վերացումը և ժողովուրդների իրավահավասարության ու բարեկամության հաստատումը. արտաքին ու ներքին թշնամիների ոտնձգություններից սոցիալիզմի նվաճումների պաշտպանությունը. բոլոր երկրների աշխատավորների հետ տվյալ երկրի աշխատավորության համերաշխությունը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը (տես «Սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Դեկլարացիան. Խաղաղության մանիֆեստը», Հայպետհրատ, 1957, էջ 19)։

Դեկլարացիայում նշվում է, որ սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիա-

լիստական շինարարության ընդհանուր սկզբունքների ստեղծագործական կիրառումը «յուրաքանչյուր երկրի կոնկրետ պատմական պայմանների համար, թույլ չի տալիս ուրիշ երկրների կոմունիստական պարտիաների քաղաքականության և տակտիկայի մեխանիկական պատճենավորում (նույն տեղը, էջ 19—20)։

Կապիտալիստական երկրների կոմունիստական պարտիաները միջազգային կոմունիստական շարժման մարտական ջոկատներն են։ Նրանք պայքարում են ոստիկանական հետապնդումների ու հալածանքների դժվարին պայմաններում։ Նրանց մի մասը գտնվում է ընդհատակում, կամ ընդհանրապես արգելված է նրանց գործունեությունը։ Ժամանակակից պայմաններում այդ կոմունիստական պարտիաներն ունեն իրենց յուրահատուկ տակտիկան և դրանից բխող կոնկրետ խնդիրները։ Կապիտալիստական երկրների կոմունիստական պարտիաների տակտիկական խնդիրներից մեկն այն է, որ նրանք ձգտում են հակամոնոպոլիստական հոսանքի մեջ համախմբել ոչ միայն բանվոր դասակարգին, այլև ազգի բոլոր հիմնական ուժերը։ Այդ ճանապարհով հնարավոր կլինի լուրջ հարված հասցնել մոնոպոլիստական խմբերին ու ֆինանսական օլիգարխիային, լուծել բանվորական շարժման առջև ծառացած կարևոր խնդիրները։

Կոմունիստների կողմից գլխավորվող այդ պայքարի մեջ են ներգրավվում նաև աշխատավորների ոչ պրոլետարական խավերը՝ ծառայողներն ու ուսանողները, ինտելիգենցիայի տարբեր. ջոկատները։ Ներկայումս կապիտալիստական երկրների կոմունիստական պարտիաների կարևոր տակտիկական խնդիրներից մեկն էլ այն է, որ նրանք վճռական պայքար են ծավալում բուրժուա-դեմոկրատական ազատությունների պահպանման ու ամրապնդման համար։ Հայտնի է, որ կապիտալիստական շատ երկրների կառավարող շրջաններ ամեն ինչ անում են, որպեսզի վերացնեն առանց այն էլ սահմանափակ դեմոկրատական նորմերը։ Մի շարք երկրներում քաղաքական ռեժիմը հակվում է ֆաշիզմի կողմը։ Ահա թե ինչու ՍՄԿՊ ծրագրում նշված է, որ մի շարք կապիտալիստական երկրներում «Մոնոպոլիստական կապիտալն ավելի ու ավելի բացահայտորեն է դրսևորում իր ռեակցիոն, հակադեմոկրատական էությունը։ Նա չի հաշտվում նույնիսկ նախկին բուրժուա-դեմոկրատական ազատությունների հետ թեև երեսպաշտորեն հռչակում է այդպիսիք» (ՍՄԿՊ Ծրագիրը, էջ 38)։

Ներկա պայմաններում, զարգացած կապիտալիստական երկրներում բանվոր դասակարգն իր ավանգարդի՝ կոմունիստական ու բանվորական պարտիաների գլխավորությամբ ուժեղացնում է պայքարը մոնոպոլիստների բռնության դեմ, հանուն իր կենսապայմանների բարելավման, ժողովրդի դեմոկրատական իրավունքների և ազատությունների ընդլայնման։ Կոմունիստական պարտիաները ելնում են այն բանից, որ մոնոպոլիաների դեմ մղվող դեմոկրատական պայքարը ոչ թե հեռացնում, այլ մոտեցնում է սոցիալիստական ռևոլյուցիան։

Կապիտալիստական երկրներում դասակարգային պայքարի կարևոր մոմենտներից մեկն էլ այն է, որ ներկայումս ստեղծվել են նպաստավոր պայմաններ այն բոլոր ուժերի միավորման համար, որոնք շահագրգռված են մոնոպոլիաների տիրապետության վերացմամբ։ Բացի բանվոր դասակարգից այդ ուժերի մեջ են մտնում գյուղացիությունը, ինտելիգենցիան, քաղաքի մանր



ու միջին բուրժուազիան։ Հիշյալ ուժերի միասնական գործողությունների շնորհիվ կարելի է իրագործել այնպիսի ձեռնարկումներ, որոնք կարևոր ավանդ կլինեին սոցիալական առաջադիմության ճանապարհին։

Հենվելով ժողովրդի մեծամասնության վրա և վճռական հակահարված հասցնելով օպորտունիստական տարրերին, բանվոր դասակարգը հնարավորություն ունի պարտության մատնելու ռեակցիոն, հակաժողովրդական ուժերին, պառլամենտում նվաճելու կայուն մեծամասնություն, պառլամենտները բուրժուազիայի դասակարգային շահերին ծառայող գործիքից վերածելու աշխատավոր ժողովրդի շահերին ծառայող գործիքի, արտապառլամենտական լայն մասսայական պայքար ծավալելու, նկելու ռեակցիոն ուժերի դիմադրությունը և սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ իրականացման համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելու։

«Բանվոր դասակարգը և նրա ավանգարդ մարքս-լենինյան պարտիաները,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— ձգտում են սոցիալիստական ռևոլյուցիան իրագործել խաղաղ եղանակով։ Այդ կհամապատասխաներ բանվոր դասակարգի և ամբողջ ժողովրդի շահերին, երկրի համազգային շահերին (ՍՄԿՊ ծրագիրը, էջ 16)։

Հասկանալի է, որ տիրապետող դասակարգերը իշխանությունը կամավոր կերպով չեն զիջում, իսկ երբ նրանք դիմում են բռնության, արդեն անհրաժեշտություն է դառնում ոչ խաղաղ անցումը սոցիալիզմին։ Այսպիսով, դասակարգային պայքարի ձևերը և խստության աստիճանները կախված են ոչ միայն պրոլետարիատից, այլև ռեակցիոն, հակառևոլյուցիոն ուժերի դիմադրությունից ու բռնության գործադրումից։

Ելնելով պատմական զարգացման կոնկրետ պայմաններից, դասակարգային ուժերի հարաբերակցությունից և ստեղծագործաբար կիրառելով մարքսիզմ-լենինիզմի դրույթները տվյալ երկրներում, զարգացած կապիտալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաները մշակել են սոցիալիզմի համար մղվող պայքարի իրենց ծրագիրը։ Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիայի ծրագրում, որն ընդունվել է 1957 թվականին, նշված է. «Ընտրությունների հետևանքով պառլամենտում կարող է ստեղծվել սոցիալիստական լեյբորիստական և կոմունիստական մեծամասնություն, որը կկազմի սոցիալիստական կառավարություն։ Այդ կառավարությունը ժողովրդի աջակցությամբ կանցնի արմատական սոցիալական վերափոխումների իրականացմանը։

Այդ ճանապարհով,— նշվում է ծրագրում,— օգտագործելով մեր տրադիցիոն ինստիտուտներն ու իրավունքները, մենք կարող ենք պառլամենտը վերածել ժողովրդի կամքի էֆեկտիվ գործիքի, որի օգնությամբ կիրագործվեն սոցիալիզմի անցումն ապահովող հիմնական օրենսդրական միջոցառումները» (Программные документы коммунистических и рабочих партий капиталистических стран Европы, М. 1960, էջ 35)։

Ծրագրում նշված է, որ երբ պառլամենտում ստեղծված կլինի կոմունիստների մեծամասնություն, նա անմիջապես ձեռնամուխ կլինի սոցիալ-տնտեսական ու քաղաքական կարևորագույն վերափոխումների կատարմանը։

Ֆրանսիայի կոմունիստական պարտիայի թեզիսներում (ընդունվել են պարտիայի XIV համագումարում, 1959 թվականի հունիսին) տրված են կա-

պիտալիզմից սոցիալիզմին անցնելու կոնկրետ ուղիներն ու պայմանները։ «Ֆրանսիայի կոմունիստական պարտիան,—նշված է թեզիսներում,—ամենևին էլ չի հրաժարվում սոցիալիզմին անցնելու խաղաղ ուղիների, այդ թվում դեմոկրատական պառլամենտը որպես միջոց օգտագործելու հնարավորությունից» (նույն տեղը, էջ 395)։ Խաղաղ ռևոլյուցիայի իրականացման համար Ֆրանսիայի կոմունիստական պարտիան առաջ է քաշում մի շարք խնդիրներ։ Դրանք են՝ մոնոպոլիստների հաստատած անձնական իշխանության վերացումը, մոնոպոլիաների ազգայնացումը և այլն։ Ֆրանսիայի կոմունիստական պարտիան գտնում է, որ այդ խնդիրների լուծումից հետո հնարավորություն կստեղծվի պառլամենտում ունենալ կոմունիստական մեծամասնություն և կապիտալիստական արտադրական հարաբերությունները վերափոխել սոցիալիստական արտադրական հարաբերություններով։

Զպետք է մոռանալ, որ զարգացած կապիտալիստական երկրներում դասակարգային պայքարի պայմաններն ու ձևերը ոչ միայն նույնը չեն, այլև բավականին բազմազան են։ Եվրոպական այնպիսի կապիտալիստական երկիր, ինչպիսին Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան է, ունի դասակարգային պայքարի յուրահատուկ ձևեր։ Գերմանիայի կոմունիստական պարտիայի ծրագրային փաստաթղթում (այն ընդունվել է 1960 թվականի փետրվարին տեղի ունեցած կոնֆերանսում) Արևմտյան Գերմանիայի բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավորության համար առաջադրվում են այնպիսի խնդիրներ, ինչպիսիք են՝ միջուկային սպառազինման դադարեցումը, ամբողջ Գերմանիայի տերիտորիայում ատոմազերծ գոտու ստեղծումը, միլիտարիստական, ռևանշիստական ու ռասայական պրոպագանդայի դատապարտումը, Բունդեստագում դեմոկրատական իրավունքների հաստատումը, մոնոպոլիաների իշխանության սահմանափակումը, աշխատանքի և հանգստի իրավունքի ապահովումը, ագրարային ռեֆորմի իրագործումը և այլն (նույն տեղը, էջ 98—103)։

Միջազգային կոմունիստական շարժման մարտական ջոկատներից են ազգային անկախության համար պայքարող երկրների կոմունիստական պարտիաները։ Դրանք Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի և Ասիայի ազատագրված կամ դեռևս գաղութակալության տակ գտնվող, ազգային անկախության համար պայքարող երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաներն են։ Աֆրիկայի, Ասիայի և Լատինական Ամերիկայի զարգացող երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ստրատեգիական նպատակն է լիկվիդացնել կապիտալիզմի ու ֆեոդալիզմի մնացուկները և հաստատել սոցիալիզմ։ Նրանց տակտիկական առաջնահերթ խնդիրն է՝ վերացնել գաղութակալության մնացուկները։ Կոմունիստների համար կարևոր պրոբլեմ է նաև նվաճված անկախության ամրապնդումը, մինչև վերջ լուծել ազգային-ազատագրական ռևոլյուցիայի խնդիրները։ Դրա համար կոմունիստական պարտիաներն առաջ են քաշում մերձավորագույն խնդիրներ՝ ազգային արդյունաբերության ստեղծումն ու տվյալ երկրի ինդուստրացումը, բանկերի ազգայնացումն ու պետական առևտրի ամրապնդումը, ազգային լայն ճակատի ստեղծումը և այլն։

Լատինական Ամերիկայում և ամբողջ միջազգային բանվորական և ազատագրական շարժման մեջ կարևոր իրադարձություն հանդիսացավ 1959 թվականի հունվարի 1-ին Կուբայում տեղի ունեցած ժողովրդական ռևոլյուցիան,



որի հետևանքով տապալվեց դիկտատոր Բատիստայի ռեժիմը, երկրում հաստատվեց ռևոլյուցիոն կառավարություն։

Ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակից հետո Կուբայի արդյունաբերությունն ազգայնացվեց և ստեղծվեց սոցիալիզմի անհրաժեշտ բազա քաղաքում։ Հաջողությամբ իրագործված ագրարային ռեֆորմի հետևանքով վերացվեց կալվածատիրական հողատիրությունը և հողն անհատույց հանձնվեց գյուղացիությանը։ Կուբան դարձավ սոցիալիզմի առաջին ամրոցը Ամերիկյան մայր ցամաքում։ Նա կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու օրինակ է ցույց տալիս Լատինական Ամերիկայի և աշխարհի մյուս մասերի զարգացող երկրներին։ Հատկապես Լատինական Ամերիկայի երկրների կոմունիստական պարտիաները իրենց գործունեության ընթացքում չեն կարող աչքի առաջ չունենալ Կուբայի սոցիալիստական ռևոլյուցիայի փորձը։ 1963 թվականի դեկտեմբերին Մեխիկոյում տեղի ունեցավ Մեքսիկական կոմունիստական պարտիայի XIV ազգային համագումարը, որտեղ ընդունվեց նրա ծրագիրը։ Այնտեղ տրված են պարտիայի ինչպես տակտիկական, այնպես էլ ստրատեգիական խնդիրները։ Որպես մերձավոր խնդիրներ, Ծրագիրն առաջ է քաշում հետևյալ հարցերը. օտարերկրյա մոնոպոլիաների ազդեցության սահմանափակումն ու նրանց ազգայնացումը, հողային ռեֆորմի իրականացումը, կոնստիտուցիայով սահմանված աշխատավորների իրավունքների և բուրժուա-դեմոկրատական մյուս ազատությունների պահպանումը, քաղաքական ռեժիմի դեմոկրատացումը, կառավարության կողմից անկախ և խաղաղասիրական քաղաքականության իրագործումը և այլն (տե՛ս «Проблемы мира и социализма» № 3, 1964, էջ 53)։ Մեքսիկայի կոմունիստական պարտիայի ծրագրում նշվում է, որ Մեքսիկան կանգնած է ժողովրդական, ազգային ազատագրական, դեմոկրատական ռևոլյուցիայի առջև։ Այդ ծրագրի հիմնական պրոբլեմների լուծման համար խնդիր է դրվում ստեղծել ազգային ազատագրական դեմոկրատական ճակատ, որի շարժիչ ուժերը պետք է լինեն՝ բանվոր դասակարգը, գյուղացիությունը, հայրենասիրական ինտելիգենցիան, ուսանողությունը և ազգային բուրժուազիան։ Դեմոկրատական ճակատի հաղթանակի համար անհրաժեշտ է, որ նրանում ղեկավար դեր կատարի բանվոր դասակարգը։ Այնուհետև, Մեքսիկական կոմունիստական պարտիայի ծրագիրը բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավորության առջև խնդիր է դնում չկանգնել մի կետի վրա, զարգացնել սկսված ռևոլյուցիան և հասնել պրոլետարիատի դիկտատուրայի հաստատմանը, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցմանը (նույն տեղը, էջ 54)։

Այսպիսով, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման փորձը ցույց է տալիս, որ տարբեր երկրների կոմունիստական պարտիաների ստրատեգիան նույնն է, բայց տակտիկական հարցերում բազմազանությունն անխուսափելի է։ Միանգամայն տեղին են Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, որ «քանի դեռ ժողովուրդների ու երկրների միջև գոյություն ունեն ազգային ու պետական տարբերություններ, իսկ այդ տարբերությունները պրոլետարիատի դիկտատուրան նույնիսկ համաշխարհային մասշտաբով իրագործվելուց հետո էլ կպահպանվեն շատ ու շատ երկար ժամանակ, բոլոր երկրների կոմունիստական բանվորական շարժման ինտերնացիոնալ տակտիկայի միասնությունը պահանջում է ոչ թե բազմազանության վերացում, ոչ թե

ազգային տարբերությունների ոչնչացում, դա անմիտ ցնորք է ներկա մոմենտի համար...» (Երկեր, հ. 31, էջ 97—98)։

Մարքս-լենինյան պարտիաների ստրատեգիան ու տակտիկան փայլուն քննություն են բռնում կապիտալիստական երկրների բանվորական շարժման բոլոր հարցերում։ Ժամանակակից կապիտալիզմի երկրները մշտապես ցնցվում են դասակարգային մարտերից, ծավալվում են բանվոր դասակարգի մարտական ելույթները հօգուտ իր տնտեսական ու քաղաքական շահերի պաշտպանության։ Ամբողջ կապիտալիստական սիստեմում տեղի է ունենում բանվոր դասակարգի պայքարի չտեսնված վերելք հանուն նրա կենսական շահերի ու իրավունքների։ Բանվոր դասակարգի պայքարի մեջ կարևոր տեղ է գրավում գործադուլային շարժումը։ Ահա մի քանի փաստեր. 1956 թվականին կապիտալիստական երկրներում գործադուլավորների թիվը կազմել է 13 միլիոն 900 հազար, 1957-ին՝ 23 միլիոն, 1958-ին՝ 22 միլիոն 400 հազար, 1959-ին՝ 40 միլիոն 700 հազար, 1960-ին՝ 53 միլիոն 600 հազար, 1962-ին 62 միլիոն։

Եթե նախապատերազմյան մեկ տասնամյակում կապիտալիստական յոթ երկրներում՝ ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում, Կանադայում, Բելգիայում, Ավստրիայում և Ճապոնիայում գործադուլ էին արել մոտ 12 միլիոն մարդ, ապա հետպատերազմյան մեկ տասնամյակում այնտեղ գործադուլավորների թիվը հասավ 72 միլիոնի։ 1962 թվականին գործադուլային հզոր ելույթներով հանդես եկան Ֆրանսիայի լեռնագործները, Իտալիայի և Հունաստանի շինարարները, Իսպանիայի հանքագործները։ Միայն անցյալ տարվա առաջին կիսամյակում ԱՄՆ-ում տեղի է ունեցել 2018 գործադուլ, որի պատճառով կորել է 9,1 միլիոն աշխատանքային օր։

1964 թվականի փետրվարին ԱՄՆ-ում արդեն եղել է 375 գործադուլ, որոնց մասնակցել են ավելի քան 125 հազար մարդ։ Ֆրանսիայի մարտական պրոլետարիատը 1964 թվականի մարտի 18-ին՝ Փարիզի կոմունայի տարեդարձի օրը, դուրս եկավ ընդհանուր գործադուլի, որին մասնակցում էին 6 միլիոն ֆրանսիացի աշխատավոր։

Քաղաքականապես հասունացել է նաև Լատինական Ամերիկայի երկրների պրոլետարիատը։ Բրազիլիայում վերջերս տեղի ունեցած պետական հեղաշրջման ժամանակ, որի հետևանքով իշխանության գլուխ անցան աջ ուժերը, ամբողջ Լատինական Ամերիկայով մեկ ելույթների ալիք տարածվեց ի պաշտպանություն Բրազիլիայի բանվոր դասակարգի պայքարի։

Որպես ակտիվ ուժ վերջին տարիներս համաշխարհային ասպարեզ են մտել Ասիայի ու Աֆրիկայի՝ գաղութային լծից ազատագրված երկրների աշխատավորները։ Այդ երկրների բանվոր դասակարգը մեծ ավանդ է ներդրել գաղութատիրության խայտառակ սիստեմի վերացման համար ժողովուրդների մղած պայքարում։

Անընդհատ ուժեղացող բանվորական շարժումը կապիտալիստական երկրներում էլ ավելի է բարձրացնում կոմունիստական պարտիաների հեղինակությունը։ Այդ բանի վառ վկայություններից մեկն էլ պառլամենտական ընտրություններում կոմունիստներին տրվող ձայների անընդհատ ավելացումն է։ Կապիտալիստական 30 երկրներում, որտեղ կոմունիստական պարտիաները գործում են լեգալ և մասնակցում են ընտրություններին, ստանում են ավելի քան 35 միլիոն ընտրողների ձայն։ Կոմունիստներին տրված ձայների քանակը զգալի չափով ավելացել է Ճապոնիայում, Շվեդիայում, Ցեյլոնում, Իտալիա-



յում, Ֆինլանդիայում, Հնդկաստանում և այլ երկրներում։ 1963 թվականի ապրիլի վերջին Իտալիայում տեղի ունեցան պառլամենտական ընտրություններ. մեծ հաղթանակ տարան կոմունիստները։ Իտալիայի 34 միլիոն ընտրողները առաջադրված 5,5 հազար թեկնածուներից պետք է ընտրեին 630 դեպուտատ և 315 սենատոր։ Պառլամենտի դեպուտատների պալատի ընտրություններում կոմունիստներն ստացան ավելի քան 7 միլիոն 760 հազար ձայն, կամ բոլոր ձայների 25,3 տոկոսը։ Հիշեցնենք, որ 1958 թվականի ընտրությունների ժամանակ կոմունիստների օգտին տրվել էր բոլոր ձայների 22,7 տոկոսը։ Այն ժամանակ դեպուտատների պալատում նրանք ունեին 140 մանդատ, իսկ ներկայումս կոմունիստների մանդատների թիվը արդեն 166 է։ Պառլամենտի մյուս պալատի՝ սենատի ընտրություններում կոմունիստներն ստացան 6 միլիոն ձայն՝ բոլոր ձայների 25,5 տոկոսը։ Եթե այն ժամանակ սենատում նրանք ունեին 59 մանդատ, ապա ներկայումս՝ 65 մանդատ։ Այսպիսով Իտալիայի յուրաքանչյուր 4-րդ ընտրողը իր ձայնը տվեց կոմունիստներին։ Իտալիայի պառլամենտի անդամներ են ընտրվել կոմունիստական պարտիայի ականավոր գործիչներ Պալմիրո Տոլյատին, Լուիջի Լոնգոն, Ջանկարլո Պաետան, Ինգրաոն, Ալեկատան և ուրիշներ։

Կոմունիստների հաջողությունները պառլամենտական ընտրություններում ամենից առաջ արդյունք են այն բանի, որ կոմունիստները հետևողականորեն հանդես են գալիս դասակարգային մարտերի վճռական տեղամասերում։ Նրանք, սերտորեն կապված աշխատավոր մասսաների հետ, պայքարում են իրենց երկրի դեմոկրատական վերափոխման, ամբողջ աշխարհում խաղաղությունը կայուն ու մշտական դարձնելու համար։ Դրանում պետք է տեսնել կոմունիստների ձեռք բերած հաջողությունների գաղտնիքը։ Ֆրանսիական կոմունիստական պարտիան պառլամենտական վերջին ընտրություններում հավաքեց 3.992.431 ընտրողի ձայն, որը կազմում է բոլոր ընտրողների ձայների 21,78 տոկոսը։ Եթե 1958 թվականին Ազգային ժողովում ֆրանսիական կոմունիստ-պառլամենտականներն ունեին 10 տեղ, ապա ներկայումս ունեն 41 տեղ։ Ֆինլանդիայի կոմունիստական պարտիան երկրի պառլամենտում 47 ներկայացուցիչ ունի։ Չիլիի վերջին պառլամենտական ընտրությունների հետևանքով կոմունիստական պարտիան ստացավ 20 մանդատ։

Կոմունիստական ու բանվորական պարտիաների տակտիկայում կարևոր տեղ է գրավում կոմպրոմիսների հարցը։ Իր ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» աշխատությունում Վ. Ի. Լենինը տվել է մի ամբողջական ուսմունք կոմպրոմիսների ու պառլամենտարիզմի մասին։ Խոսելով կոմպրոմիսների մասին՝ Վ. Ի. Լենինը գրում էր, որ չի կարելի առաջարկել ընդհանուր, մշտական դեղատոմս, կանոն, թե երբ գնալ, երբ չգնալ կոմպրոմիսի. պետք է կարողանալ ճիշտ կողմնորոշվել բոլոր պայմաններում։

Ժամանակակից պայմաններում կոմունիստական պարտիաները կոմպրոմիսների մեջ են մտնում սոցիալիստական ու այլ դեմոկրատական պարտիաների հետ։ Դրանով նրանք իրենց ավանդն են մուծում բանվորական շարժման պառակտումը հաղթահարելու գործում։

Կոմունիստները վճռականորեն հանդես են գալիս հանուն բանվորական շարժման պառակտման հաղթահարման։ Նրանք գտնում են, որ ելնելով բանվորական շարժման արմատական շահերից՝ կոմունիստական ու սոցիալ-դեմոկրատական պարտիաները ազգային ու միջազգային մասշտաբներով պետք

է ընթանան համատեղ գործողությունների ուղիով։ Պայքարելով հանուն միջազգային բանվորական շարժման միասնության, կոմունիստական պարտիաները ելնում են այն ճշմարտությունից, որ սոցիալիզմի գործը չի կարելի առաջ շարժել առանց բանվորական շարժման մեջ օպորտունիզմի դեմ վճռական պայքար մղելու։ Միջազգային ռևոլյուցիոն շարժումը աճում և կոփվում է անհաշտ պայքարում, ընդդեմ զանազան օպորտունիստական տեսությունների, ռեֆորմիզմի և ռևիզիոնիզմի, դոգմատիզմի և աղանդավորության։ «Միջազգային կոմունիստական շարժման միասնության վճռական պաշտպանությունը, որևէ այնպիսի գործողություն թույլ չտալը, որը կարող է քայքայել այդ միասնությունը,— ասված է կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թվականի խորհրդակցության Հայտարարության մեջ,— հանդիսանում է հաղթանակի պարտադիր պայմանը ազգային անկախության, դեմոկրատիայի ու խաղաղության, սոցիալիստական ռևոլյուցիայի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման խնդիրների հաջող լուծման համար մղվող պայքարում»։

Կոմունիստական պարտիաները միահամուռ կերպով դատապարտել ու դատապարտում են ձախ օպորտունիզմի չինական տարատեսակը, որը ժամանակակից դոգմատիկների «տեսությունների» խառցած արտահայտությունն է։

Համաշխարհային կոմունիստական շարժման մեջ նրա ստրատեգիական ու տակտիկական հարցերում Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարների ձախ օպորտունիզմն ու նացիոնալիզմը լուրջ վտանգ են ներկայացնում։ ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշման մեջ նշված է, որ «ստրատեգիայի ու տակտիկայի բոլոր հիմնական հարցերում, հեռանալով համաշխարհային կոմունիստական շարժման լենինյան գծից, չինական ղեկավարները հռչակեցին իրենց կուրսը, որի մեջ միաձուլվում են մանր-բուրժուական ավանտյուրիզմը և մեծապետական շովինիզմը։ Նրանք ըստ էության մի շարք հարցերում գլորվում են տրոցկիստական դիրքերը, զինվում են մարքս-լենինյան պարտիաների դեմ պայքարելու տրոցկիստական մեթոդներով...»։

Ելնելով մանր բուրժուական գաղափարախոսությունից ու մեծապետական շովինիզմից, չինական ղեկավարները լենինիզմը նենգափոխում են մաոցզեդունիզմով։ Նրանց ձախ օպորտունիզմն ու տրոցկիստական հայացքները պարզ դրսևորվում են մարքս-լենինյան տեսության մի շարք կենսական հարցերում, այդ թվում և ռևոլյուցիայի հարցում։ Նրանք գործն այնպես են պատկերացնում, որ սոցիալիստական ռևոլյուցիան կարելի է կատարել միայն պատերազմի ու զինված ապստամբության միջոցով։ Մարքսիզմ-լենինիզմը ելնում է այն կարևորագույն դրույթից, որ ռևոլյուցիան չի կարելի կատարել պատվերով, այն չի կարելի «արտահանել» կամ «ներմուծել»։ «Կան մարդիկ,— գրել է Վ. Ի. Լենինը,— որոնք կարծում են, թե ռևոլյուցիան օտար երկրում կարող է ծնվել ըստ պատվերի, ըստ համաձայնության։ Այդ մարդիկ կամ խելագարներ են, կամ պրովոկատորներ» (Երկեր, հատ. 27, էջ 601)։ Խեղաթյուրելով լենինիզմի այդ կարևոր դրույթը, չինական ղեկավարները գտնում են, որ միայն և բացառապես զինված պայքարի միջոցով կարելի է հասնել ռևոլյուցիայի հաղթանակին բոլոր երկրներում։ Նրանք հայտարարում են, որ «զինված պայքարի ուղին ճնշված ազգերի վերջնական ազատագրման ուղին է»։ Հասկանալի է, որ ռևոլյուցիայի հարցին նման մոտեցումը անհեթե-



թություն է։ Մի՞թե ճիշտ կլիներ Ալժիրի, Ինդոնեզիայի, Բիրմայի, Գանայի և այլ երկրների աշխատավորների առջև խնդիր դնել անպայման զինված ապստամբություն բարձրացնել։ Չինական ղեկավարները չե՞ն տեսնում, որ երբ վերջերս տեղի ունեցավ Ալժիրի Ազգային ազատագրման ճակատ պարտիայի առաջին համագումարը, ընդունվեց սոցիալիզմի կառուցման ծրագիրը։ Այդ ծրագրով ներկայումս Ալժիրի ժողովուրդը կառուցում է նոր հասարակարգ՝ սոցիալիստական հիմունքներով։

Ջգտելով պարտադրել «չինականացված սոցիալիզմը» սոցիալիստական երկրներին և ազատության համար պայքարող ժողովուրդներին, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները չեն կարող թաքցնել իրենց «ստրատեգիական գլխավոր նպատակը՝ ինչ գնով էլ լինի կոմունիստական և ազգային-ազատագրական շարժումը ենթարկել իրենց մեծապետական, նեղ եսասիրական շահերին։ Հանուն դրա էլ կոպիտ կերպով ոտնահարվում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները։ Հանուն այդ բանի վերաձևվում և խեղաթյուրվում է մարքս-լենինյան ուսմունքը» (Մ. Ա. Սուսլով, «Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար ՍՄԿՊ պայքարի մասին»։ Հայպետհրատ, 1964 թ. էջ 12)։

Միջազգային կոմունիստական շարժման ստրատեգիական խնդիրների իրականացման համար կենսական նշանակություն ունի պրոլետարական ինտերնացիոնալիզմի բովանդակությունն արտահայտող, բոլոր երկրների սոցիալիստական ու հակաիմպերիալիստական ուժերը միավորելու նպատակին ծառայող «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մարտական կոչը։ Չինական ղեկավարները ձգտում են նենգափոխել նաև այդ սրբազան կոչը և առաջ են քաշում այնպիսի լոզունգներ, որոնք ոչ թե միավորում, այլ ռասայական հիմքերի վրա առանձնացնում են ժողովուրդներին։

Կոմունիստական ու բանվորական պարտիաները, հետևողականորեն պայքարելով ռևիզիոնիզմի, դոգմատիզմի ու աղանդավորության, ձախ օպորտունիզմի և հակամարքսիստական զանազան հոսանքների դեմ, ավելի կուռ ու միասնական են դարձնում իրենց շարքերը։ Կոմունիստական պարտիաները ելնում են այն բանից, որ մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա կոմունիստական պարտիաների հետագա համախմբումը բանվոր դասակարգի բոլոր ուժերի, դեմոկրատիայի և առաջադիմության ուժերի միավորման կարևորագույն պայմանն է, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման նոր հաղթանակների գրավականը։



## Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

ԳՐ. ՍԱՐԳՍՅԱՆ

# ՀԱՅ ՄԵԾ ԵՐԳԻԾԱԲԱՆԸ

(Հ. Պարոնյանի ծննդյան 120-ամյակի առթիվ)



Հ. Պարոնյան
նկ. Մ. Առուտչյանի

Շուրջ մեկ հարյուրամյակ է, որ Պարոնյանի հանճարը ծիծաղեցնում ու ոգեշնչում է մեր ժողովրդին, նրան պարգևում էսթետիկական գերագույն հաճույք, զինում կենսուրախությամբ ու պայծառատեսությամբ։ Ճշմարտության կրակով լի պարոնյանական երգիծանքը ժամանակի ու տարածության մեջ ոչ միայն չի կորցնում իր փայլը, այլև ճառագայթում է այնպիսի նոր կողմեր, որոնցով հեղինակն իրավամբ մտնում է, Բելինսկու խոսքերով ասած, «հավիտենապես ապրող և շարժվող երևույթների» շարքը։ Նա շարունակում է ապրել ու զարգանալ հասարակական գիտակցության մեջ և որքան հարստանում է իմացությունը նրա մասին, այնքան ավելի է պայծառանում նրա ստեղծագործական դեմքը, այնքան ավելի մոտ ու հարազատ է դառնում նրա գեղարվեստական ժառանգությունը։

Ո՞րն է դրա պատճառը, ինչո՞ւմն է Պարոնյանի հարատև հմայքի գաղտնիքը, վերջապես, ինչո՞վ է մոտիկ ու հարազատ մեզ ժառանգությունը մի գրողի, որի կարճատև կյանքի թելը կտրվել է սրանից 73 տարի առաջ։

1.

Ինչպես յուրաքանչյուր մեծ անհատականություն, այնպես էլ Պարոնյանը կյանքի կոչվեց ժամանակի և պատմական անհրաժեշտության պահանջով։ Նրա հրապարակ գալը նախապատրաստված էր հայ ժողովրդի բազմադարյան



կուլտուրայի զարգացմամբ, նրա ազատագրական շարժման այն նոր վերելքով, որ բուռն թափ ստացավ անցյալ դարի 60-ական թվականներին։

Ռևոլյուցիոն դեմոկրատական հոսանքի ձևավորումը և Նալբանդյան—Սրվանձյան գաղափարական զինակցությունը, Զեյթունի հերոսական ապստամբությունը և դրան հաջորդող ազատագրական ելույթներն ու հակակառավարական ցույցերը Արևմտյան Հայաստանում արդեն ստեղծել էին այն ենթահողը, որի վրա աճեց ու փթթեց ապագա երգիծաբանը։ «Ժողովրդի հանճարը ծնվում է ժողովրդի թանձրության ճնշումից,— ասել է Իսահակյանը,— ինչպես ադամանդը քարածխի ճնշումից»։

Ժողովրդական հանճարի մի այդպիսի զարմանահրաշ արտահայտություն է նաև Պարոնյանը, որի ծնունդն արգասիք էր տիրող կարգերի դեմ ծառացած դեմոկրատական ուժերի ակտիվության։ Որպես ժողովրդի ցասման զավակ, նա իր տիտանական անհատականության մեջ մարմնավորեց նրա ազատասեր ոգին, պայքարի հզոր շունչն ու ստեղծագործական հանճարը։

Պարոնյանի մտավոր, քաղաքական հասունացումը սերտորեն կապված էր իր ժամանակի հասարակական-գաղափարական հոսանքների միջև ծավալվող բուռն պայքարի հետ և դրսևորեց ժողովրդական մասսաների սոցիալական ինքնագիտակցության վերելքը սուլթանական մռայլ իրականության մեջ։

Տակավին քսանամյա պատանի էր նա, երբ թողեց իր ծննդավայրը և տեղափոխվեց Կոստանդնուպոլիս՝ արևմտահայ մտավոր կյանքի կենտրոնը։ Այստեղ էլ հաղորդակից եղավ աշխատավոր մասսաների աղքատությանն ու թշվառությանը և ավելի որոշակիորեն զգաց շրջապատող կյանքի հակասությունները։

Հայրենի հյուղից հալածված և Պոլսի էժանագին իջևաններում իրենց ողորմելի գոյությունը քարշ տվող հայ մշակները դարձան Պարոնյանի մտահոգության առարկան, և նա սկզբում տարերայնորեն, բայց հետո պայծառացող գիտակցությամբ խորամուխ եղավ նրանց բազմատանջ առօրյայի մեջ, վերապրեց նրանց վիշտն ու տրտունջը, որ իրենից առաջ հուզել էին նաև «Երկրագործության» անմահ հեղինակին։ Հենց այդ մթնոլորտում էլ հետզհետե կազմավորվեց ապագա երգիծաբանի հասարակական գիտակցությունը, որ սնվում էր շրջապատող կյանքի, ժողովրդական տարերքի զգացողությամբ։ Պանդուխտ մշակների մեջ նա արդեն տեսնում էր այն ուժը, որ մարմնավորում է հայրենյաց հույսը, «անոնց համար կխոսիմ, վասնզի Հայաստանի զավակունք են, և հայրենիքն իր ազատության հույսն անոնց բազուկներու վրա դրած է»։

Այդ գիտակցությամբ էլ Պարոնյանը նետվում է հասարակական պայքարի ասպարեզ, որն արդեն շիկացել էր 1863 թվականին, սուլթանական կառավարության վավերացրած, այսպես կոչված՝ Ազգային սահմանադրության պատճառով։ Հայտնի է, որ թլպատված «սահմանադրությունը» ոգևորություն առաջացրեց արևմտահայ վերնախավի մեջ. կղերա-պահպանողական ու լիբերալ ինտելիգենցիան ամեն կերպ փառաբանում էին «բարեխնամ կառավարության» այդ քայլը, որ ոչ այլ ինչ էր, եթե ոչ ձևական զիջում ազգային եկեղեցական գործերի վերաբերյալ։ Այն գործնականում որևէ էական փոփոխություն չմտցրեց ժողովրդի տնտեսական ու իրավական ծանր դրության մեջ, ուստի և առաջ բերեց դեմոկրատական շրջանների խոր դժգոհությունը։

Հրապարակ գալով հասարակական կրքերի այդպիսի շիկացած մթնոլոր-

տում՝ Պարոնյանը որոշակիորեն հակվեց դեպի դեմոկրատական հոսանքը և իր գրական-հասարակական առաջին քայլերից արտահայտեց ժողովրդական մասսաների տրամադրություններն ու ձգտումները: Այդ են վկայում նրա ստեղծագործական անդրանիկ փորձերը՝ «Երկու տերով ծառա մը» (1865 թ.) գրվածքը և, մանավանդ, «Ատամնաբույժն արևելյան» կատակերգությունը, որը լույս տեսավ 1868 թ. և նշանավորեց Պարոնյանի մուտքը գրականության մեջ:

Նշված գործերը, որքան էլ թերակատար լինեն իրենց արվեստով, նոր խոսք էին ժամանակի արևմտահայ դրամատուրգիայի ու թատրոնի ասպարեզում, ուր մինչ այդ տիրապետող էին թարգմանական պիեսներն ու ազգային-ռոմանտիկական ողբերգությունները: Հարվածելով թե՛ մեկին և թե մյուսին, երիտասարդ Պարոնյանը ձգտում էր թատրոնը մոտեցնել ժողովրդական խավերին և այն դարձնել առաջավոր գաղափարների պրոպագանդման միջոց: Այդ նպատակով էլ նա հրապարակ հանեց այնպիսի թատերգություններ, որոնք, ինչպես նյութի ու ժանրի, այնպես էլ ստեղծագործական մեթոդի տեսակետից նորարարական բնույթ ունեին: Արդիական թեմա, կյանքի արտացոլման երգիծական-կատակերգական եղանակ և կենսալի ռեալիստական մեթոդ—ահա այն նոր գծերը, որոնցով աչքի ընկան Պարոնյանի դրամատիկական երկերը: Պատկերելով պոլսահայ քաղքենիական ընտանիքի առօրյան, բուրժուական կենցաղի բնորոշ կողմերը և դրանք մարմնավորելով երգիծական կենդանի կերպարների մեջ, երիտասարդ հեղինակը փաստորեն արձագանքում էր Նալբանդյանի թատերական էսթետիկային և դառնում նրա առաջադրած սկզբունքների կրքոտ պրոպագանդիստն ու արմատավորողը արևմտյան թատրոնի ու դրամատուրգիայի բնագավառում:

Այդ տեսակետից Պարոնյանն ունեցավ նույնպիսի դեր, ինչպիսին է Սունդուկյանը արևելահայ իրականության մեջ: Մեր նոր դրամատուրգիայի այս երկու ամոլները գրեթե միաժամանակ վճռական պայքար ծավալեցին կղեր-ֆեոդալական գաղափարախոսության արտահայտություն հանդիսացող պատմական ողբերգությունների դեմ և որդեգրեցին ժամանակակից իրականության ճշմարտացի պատկերման առաջավոր սկզբունքը: Այդ հիմքի վրա ծավալվեց նրանց դրամատուրգիական գործունեությունը, որ ընթանում էր հանդիսատեսի, թատրոնի ու թատերական գործիչների սերտ համագործակցության պայմաններում: Սունդուկյանի նման Պարոնյանն էլ թեև մշտական կապ ուներ դերասանական կադրերի հետ, բայց նա, ի տարբերություն իր մեծ ժամանակակցի, երջանկություն չունեցավ տեսնելու իր պիեսներից և ոչ մեկի բեմադրությունը: Եվ միայն զարմանալ կարելի է, որ չնայած դրան, նա կարողացավ իր հետագա ստեղծագործություններում ավելի ու ավելի խորանալ դրամատուրգիական արվեստի մեջ, կատարելագործել իր վարպետությունը:

Արծարծելով արտաքուստ անմեղ թվացող ընտանեկան-կենցաղային հարցեր՝ Պարոնյանը հասավ սոցիալական այնպիսի լայն ընդհանրացումների, որոնց միջոցով բացահայտեց բուրժուական հասարակության բարոյական սնանկությունն ու բարքերի այլասերումը: Կատակերգական ժանրը նրա մոտ բովանդակավորում էր կյանքի ոչ միայն ծիծաղահարույց, այլև սուր-դրամատիկ և նույնիսկ ողբերգական կողմերը, որոնց գեղարվեստական տիպականացմամբ նա ձգտում էր արտացոլել իրականությունն իր բազմազան կապերի մեջ: Դրա շնորհիվ էլ պարոնյանական կոմեդիան աչքի է ընկնում դրամա-



տիզմով հագեցած գործողություններով, աշխույժ տրամախոսություններով, կերպարների ու վիճակների զանազանակերպությամբ և կենդանի լեզվի հյութեղությամբ:

Այդպիսի արժանիքներով է օժտված, մանավանդ, «Պաղտասար աղբարը» (1886 թ.), որը հայ դասական կատակերգության փայլուն նմուշներից է: Այստեղ յուրաքանչյուր դրություն պատճառաբանված է գործողության զարգացման տրամաբանությամբ և ծառայում է մարդկանց փոխհարաբերությունների բացահայտմանը: Հիմք ունենալով գլխավոր հերոսի ընտանեկան կոնֆլիկտը՝ Պարոնյանը դրա շուրջն ստեղծել է այնպիսի նոր բախումներ ու անցքեր, որոնց զարգացման ընթացքը դուրս է գալիս ընտանեկան ոլորտից և ձեռք բերում հասարակական հնչեղություն: Եթե Անուշի ու Կիպարի փոխհարաբերության պատկերմամբ ցուցադրված է բուրժուական բարքերի այլասերվածությունը, ապա փաստաբան Օգսենի և դատաստանական խորհրդի անդամների վարքի ու գործողությունների բնութագրմամբ մերկացված են ազգային վարչական մարմինների սնամեջ էությունը, նրանց շահամոլությունն ու բյուրոկրատիզմը: Եվ սա է, որ կատակերգությունը դարձնում է սոցիալական հարուստ բովանդակություն ունեցող մի երկ, ուր հեղինակի քննադատական ռեալիզմը հանգում է տիրող իրականության բացասմանը:

Այսպիսով, հայ նոր թատրոնում ռեալիզմի ու ժողովրդայնության հաղթանակի համար մղվող պայքարում ծնվեց Պարոնյան կատակերգակ-դրամատուրգը, որն իր երկերով մեծապես նպաստեց մեր ժողովրդի ազգային ինքնագիտակցության զարգացմանը և օգնեց նրա պայքարին բուրժուական ապականող բարքերի դեմ: Որպես արվեստագետ նա ոչ միայն մղումներ ստացավ իր շրջապատից՝ դեմոկրատական խավերից, այլև նրանց պարգևեց էսթետիկական վայելք և վստահություն սեփական ուժերի նկատմամբ:

## 2.

Պարոնյան-երգիծաբանի որոտընդոստ հռչակն ստեղծվեց ոչ այնքան կատակերգություններով, որքան ժուռնալիստական գործունեությամբ: Այդ բնագավառում է, որ ամենից առաջ բացահայտվեցին կյանքի, ժամանակի հետ ունեցած նրա սերտ կապը, օրվա հրատապ հարցերին միջամտելու նրա ակտիվությունը, համարձակ ոգին, որոնք այնուհետ դարձան գրողի անհատականության բնորոշ գծերը:

Օժտված լինելով լրագրողի խառնվածքով ու փայլուն տվյալներով՝ Պարոնյանը վաղուց ի վեր փնտրում էր ամբիոն, որտեղից կարողանար խոսել մասսաների հետ, զգաստացնել ու ոգեշնչել նրանց և խարազանել հասարակական չարիքը: Եվ ահա 1871 թվականի նոյեմբերից նա ստանձնում է «Եփրատ» թերթի խմբագրի պարտականությունները: Բայց, չնայած իր եռանդուն ջանքերին, նրան չի հաջողվում արմատապես փոխել թերթի լիբերալ բնույթը, ուստի և մի քանի ամիս անց դադարեցնում է նրա հրատարակությունը:

Հավանորեն հենց այդ միջոցին է, որ Պարոնյանը ծանոթանում ու մտերմանում է ժամանակի դեմոկրատական շարժման առավել աչքի ընկնող գաղափարախոսներից մեկի՝ պայծառանուն Նալբանդյանի հավատարիմ զինակից

Հարություն Սվաճյանի հետ և շուտով դառնում նրա խմբագրությամբ լույս տեսնող «Մեղու» երգիծաթերթի ակտիվ աշխատակիցը: Այստեղ Սվաճյանի անմիջական ազդեցությամբ Պարոնյանն ստանում է իր գաղափարական մկրտությունը և կարճ ժամանակամիջոցում ձևավորվում որպես մարտնչող հրապարակախոս-երգիծաբան:

Արևմտահայ դեմոկրատիայի մարտական տրիբունի և Պարոնյանի անձնական բարեկամական այդ կապը բախտորոշ նշանակություն ունեցավ երկուսի համար էլ: Հանձին Սվաճյանի Պարոնյանը գտավ իր գաղափարական առաջնորդին, որն ընթացք և ուղղություն տվեց իր ստեղծագործական ջանքերին: Սվաճյանն էլ իր հերթին Պարոնյանի մեջ տեսավ իր արժանավոր հաջորդին, որն ընդունակ էր հաղթահարելու բոլոր խոչընդոտները և առաջ տանելու դեմոկրատական շարժման դրոշը: Եվ այդ, մանավանդ, այն պատճառով, որ «Մեղու»-ի խմբագրի խոսքերով ասած՝ Պարոնյանը «գրելու կարող» և «անոթի մնալ հանձն առնող անձ մ՚ էր»՝ պատրաստ իր քարոզած գաղափարների համար նահատակվել հերոսի նման:

Դրանով էլ պետք է բացատրել, թե ինչու Սվաճյանը հենց Պարոնյանին վստահեց իր փայփայած երգիծաթերթի խմբագրությունը, իրեն վերապահելով միայն «անոր օգնականությունը»:

1872 թվականի նոյեմբերից, դառնալով «Մեղու»-ի խմբագիր՝ Պարոնյանը ծավալեց գրական-հրապարակախոսական ակտիվ գործունեություն և շուտով իր վրա բևեռեց հասարակության ուշադրությունը: Հատկապես դեմոկրատական շրջանները խանդավառությամբ ընդունեցին երկրի ներքին կյանքին վերաբերող նրա ֆելիետոնները, երգիծական նովելներն ու աֆորիզմները, որոնց մեջ հեղինակը սուր քննադատության էր ենթարկում ամիրայությունը, բուրժուական լիբերալիզմը, պատրիարքարանն ու ազգային ժողովը: Մերկացնելով նրանց փառամոլությունն ու արծաթասիրությունը, ստորաքարշությունը սուլթանիզմի նկատմամբ՝ Պարոնյանը հանդես եկավ որպես ժողովրդի շահերի համոզված պաշտպան: Աչքի առաջ ունենալով ազգային ժողովում հիսունմեկ երեսփոխան էֆենդիների, իր խոսքերով ասած՝ այդ «դառնազդեստ գայլերու» ստոր վարմունքը ժողովրդի մարդկանց հանդեպ՝ նա կոչ էր անում «ճզմել այդ երեսփոխանաց գլուխը... Անոնք հիսունմեկ ձայն ունին, դու, ժողովուրդ, գիտե՞ս ինչ ձայն ունիս, քու ձայնդ աստծու ձայնն է»:

Ահա այդ ձայնի՝ ժողովրդական զայրույթի ու ցասման հարազատ արտահայտիչները եղան Պարոնյանն ու իր խմբագրած «Մեղուն», որոնց գործունեությունը հետզհետե դառնում էր անհանդուրժելի կղերա-պահպանողական ու լիբերալ ոհմակի համար: Նրանց շուրջը խտանում էր հալածանքի ու թշնամանքի մթնոլորտը և ի վերջո 1874 թ. սկզբներին խափանվեց «Մեղուն»՝ խոր վիշտ պատճառելով և՛ խմբագրին, և՛ նրա անկեղծ բարեկամներին:

Բայց Պարոնյանը չընկրկեց. նա հուսահատվողներից չէր և շատ չանցած սկսեց հրատարակել «Թատրոն» երգիծաթերթը (1874—1877), որն ըստ էության շարունակեց «Մեղու»-ի գաղափարական ուղղությունն ու քաղաքական գիծը և նույնիսկ խորացրեց ու լայնացրեց պայքարի ճակատը:

Այստեղ արդեն Պարոնյանը հետևողական դեմոկրատիզմի դիրքերից անխնա մերկացրեց թե՛ կղերա-պահպանողական ու լիբերալ-բուրժուական գաղափարախոսությունը, թե՛ սուլթանական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականությունը և թե եվրոպական պետությունների դիվանագիտա-



կան խաղերը: Մասնավորապես ռուս-թուրքական պատերազմի հետ կապված անցքերը դարձան նրա ուշադրության առարկան և իրենց ամենօրյա լուսաբանությունը գտան «Թատրոն»-ի էջերում: Առաջին անգամ այստեղ լույս տեսան Պարոնյանի քաղաքական ֆելիետոնները՝ «Կսմիթներ» խորագրով, մի շարք ազգային ջոջերի (Կ. Փանոսյան, Ն. Ռուսինյան, Կ. Ութուճյան, Ք. Ղազարոսյան, Հ. Տերոյենց և ուրիշներ) նվիրված երգիծական դիմաստվերներ, որոնցից հետագայում ստեղծվեց «Ազգային ջոջեր» անմահ երկը, Կոստանդնուպոլսի հայաբնակ թաղամասերի երգիծական նկարագրությունները, ինչպես և ուրիշ պատմվածքներ, ակնարկներ, սրամիտ երկախոսություններ:

Այդ և ուրիշ գործերում Պարոնյանի խայթող գրիչը համարձակ խարազանեց տիրող հակաժողովրդական ռեժիմը և մինչև վերջ մերկացրեց սեփականատիրական հասարակության խոցերն ու արատները, շահագործող վերնախավերի պարազիտային կյանքն ու էգոիզմը: Դրա հետ միաժամանակ նա ցույց տվեց արևմտահայ աշխատավորության, հատկապես գավառաբնակ ժողովրդի ծանր կացությունը թուրքական կառավարության դաժան լծի տակ: Ամենուրեք հարստահարություն, թալան, խոշտանգում, սպանություն. «Գավառաց մեջ,— գրել է Պարոնյանը,— հայերն ապահովություն չունին, ոչ ստացվածքի, ոչ կյանքի և ոչ պատվի. խեղճերը կը կողոպտվին, կը սպանվին, կանպատվվին և այս վիճակին մեջ բազկատարած գթություն կը հայցեն...»:

Սրտակեղեք տողերով նկարագրելով հարազատ ժողովրդի տնտեսական ու քաղաքական անապահով վիճակը, Պարոնյանը խիզախորեն ծառանում էր սուլթանական վայրագ բռնակալության դեմ և բարձրագոչ հնչեցնում արդարության ու ազատության ձայնը: Նա հավասարապես դատապարտում էր թե աշխարհիկ ու հոգևոր հայ ցեցերին, և թե նրանց թիկունքին կանգնած թուրք կառավարողներին, որոնք դաժանորեն հարստահարում էին աշխատավոր մասսաներին և նրանց պահում աղքատության ու գերության մեջ: Պարոնյանի կարծիքով չպետք է գթություն հայցել ոչ պատրիարքարանից և ոչ էլ Եվրոպական տերություններից, այլ «դանակը միայն կրնա լուծել» այն խնդիրները, որ ծառացած են ժողովրդի առջև: Դրա համար էլ նա, որքան հնարավոր էր դաժան գրաքննության պայմաններում, թափանցիկ ակնարկներով պայքարի էր կոչում ժողովրդին ընդդեմ բռնակալ ուժերի, որոնց խորտակման մեջ էր տեսնում ոչ միայն իր հայրենակիցների, այլ սուլթանիզմի լծի տակ հեծող մյուս ժողովուրդների ազատագրման հուսալի հեռանկարը:

Ուստի բնավ զարմանալի չէ, որ իր «Թատրոնը» ևս բուռն ատելություն առաջացրեց վերնախավերի շրջանում: Հայ «ազգային ջոջերն» ու կղերամիտ տարրերը միասնական ճակատ կազմած գրոհի ելան նրա խմբագրի դեմ: Բավական է ասել, որ իր գոյության եռամյա ժամանակամիջոցում նշված պարբերաթերթը ութ անգամ փակվել է. ««Թատրոն» տարին վեց ամիս գոց էր»,— հետագայում սրամտորեն գրել է Պարոնյանը: Մշտական հալածանքների պատճառով նա ստիպված է լինում դադարեցնել իր սիրած երգիծաթերթի հրատարակությունը, որի վերջին համարը լույս տեսավ 1877 թվականի հունիսի 13-ին:

Ի դեպ, «Թատրոնին» զուգընթաց Պարոնյանը հրատարակում էր նաև «Թատրոն. բարեկամ մանկանց» մանկական երկշաբաթաթերթը (1876—1878 թթ.), որն իր տեսակի մեջ նորություն էր հայ իրականության մեջ: Պատկերազարդ այդ պարբերականն արժանի է հատուկ ուշադրության որպես հայ

մանկական հրատարակության առաջին ծիծեռնակ։ Իր հարուստ բովանդակությամբ ու գեղեցիկ ձևավորմամբ այն վկայում է, թե որչափ ուշադիր ու հոգատար վերաբերմունք է ցուցաբերել Պարոնյանը մատաղ սերնդի կրթության ու դաստիարակության հարցերի նկատմամբ և ինչպիսի նուրբ ճաշակ ու մանկավարժական հոտառություն է ունեցել նա։ Բայց մանկական այս թերթին ևս վիճակված չէր տևական կյանք, այս անգամ էլ նյութական անապահովությունից հարկադրված երգիծաբան-խմբագիրը դադարեցնում է նրա հրատարակությունը (1878 թ. հունիսի վերջերին)։

Պարոնյանն այնուհետև սկսում է աշխատակցել ուրիշ պարբերականների («Մասիս», Փորձ», «Փարոս Հայաստանի», «Արձագանք» և այլն), որոնց էջերում տպագրում է հրապարակախոսական ու գեղարվեստական բնույթի մի շարք արժեքավոր երկեր։

Ութսունական թվականների սկզբից թեև Թուրքիայում ուժեղացավ մահաշունչ ռեակցիան և անասելի ծանր պայմաններ ստեղծվեցին հրապարակախոսական գործունեության համար, Պարոնյանն, այնուամենայնիվ, գտավ պայքարի նոր զենքեր, որոնցով սպառազեն, վերստին նետվեց գաղափարամարտերի ասպարեզ։ Զրկված լինելով բացահայտ և ազատ արտահայտվելու հնարավորությունից, նա դիմեց այլաբանության, եզոպոսյան լեզվի, երբ, ինչպես Շչեդրինը կասեր՝ «միտքը պետք է սքողվեր և խորամանկեր»։ Դրա արտահայտությունը եղավ «Ծիծաղ» երգիծաթերթը, որ Պարոնյանն սկսեց հրատարակել 1883 թ. հունվարից։

Այդ, ինչպես և դրան հաջորդող «Խիկար» հանդեսը (1884—1888 թթ.), նախորդ պարբերականների նման, լույս էին տեսնում նյութական ու բարոյական հալածանքների մթնոլորտում։ Դրանով պետք է բացատրել, թե ինչու «Ծիծաղի» գոյությունը տևեց ընդամենը մի քանի ամիս, իսկ «Խիկարը» ընդհատվեց ավելի քան մեկ տարով։

Սուլթանական ռեժիմի համար «վտանգավոր մարդ» ճանաչված Պարոնյանին թեև այնուհետև արգելվեց հրատարակել սեփական թերթ, բայց անընկուն երգիծաբանը երբեք չընկճվեց և, մանավանդ, չլռեց։ Նա մահացու էր համարում ժողովրդի տառապանքի հանդեպ լուռ ու կույր մնալը. «Համր ըլլալը բան մը չէ. լեզու ունենալ և ժողովրդյան իրավանց պաշտպանության համար չխոսելը համր ու վասակ ըլլալ է»։

Այդպիսի համոզմունքով ապրեց ու գործեց Պարոնյանն իր ողջ կյանքում, որն անցավ տառապանքի ու պայքարի մեջ։

### 3.

Ծնունդ առնելով հայ դեմոկրատական շարժման երկունքից՝ Պարոնյանը շուրջ երկու տասնամյակ տևող իր գրական-հրապարակախոսական գործունեության ընթացքում արտացոլեց մեր ժողովրդի պատմական կեցության մի ամբողջ ժամանակաշրջան՝ ռևոլյուցիոն-դեմոկրատական զարթոնքից մինչև արդյունաբերական պրոլետարիատի առաջացումը, մինչև բանվորական շարժման սկիզբը։

Իրադարձություններով հարուստ այդ ժամանակաշրջանը նրա գրչի տակ պատկերվեց արտասովոր լայնքով ու խորությամբ։ Հանճարեղ արվեստագետի սրաթափանց հայացքով նա ընդգրկեց անցյալ դարի երկրորդ կեսի արևմտա-



հայ իրականությունն իր բազմազան կողմերով. հասարակական տարբեր խավերի ու ազգային հաստատությունների (վարչական մարմիններ, կրոնական ժողովներ, դպրոց, թատրոն, մամուլ, զանազան ընկերություններ և այլն) կյանքն ու գործունեությունը, սոցիալական հակամարտությունները, տիրող կարգերի նեխվածությունը, սուլթանական բարբարոս ռեժիմն ու եվրոպական գաղութարարների գիշատիչ էությունը — այդ և ուրիշ երևույթներ գեղարվեստական ցայտուն կերպով մարմնավորվեցին Պարոնյանի երկերում։ Դրանց մեջ հանդես եկան աշխարհականն ու հոգևորականը, սեփականազրկված պանդուխտն ու բթամիտ մեծատունը, արհեստավորն ու ամիրան, թաղականն ու փաստաբանը, վաճառականն ու դիվանագետը, գրչի մարդն ու միջնորդ կինը, ընտանիքն ու պատրիարքարանը, գավառն ու քաղաքը, մի խոսքով՝ գրողի ապրած ժամանակն ու միջավայրը իրենց բնորոշ տիպերով ու երանգներով։ Նրա աչքից չվրիպեց ժամանակի քիչ թե շատ որևէ աչքի ընկնող երևույթ, լիներ դա կենցաղային, թե քաղաքական բնույթի։ Հրապարակախոսի արթուն գրչով, արվեստագետի վարակիչ շնչով, երգիծաբանի թունոտ խոսքով Պարոնյանը արձագանքեց ընթացիկ իրադարձություններին և այդ ամենը մարմնավորեց այնպիսի չխամրող կերպարներում ու պատկերներում, որոնք այսօր էլ շատ կողմերով պահպանել են իրենց ճանաչողական ու գեղարվեստական արժեքը։

Սխալ կլիներ կարծել, թե Պարոնյանի երգիծանքի նյութը միայն պոլսահայ կյանքն է իր հոռի երևույթներով։ Ճիշտ է, նրա նկարագրած անցքերից շատերը տեղի են ունենում Պոլսում, բայց հեղինակը չի մնում տեղայնության նեղ շրջանակներում մխրճված։ Նա կարողանում է առօրյական փաստերից բարձրանալ մինչև տիպական խոշոր ընդհանրացումները, որոնք դրսևորում են սեփականատիրական հասարակարգի բնորոշ գծերը։ Այդպիսիք են Պարոնյանի կերտած տիպերը (Թափառնիկոս, Պաղտասար աղբար, Անուշ, Կիպար, Օգսեն, Աբիսողոմ աղա և այլն), որոնցով բացահայտված ու մերկացված են բուրժուական միջավայրի այլանդակությունները։ Դրանցից յուրաքանչյուրը, լինելով տիպական բնավորություն տիպական հանգամանքներում, արտահայտում է կապիտալիստական հարաբերությունների զարգացման պրոցեսը և դրանից առաջ եկած սոցիալական հակասությունները։

Դրա մեջ է Պարոնյանի ռեալիստական արվեստի ուժը։ Նրան հաջողվել է կենսական փաստերի գեղարվեստական ընդհանրացման միջոցով արտացոլել դարաշրջանի կյանքն ու կենցաղը, վեր հանել տիրող սոցիալ-քաղաքական անհավասարությունն ու դրան ուղեկցող անարդարությունները։ Երգիծաբանի կողմից անխնա մերկացվել ու բացավել է շահագործման ու բռնության վրա հիմնված հասարակարգը, որտեղ մարդու «ոտները համբույր կընդունին, եթե հզոր են, իսկ փայտ՝ եթե տկար են»։

Որպես ստեղծագործող Պարոնյանն աչքի է ընկնում ոչ միայն ընդգրկման լայն դիապազոնով, այլև առաջ քաշած պրոբլեմների բազմազանությամբ ու ակտուալությամբ։ Նա իր երկերում արծարծել է սոցիալական ու քաղաքական նշանակություն ունեցող բազմապիսի հարցեր, որոնց գեղարվեստական լուսաբանության մեջ դրսևորվել է հարուստ կենսափորձ, նուրբ զգացում և գաղափարական նպատակասլացություն։ Ինչի մասին էլ գրել է նա՝ ընտանիքի թե բուրժուական քաղաքակրթության, հայ «ազգային ջոջերի», թե թուրքական պաշտոնեության, միևնույն է, բոլոր դեպքերում էլ նա ղեկավարվել է ժողո-

վրդի կենսական շահերով և այդ տեսանկյունից գնահատել ամեն մի երևույթ։ Նրան խորթ էր պասսիվ հայեցողական վերաբերմունքը դեպի կյանքը, որի ճառագայթները ոչ միայն ընդունում, այլև անդրադարձնում էր իսկական արվեստի կախարդական ուժով։ Սուր դիտողականություն, խոր ճշմարտացիություն, մերկացնող պաթոս և դեմոկրատական լայն աշխարհայացք—ահա թե ինչով է հատկանշվում Պարոնյանի ստեղծագործական անհատականությունը։ Նա եղավ իր ժամանակի ձայնը, հարազատ ժողովրդի պատգամախոսը, որը հումանիստական իդեալներով ոգեշնչված՝ պայքարի ելավ շրջապատող զազրելի իրականության դեմ և ծաղրի ու ծիծաղի միջոցով մինչև վերջ մերկացրեց շահագործող դասակարգերի գիշատիչ էությունը։

Շարունակելով ու զարգացնելով իր մեծ նախորդների մարտական ավանդները՝ Պարոնյանը պատմա-հասարակական կյանքի նոր պայմաններում հայ երգիծանքը հասցրեց աննախընթաց բարձրության։ Նա հմտորեն օգտագործեց երգիծական տարբեր ժանրեր ու տեսակներ, ինչպիսիք են՝ ֆելիետոն, այլաբանական զրույց, օրագրություն, դիմանկար, պատմվածք, պարսավագիր, մի խոսքով՝ երգիծական մանրապատումից մինչև լայնակտավ կատակերգությունն ու վեպը։ Ժանրային այդ հարստությունը նրա մոտ ստեղծվեց հրապարակախոսական եռուն գործունեության շնորհիվ, երբ նա ստիպված էր որոնել արտահայտչական այնպիսի ձևեր, որոնք ընդունակ են տվյալ պահին առավելագույն ուժով ներգործելու ընթերցողի վրա, ակտիվացնելու նրա միտքը և սրելու ուշադրությունը։ Դրանով պետք է բացատրել, թե ինչու Պարոնյանն իր գրական կարիերան սկսեց կատակերգություններով ու հրապարակախոսական մերկացումներով, որոնք նրան շուտով հանգեցրին իրականության գեղարվեստական լայն ընդհանրացումների։

Այդ տեսակետից առանձնապես բարձրարժեք երկ է «Ազգային ջոջերը» (1879—1880 թթ.), որը համաշխարհային երգիծական գրականության անմեռ հուշարձաններից մեկն է։

Ժառանգելով «Երկու տողի» պաթոսը՝ Պարոնյանը սպանիչ ծաղրի ենթարկեց հայ կղերա-պահպանողական հոսանքը ի դեմս Տերոյենցի, Նար-Պեյի, Հասունյանի և այլ գործիչների, որոնց հատուկ են խավարամտությունը, շահամոլությունը, քծնանքը, հակաժողովրդական վարքագիծը։ Երգիծաբանի դիպուկ խոսքերով ասած՝ հայ կղերը «միայն որովայնին կը ծառայե և ազգասիրությունը միշտ յուր կոկորդին մեջ կը փնտռե»։ Իսկ ազգային նկարագիրը կորցրած հայ ամիրայության ստորահաճությունը թուրքական բռնակալությանը՝ մերկացված է Կարապետ պեյ Երամյանին նվիրված հանրահայտ սեղմ կենսագրականում, ուր կարդում ենք. «Մզկիթ մը շինել տված է»։ Ավելին. Պոլսի մեծահարուստ էֆենդիները կարիերիստական նկատառումներից մղված, կարող են «ազգային իրավունքներն աճուրդի հանել, կարծելով, թե այս ընթացքով ավելի բարձր աստիճաններու կը հասնին»։

Նույնպիսի ժխտական վերաբերմունք է ցուցաբերել Պարոնյանը դեպի հայ լիբերալիզմը, որը, համակերպվելով ստեղծված իրադրությանը, հաճախ քողարկվում էր խաբուսիկ ֆրազներով և փորձում մոլորեցնել ժողովրդին։ Համարձակ կարելի է ասել, որ Նալբանդյանից հետո մեզանում ոչ ոք այնպիսի ջախջախիչ հարվածներ չի հասցրել հայկական լիբերալիզմին և նրա բերան հանդիսացող բուրժուական ինտելիգենցիային, ինչպես Պարոնյանը։ Նա պատռեց այդ հոսանքի դիմակը և ցուցադրեց նրա լպրծուն դեմքը, հանձինս Արծ-



րունու, Խոճասարյանի, Ռուսինյանի և ուրիշների, որոնք շարունակ խոսում էին ժողովրդի անունից, բայց գործում նրա շահերին հակառակ։ Խոսքի և գործի աղաղակող հակասություն, տիրասիրություն, հարմարվողականություն և անսկզբունքայնություն — ահա թե ինչպիսի գծերով են բնութագրվում լիբերալները, որոնցից մեկի մասին Պարոնյանը գրել է. «Այսօրվան պաշտպանած սկզբունքը հետևյալ օրը կը հարվածեր և վաղվան պաշտպանելիք սկզբունքը օր մը առաջ կը հարվածեր... այնքան շուտ սկսավ փոխել յուր կարծիքները, որ ընթերցողն ալ ետևեն չը կրցավ հասնիլ»։

Դժվար չէ նկատել, որ հասարակական տարբեր խմբակցության պատկանող մարդկանց ու նրանց միջավայրի երգիծական բնութագրմամբ Պարոնյանը անողոքաբար մերկացնում էր ազգի կյանքն ու ճակատագիրը տնօրինող տգետ ու սնափառ աղաներին։ Շեքսպիրյան սրամտությամբ նա ցույց էր տալիս, որ «ամեն ինչ այն չէ, ինչ որ երևում է», որ ազգային երևելիների «դեմքը սրտին հետ հակասության մեջ է»։

Պարոնյանը, սակայն, չսահմանափակվեց միայն ազգային կյանքի շրջանակներով։ Նրա ծաղրի մտրակը շաչեց բոլոր և ամեն տեսակի ճնշողների ու բռնակալների վրա՝ հայ ազգային ջոջերից մինչև թուրք փաշաները, խարդախ դիվանագետից մինչև Փարիզյան կոմունայի դահիճը։ Նա ամբողջ ուժով ծառացավ սուլթանական վարչակարգի «աքսորանոց քաղաք» Պոլսի և ժողովուրդների բանտ դարձած Թուրքիայի դեմ. «Թուրքիան բանտ... բանտին մեջ բանտ»,— այսպես է բնութագրել հանճարեղ երգիծաբանը վայրի կամայականությունների ու տեռորի այդ երկիրը, որտեղ ոտնահարվում, նվաստացվում էին թե ազգային զգացումները և թե մարդկային տարրական արժանապատվությունը։ Նա կոչ էր անում ոչնչացնել տիրող բռնապետական ռեժիմը կամ, ինչպես ինքն էր ասում՝ լիկվիդասիոն (լիկվիդացիա) անել այն։ Նկատի ունենալով Պոլսի վաճառականների պարբերաբար սնանկանալը և դրա հետևանքով ամենուրեք խանութների ճակատին քաշված ճերմակ լաթը՝ վրան գրված լիկվիդասիոն, Պարոնյանը սրամտորեն գրել է. «Միայն Բ դռան վրա լիկվիդասիոն չի գրված։ Լավագույն չէ՞ր լինի, եթե քաղաքապետությունը այդ լաթերը ժողովել տար և մի մեծ լաթ կարել տալով վրան ոսկեզօծ տառերով լիկվիդասիոն դներ և այդ լաթը իբրև դրոշակ մայրաքաղաքիս դռներուն վրա պարզեր»։

Նույնպիսի կրքոտությամբ Պարոնյանը մերկացրեց նաև արևմտաեվրոպական պետությունների դիվանագիտական խորամանկ քաղաքականությունը, որ դիմակավորվում էր քրիստոնյաների դրությունը բարելավելու խաբուսիկ ծխածածկույթով. «դիվանագետներ, թագավորներ, կայսրեր, ամենքը միաբերան «քրիստոնեից վիճակին բարվոքում» կըսեն, ի վերա այսր ամենայնի ես իմ վիճակիս մեջ բարվոքում մը չեմ կրնար կոր տեսնիլ»։ Նա ատելացայտ տողերով նշավակեց հատկապես անգլիական գաղութարարների զավթողական քաղաքականությունը. «Անգլիացիներու քաղաքականությունը կ'սե նախ իմ շահս, ապա ուրիշներունը»։

Ակնարկելով եվրոպական նվաճողների ներթափանցումը Թուրքիա և սուլթանական կառավարության ստորահաճությունը նրանց նկատմամբ՝ երգիծաբանը մի այլ առիթով գրել է. «Դարդանել ալ այս օրերս կընքվեր՝ քրիստոնյա է եղեր»։

Պարոնյանն իր քաղաքական երգիծանքի ոլորտն է առել և ամերիկյան

միսիոներներին, որոնք քրիստոնեություն տարածելու պատրվակով փորձում էին մոլորեցնել հայ ժողովրդին և բթացնել նրա ազգային ինքնագիտակցությունը։ Դիմելով այդ խաբեբաներին, նա բուռն ցասմամբ գոչել է. «...Հերիք զմեզ մեր մեջը բաժանեցիք, պառակտեցիք, հերիք ազգային հառաջադիմության առջև ամբարտակներ բարձրացուցիք, հերիք հանուն Քրիստոսի՝ եղբայր եղբորմեն, հայրն իր զավակեն բաժանեցիք, հերիք ազգին հիմերն քանդել, կործանել աշխատեցաք...»։

Պարոնյանական երգիծանքի այդ և ուրիշ կողմեր մինչև օրս էլ պահպանել են իրենց հնչեղությունը և զգաստության են կոչում մեզ իմպերիալիստական տերությունների և նրանց ծառայագրված ամեն տեսակի միսիոներների ոտնձգությունների հանդեպ։

4.

Գրողի իր անբիծ վարքագծով, մարտիկ-քաղաքացու իր շիտակությամբ, ժողովրդին մատուցած իր վաստակի անմահության գիտակցությամբ՝ Պարոնյանը գրել է. «Դուն չկրցար ինձ հաղթել և մեռցունել զիս, ո՛վ մահ։ Ահա իմ անունս անմահ մնացած է երկրի վերա։ Ահա ինձ համար դեռ կըսեն և կը պատմեն այն մեծագործությունները, զորս կատարեցի կենացս մեջ»։

Պատմությունը լիովին հաստատեց մեծ երգիծաբանի այդ հեռաթափանցությունը. Նրա համար ժամանակը չդարձավ և չէր կարող դառնալ մոռացության գետ, որովհետև նրա գրական սխրագործությունը պատկանում է ոչ թե անցյալին, այլ ապագային։ Նա ևս պարզ տեսնում էր դեռևս մշուշով ծածկված հեռավոր օրերը, զգում պատմական առաջընթացի քայլերը, ուստի և Նալբանդյանի նման իր խոսքը հղում գալիք սերունդներին. «Կը համբերեմ կոր, գիտնալով՝ որ իմ խոսքերուս արժեքը ասկից հարյուր տարի ետքը պիտի ճանաչվի, իմ խոսքերուս արդյունքը իմ թոռներս (աստված պահե զինք արևելյան խնդրեն) պիտի վայելեն»։

Միայն ժողովրդի հետ խորապես կապված, նրա արմատական շահերով ապրող և նրա լուսավոր ապագայի համար անձնվիրաբար մարտնչող արվեստագետը կարող էր տեսնել իր խոսքերի արժեքն ու արդյունքը հարյուր տարի հետո։

Հենց այդպիսի արվեստագետ էր Պարոնյանը, որն անցնելով մի ամբողջ դարամիջոց, այսօր ներկայանում է որպես մեր մեծ ժամանակակիցը։

Հանճարեղ երգիծաբանի մահվանից անցել է ավելի քան յոթ տասնամյակ, և այդ ժամանակամիջոցում շատ բան է փոխվել աշխարհում. վաղուց պատմության գիրկն է անցել նրա նկարագրած կյանքը, բայց նա մոտ ու հարազատ է սովետական մարդկանց իր ստեղծագործության դեմոկրատական-հումանիստական բովանդակությամբ, կենսական ճշմարտացիությամբ, պայծառ լավատեսությամբ և գեղարվեստական հաճույք պատճառելու անսպառ ուժով։ Նրա երկերն օգնում են դաստիարակելու մարդկանց ճշմարիտ հայրենասիրության, ժողովրդի շահերին նվիրվելու, զգաստության և դժվարությունները հաղթահարելու ոգով։ Կարդալով այդ երկերը՝ սովետական ընթերցողն առավել հստակորեն է ճանաչում մեր ժողովրդի անցյալը, բուրժուական աշխարհի հակամարդկային էությունը և էլ ավելի խորն է զգում ու գիտակցում



մեր մեծ դարաշրջանի վեհությունը։ Ահա թե ինչու մեր օրերում, սոցիալիստական ազգային կուլտուրաների ծաղկման դարաշրջանում ոչ միայն չնվազեց, այլև բուռն թափով աճեց հետաքրքրությունը դեպի Պարոնյանը. Նա արժանացավ համաժողովրդական ճանաչման և նրա ստեղծագործությունը դարձավ մասսաների սեփականությունը։ Պարոնյանի երկերը հրատարակվեցին տասնյակ հազարավոր օրինակներով, որի մասին երազել անգամ չէր կարող անվանի հեղինակը։

Սովետական շրջանում Պարոնյանի երկերից մի քանիսը թարգմանվեցին և հրատարակվեցին ռուսաց և այլ լեզուներով։ Հատկապես ռուսերեն թարգմանությունների շնորհիվ հայ երգիծաբանի ստեղծագործություններն այժմ դառնում են սովետական բազմազգ ժողովուրդների սեփականությունը։ Դրանով իսկ, անցյալում միայն ազգային ճանաչում գտած գրողը հնարավորություն է ստանում դուրս գալու միջազգային ընթերցասրահ, որի մասին սեփականատիրական հասարակարգում երևակայել անգամ չէր կարող փոքր ու ճնշված ժողովրդի նույնիսկ մեծ գրողը։

Պարոնյանի ծիծաղը պայքարի է կոչում այն ամենի դեմ, ինչ հին է ու հետամնաց և արժանի կործանման։ Նրանից կարելի է և պետք է սովորել անհաշտություն թերությունների նկատմամբ, ժամանակի շնչով ստեղծագործելու հմտություն և երգիծական հնարանքների բազմազանություն։

Հ. Պարոնյանը ապրել ու գործել է ոգեշնչված իր ժամանակի առաջավոր գաղափարներով, հանուն ժողովրդի բարօրության և իր ստեղծագործական վաստակով ուղիներ հարթել գալիք օրերի առաջ։ Դրանով էլ նա դարձել է մեր պանծալի նախահայրերից մեկը, որին սիրով ու երախտագիտությամբ է հիշում սովետական սերունդը։





# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՆՎԱՃԵԼ ԱՌԱՋԱՎՈՐ ԲՆԱԳԾԵՐ

ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումների կենսագործման համար անհրաժեշտ է, որ գյուղական պարտիական բոլոր աշխատողներն ավելի նպատակասլաց ու օպերատիվ ղեկավարեն գյուղատնտեսության բոլոր ճյուղերը, կատարելագործեն, նոր պահանջների մակարդակին հասցնեն պարտիական ու տնտեսական ղեկավարման մեթոդները: «Պարտիական աշխատողները,— ասված է ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումներում,— այժմյան պայմաններում պետք է իմանան ո՛չ միայն պարտիայի գաղափարներն ու ծրագիրը, այլև կոնկրետ կերպով, կատարելապես իմանան իրենց գործը, արտադրության ճյուղը, որակյալ կերպով ղեկավարեն տնտեսությունը, նրանք պետք է ո՛չ միայն պատմեն նորի մասին, այլև կարողանան ցույց տալ, թե ինչպես պետք է գործնականում կազմակերպել նորի, առաջավորի արմատավորումը արտադրության մեջ»:

Դեռևս փետրվարյան պլենումին նախորդած ժամանակաշրջանում Իջևանի գյուղական արտադրական պարտիական կոմիտեն և սկզբնական պարտիական կազմակերպությունները որոշակի աշխատանք էին կատարել գյուղատնտեսական կադրերին տնտեսական խոր գիտելիքներով զինելու ուղղությամբ:

Սկզբնական պարտիական կազմակերպություններում կոմպլեկտավորվել և այժմ գործում են գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող 20 խմբակ ու սեմինար, 14 ագրոզոո-տեխմինիմումի դպրոց, որտեղ գյուղատնտեսության ավելի քան 700 աշխատողներ հարստացնում են իրենց տնտեսական և գյուղատնտեսական գիտելիքները. երրորդ տարին է, ինչ պարտիական կոմիտեին կից գործում է տնտեսագիտական համալսարանը, որի գյուղատնտեսության էկոնոմիկայի ֆակուլտետի մշտական ունկնդիրներն են գրեթե բոլոր սովխոզների ու կոլտնտեսությունների միջին և ղեկավար աշխատողները: Գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող պրոպագանդիստների, սեմինարների ղեկավարների, կոնսուլտանտների որակավորումը բարձրացնելու նպատակով գործում է գյուղատնտեսության էկոնոմիկայի մշտական գործող սեմինարը:

Պարտիական կոմիտեն միաժամանակ որոշակի աշխատանք կատարեց արտադրության վճռական տեղամասերը բանիմաց ու հմուտ կադրերով ապահովելու ուղղությամբ: Օրինակ, Հախկխլուի, Խաշթառակի, Գետաշենի, Սարիգյուղի կոլտնտեսություններում վարչության նախագահներ առաջադրվեցին արտադրության հմուտ կազմակերպիչներ. նշված և մի շարք այլ տնտեսություններ ամրապնդվեցին գյուղատնտեսության մասնագետներով. վերանայ-



վեց գյուղատնտեսության միջին հրամանատարական կազմը: Գործնական և տեսական անհրաժեշտ ունակություններ ձեռք բերած մի խումբ աշխատողներ փոխարինեցին այն բրիգադավարներին ու ֆերմաների վարիչներին, որոնք չէին կարողանում ապահովել արտադրական առաջադրանքների կատարումը:

Արտադրական վարչության տնտեսություններում սոցիալիստական մրցությանը գործարար բնույթ տալու նպատակով օգտագործվում են բարոյական և նյութական խրախուսման բազմապիսի ձևեր: Պարտիական կոմիտեն և «Գիտելիք» ընկերության շրջանային բաժանմունքը պարբերաբար մասսայականացնում են գյուղատնտեսության առաջավոր փորձը: Սահմանվել են միջկոլտնտեսային, միջբրիգադային փոխանցիկ վիմպելներ ու դրոշներ, ինչպես նաև «Անվանի հովիվ», «Անվանի ծխախոտագործուհի» և այլ պատվավոր կոչումներ, նյութական խրախուսանքի տարբեր ձևեր, որոնք որոշակի դեր են խաղում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում:

Սակայն փետրվարյան պլենումի որոշումների կենսագործման ուղղությամբ պարտիական կոմիտեի և սկզբնական պարտիական կազմակերպությունների կատարած կազմակերպական ու քաղաքական աշխատանքը դեռևս անբավարար է և այն չի ապահովում բոլոր տնտեսությունների ինտենսիվ վարումը: Ավելին, ոչ բոլոր տնտեսություններն են, որ կարողանում են ռացիոնալ օգտագործել իրենց ունեցած միջոցներն ու հնարավորությունները: Այդ է պատճառը, որ միևնույն բնակլիմայական պայմաններում գտնվող առանձին կոլտնտեսություններ բոլորովին տարբեր արդյունքների են հասնում գյուղատնտեսական մթերքների արտադրության գործում:

Անցած տարի Լալիի, Ջողազի, Հախկխլուի և մի շարք այլ տնտեսություններում ֆուրաժային կովի կաթնատվությունը կազմեց 870—980 կգ., մինչդեռ արտադրական վարչության մասշտաբով յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը կազմել էր 1212 կգ, իսկ առաջավոր կթվորուհիներ՝ Սարիգյուղ Դարբինյանը (Թալա), Արեգնազ Փիրումյանը (Կույբիշև), Լիզա Ճաղարյանը (Ենոքավան) և ուրիշներ իրենց խնամած յուրաքանչյուր կովից ստացել էին 2000—2200 կգ կաթ: Եթե բոլոր տնտեսություններում կովերի կաթնատվությունը հասցվի վարչության միջին տնտեսության կովերի կաթնատվության մակարդակին, որը դեռևս ցածր է ունեցած հնարավորություններից, ապա հնարավոր կլինի լրացուցիչ կերպով արտադրել 340 տոննա կաթ:

Անհրաժեշտ է հանգամանորեն վերլուծել գյուղատնտեսական արտելների էկոնոմիկան, բացատրել տվյալ տնտեսության ետ մնալու պատճառները: Այդպես նախապատրաստվեց Սևքարում հրավիրված պարտիական կոմիտեի հերթական բյուրոյի նիստը: Մինչ այդ պարտիական կոմիտեի և արտադրական վարչության հատուկ հանձնաժողովը մի քանի օր շարունակ ուսումնասիրում էր Սևքարի տնտեսությունը: Հայտաբերվեցին սովխոզի տնտեսական արդյունավետ գործունեությանը խանգարող հանգամանքները:

1963 թվականին այստեղ օգտագործվել է 83,4 տոննա հանքային և 900 տոննա օրգանական պարարտանյութ, նախատեսված, համապատասխանաբար, 241 և 3000 տոննայի դիմաց: Դեռևս անբավարար է օգտագործվել հողերը ջրովի դարձնելու հնարավորությունները, ինչպես նաև տրակտորային պարկի կարողությունը. մեկ պայմանական տրակտորի արտադրողականությունը կազմել է 245 հեկտար, պլանով նախատեսված 325-ի փոխարեն: Անասունները միջակից ցածր գիրությամբ վաճառելու հետևանքով սովխոզը զրկվել է 4809

ռուբլի եկամուտ։ Վատ է կազմակերպվել արհեստական սերմնավորումը, որի պլանները կատարվել են՝ խոշորինը՝ 24, մանրինը՝ 56,4 տոկոսով։ Այստեղ դաշտավարության մեջ չի կիրառվում լրացուցիչ վարձատրության սկզբունքը, իսկ անասնապահները չեն վարձատրվում ըստ անասունների քաշաճի։ Անասունների քաշաճի պլանը 195 ցենտներով թերակատարելով հանդերձ անասնապահներն ստացել են բարձր վարձատրություն։ Ծխախոտի քաղի, շարի, չորացման, տեսակավորման և հանձնման աշխատանքները ագրոտեխնիկական պահանջներին համապատասխան չկատարելու հետևանքով հումքի մի մասը ցածրորակ է եղել, որից տնտեսությունը կրել է 1020 ռուբլու վնաս։

Այստեղ հաշվառումը ևս չի կատարվում այնպես, ինչպես հարկն է, որը և խանգարում է կանոնավոր աշխատանքին։ Տնտեսական վերլուծության միջոցով բացահայտված այս և նման այլ թերությունների վերացումը և ներքին ռեզերվների օգտագործման ուղղությամբ մշակված միջոցառումների իրականացումը մեծ չափով կխթանեն տնտեսության զարգացմանը։

Վարչության գյուղատնտեսական մյուս արտելներում ևս կատարվեցին տնտեսական խոր վերլուծություններ, վեր հանվեցին առանձին ճյուղերի ետ մնալու պատճառները, ի հայտ բերվեց դրական փորձը։ Արտադրական վարչությունում աշխատում են գյուղատնտեսության շատ առաջավորներ, որոնք արտադրության մեջ քիմիայի ներդրման, ոռոգման ցանցի ընդլայնման, կոմպլեքսային մեքենայացման, ինչպես նաև գյուղատնտեսության առաջավոր փորձի ու գիտության նվաճումների արմատավորման շնորհիվ զգալի արդյունքների են հասել։

Լալի գյուղի կոլտնտեսության առաջավոր մեխանիզատոր Հրանտ Տաղբաթյանն անցյալ տարի վարչության մեխանիզատորների մեջ առաջինը մեքենայացրեց ծխախոտի դաշտերի փխրեցման, պարարտացման և բույսերի բուժման աշխատանքները, որոնց շնորհիվ տնտեսվեց զգալի քանակությամբ աշխոր ու բանվորական ուժ։ Նա, միաժամանակ, մեքենաներով մշակեց 3 հեկտար եգիպտացորեն. հեկտարից միջին հաշվով ստացավ 122 ցենտներ եգիպտացորենի հատիկ։

Ջողազի կոլտնտեսության մեխանիզատորները 97 հեկտար եգիպտացորենի ամբողջ մշակությունը կատարեցին մեքենաներով. դրա համար պահանջվեց 36 մարդ-օր և ծախսվեց 90 աշխօր։ Արտադրված 2363 ցենտներ հահանքի... հատիկի համախառն բերքի յուրաքանչյուր ցենտների վրա ծախսվեց 0,016 մարդ-օր՝ զգալի չափով պակաս, քան այդ աշխատանքները ձեռքով կատարելիս։ Ռևազլուի անվանի եգիպտացորենագործները ոռոգման սիստեմի, հանքային և օրգանական պարարտանյութերի ճիշտ օգտագործման շնորհիվ վերջին տարիների ընթացքում հեկտարից միջին հաշվով ստանում են 70-ից 100 ցենտներ եգիպտացորենի հատիկ։

Վարչության տնտեսություններում այդպիսի աշխատողներ շատ կան. նրանց հաջողության գաղտնիքը հողից բարձր արդյունք ստանալու միջոցների ինտենսիվ օգտագործումն է։ Այս առումով ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի կարևորագույն փաստաթղթերի հանգամանալի ուսումնասիրությունը նոր մտահղացումներ առաջացրեց։ Անհրաժեշտ էր գտնել և իրագործել պարտիական քաղաքական և կազմակերպական աշխատանքի այնպիսի ձևեր ու մեթոդներ, որոնք իրենց նպատակասլացությամբ և գործնական բնույթով ամբողջապես փոխարինեին այդ գործում նկատվող շաբլոնին և ֆորմալիզմին,



կարողանային բոլոր աշխատողներին մղել տնտեսության ինտենսիվ վարման։ Փետրվարյան պլենումից հետո պարտիական կոմիտեին կից ստեղծվեց մշտական գործող սեմինար։ Սեմինարին մասնակցում են կոլտնտեսային ու սովխոզային սկզբնական պարտիական կազմակերպությունների առաջին և երկրորդ քարտուղարները, ինչպես նաև որոշ պարտիական խմբերի կազմակերպիչներ։ Պարապմունքները տեղի են ունենում ամիսը մեկ անգամ՝ կոլտնտեսային ու սովխոզային պարտիական կազմակերպություններից մեկում։

Սեմինարից առաջ պարտիական կոմիտեի գաղափարական ու կազմակերպական բաժնի աշխատողներից, տեսուչ-պարտկազմակերպիչներից, սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներից կազմված խմբերը մի քանի օր մանրակրկիտ ուսումնասիրում են տվյալ պարտիական կազմակերպության գործունեությունը, հատուկ ուշադրություն նվիրելով այն հարցին, թե ինչ է արվում ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան ու փետրվարյան պլենումների առաջադրանքների կատարման համար։ Այդ ուսումնասիրությունների նպատակը ոչ թե թերություններն արձանագրելն է, այլ կոնկրետ պայմաններից ելնելով միջոցառումներ մշակելը, նրանց վերացման ուղիների ճշտումը և տեղերում օգնություն կազմակերպելը, պարտիական կազմակերպության բյուրոյի անդամներին, խմբերի կազմակերպիչներին տնտեսության վարման օրինակելի եղանակներին ծանոթացնելը։

Նման նախապատրաստական աշխատանքներից հետո սեմինարի մասնակիցները ծանոթանում են տվյալ պարտկազմակերպության գործունեությանը (լսվում է քարտուղարի զեկուցումը)։ Նախապես ծանոթացած լինելով տվյալ պարտիական կազմակերպության գործունեությանը, լինելով արտադրատեղամասերում, ուսումնասիրելով գործերի վիճակը, սեմինարի մասնակիցները հանգամանորեն վերլուծում են հարցերը, ակտիվորեն մասնակցում են զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը, անում են կոնկրետ առաջարկություններ ու դիտողություններ և օգնում թերությունների վերացմանը։

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի փետրվարյան պլենումից հետո շրջանի սկզբնական պարտիական կազմակերպություններում անցկացվել է երեք սեմինար պարապմունք՝ Կույբիշևի սովխոզում, Ուզունթալայի և Աչաջրի կոլտնտեսություններում։

Պարտիական կազմակերպություններում անցկացված այդ պարապմունքները ցույց են տալիս, որ դրանք զգալի չափով օգնում են գործին։ Ծանոթանանք դրանցից մեկի՝ Կույբիշևի պարտիական կազմակերպության այս տարվա մարտի 7-ին տեղի ունեցած սեմինար պարապմունքին։

«ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան ու փետրվարյան պլենումների որոշումների կենսագործման ուղղությամբ Կույբիշևի սկզբնական պարտիական կազմակերպության քաղաքական ու կազմակերպական աշխատանքի մասին» զեկուցումով հանդես եկավ Կույբիշևի սովխոզի պարտիական կազմակերպության քարտուղար Գ. Արզումանյանը, այնուհետև՝ «Պարտիական կազմակերպությունն ինչպես է ապահովում կոմունիստների ավանգարդային դերը», «Առաջավոր պարտիական խմբերի աշխատանքի փորձը», «Գործի հաջողությունը գաղափարական և կազմակերպական աշխատանքի միասնության մեջ է», թեմաների շուրջ զեկուցում են Թալայի, Խաշթառակի և Ուզունթալայի սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարները։

Սեմինարի մասնակիցներն ուսանելի շատ բան վերցրին Կույբիշևի պար-

տիական կազմակերպության փորձից: Հետաքրքրական էր, թե պարտիական
կազմակերպությունն ինչպիսի հետևողական աշխատանք է կատարում գյուղա-
տնտեսական կադրերին տնտեսական խոր ու կայուն գիտելիքներով զինելու,
նրանց ճիշտ տեղաբաշխելու, հանձնարարված գործի նկատմամբ կադրերի պա-
հանջկոտությունը բարձրացնելու, կոմունիստական աշխատանքի համար պայ-
քար ծավալելու, մթերքների ինքնարժեքն իջեցնելու, տնտեսությունը շահութա-
բեր դարձնելու ուղղությամբ: Այս ամենի շնորհիվ նույնիսկ 1963 թ. բնա-
կլիմայական անբարենպաստ պայմաններում սովխոզը տնտեսական տարին
փակեց օգուտով, իսկ մյուս երեք սովխոզները՝ զգալի վնասով:
Լինելով արտադրամասերում, սեմինարի մասնակիցները համոզվեցին, որ
տնտեսապես խիստ արդյունավետ է խոշոր ֆերմաների, բրիգադաների կազ-
մակերպումը: Ռևազլուում, Աչաջրում և մի շարք այլ տնտեսություններում
կիրառվեց կույբիշևցիների փորձը, որոնցից շատ բան սովորեցին հատկապես
աշխատանքի կազմակերպման, վարձատրության և նորմավորման վերաբեր-
յալ: Այստեղ վարձատրությունը կատարվում է ըստ ստացած արտադրանքի
քանակի ու որակի, հատուկ ուշադրություն է դարձվում լրացուցիչ վարձա-
տրության վրա: Միայն 1962—63 թթ. ընթացքում սովխոզի աշխատողներն
ստացել են մոտ 20 հազար ռուբլի լրացուցիչ վարձատրություն: Շատ բան է
արվել և ընդհանուր արտադրական ու ընդհանուր սովխոզային ծախսերի կըր-
ճատման ուղղությամբ:
Շրջանի սովխոզներում 200 կով ունենալու դեպքում հաճախ կոմպլեկ-
տավորվում է մեկ բրիգադա, մինչդեռ Կույբիշևի սովխոզում մեկ բրիգադա
սպասարկում է 600 կովի: 1400 գլուխ մատղաշի կամ 7000 գլուխ ոչխարի
առկայության պայմաններում սահմանված երկուսի փոխարեն կոմպլեկտա-
վորված է մեկ բրիգադա: Այստեղ օրինակելիորեն է կատարվում անասուն-
ների հերթափոխային արածեցումը:
Կույբիշևցիներից օրինակելին վերցնելով՝ սեմինարի մասնակիցները
միաժամանակ կատարեցին մի շարք դիտողություններ: Նրանք պարտիական
կազմակերպության ուշադրությունը հրավիրեցին երիտասարդության կոմու-
նիստական դաստիարակության, գյուղի հասարակական կազմակերպություն-
ներին ցույց տրվող օգնության, ոչխարաբուծական բրիգադայում նկատվող
անկումները կանխելու և այլ թերությունները վերացնելու վրա:
Գյուղատնտեսության առաջավոր փորձի, գիտության նվաճումների ու-
սումնասիրումն ու արմատավորումը պարտիական աշխատանքի բաղկացուցիչ
մասն է: Պարտիական կոմիտեի բյուրոյի նիստերում բազմիցս լսվել է գյուղա-
տնտեսության առանձին բնագավառների առաջավորների փորձի մասին, որո-
շակի աշխատանք է տարվել այն տարածելու համար:
Փետրվարյան պլենումից հետո պարտիական կոմիտեի բյուրոյի հերթա-
կան նիստում քննարկվեց Լալի գյուղի առաջավոր մեխանիզատոր Հրանտ Տաղ-
բաթյանի առաջավոր փորձը, հրատարակվեց առաջավոր փորձի բյուլետեն.
այս ամենի շնորհիվ ծխախոտի միջշարային տարածությունների մեքենայա-
կան մշակության փորձը տարածվեց Ուզունթալայի, Աչաջրի, Սևքարի և մի շարք
այլ տնտեսություններում:
Պարտիական կոմիտեի բյուրոն կոմունիստական աշխատանքի հարվածա-
յինի պատվավոր կոչում շնորհեց Սևքարի սովխոզի անվանի հովիվ Վանիկ Քա-
մալյանին. պատվավոր կոչմանն արժանացած հովվի փորձի մասին նույնպես



հրատարակվեց առանձին թերթիկ: Այդ փորձը այժմ դարձել է արտադրական
վարչության բոլոր տնտեսությունների հովիվների սեփականությունը:
Գիտության նվաճումները և գյուղատնտեսության առաջավոր փորձն ա-
ռավել արդյունավետ ձևով ու մեթոդներով պրոպագանդելու և արմատավորելու
նպատակով ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումից անմիջապես հետո
Իջևանի և Ղազախի գյուղական արտադրական պարտիական կոմիտեների նա-
խաձեռնությամբ առաջին անգամ կազմակերպվեց գյուղատնտեսության առա-
ջավոր փորձի, գիտության նվաճումների պրոպագանդման և կոմունիս-
տական աշխատանքի շարժման լայն ծավալման միջշրջանային միացյալ տնտե-
սական խորհուրդ, որի նախագահ ընտրվեց հայգյուղտնտտեխնիկայի Իջևանի
բաժանմունքի ինժեներ Հ. Բոլշիկյանը, տեղակալ՝ Ղազախի արտադրական
վարչության Շխլի գյուղի կոլտնտեսության նախագահ, սոցիալիստական աշ-
խատանքի հերոս Ի. Միրզոևը: Խորհուրդն ունի դասախոսական խումբ, խմբա-
գրական հանձնաժողով, գյուղատնտեսության տարբեր բնագավառներն ընդ-
գրկող սեկցիաներ: Եղբայրական երկու ռեսպուբլիկաների հարևան շրջանների
աշխատավորների բարեկամական սերտ կապերի մերձեցմանը նպաստելով,
միջշրջանային խորհուրդը մեծ չափով կօգնի երկու արտադրական վարչու-
թյունների առաջավոր տնտեսությունների աշխատանքի փորձի տարածմանն
ու արմատավորմանը:
Վերջերս տեղի ունեցած միացյալ խորհրդի անդրանիկ նիստը լսեց Թալայի
կոլտնտեսության կովաբուծական ֆերմայի առաջավոր փորձի մասին (զեկու-
ցեցին կոլտնտեսության զոոտեխնիկ Թելման Մանուչարյանը և ֆերմայի վա-
րիչ Սիմոն Ջապուխյանը): Զեկուցումների շուրջը տեղի ունեցավ մտքերի աշ-
խույժ փոխանակություն, նիստից հետո խորհրդի անդամները (որի կազմում
էին նաև Ղազախի արտադրական պարտիական կոմիտեի քարտուղարի տեղա-
կալ Ա. Թաղիևը, Հաղթանակ կոլտնտեսության օղակավարուհի Մ. Վալիևան,
Սամեդ Վուրղունի անվան կոլտնտեսության բրիգադիր Ս. Արզուլաևան, Լենինի
անվան կոլտնտեսության նախագահ Մ. Ահմեդովը, Սադահլուի կոլտնտեսային
սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղար Վ. Ալիևը և ուրիշ-
ներ) եղան Իջևանի արտադրական վարչության Թալայի կոլտնտեսության կո-
վաբուծական ֆերմայում: Այստեղ առաջին անգամ կովերի կերակրման հա-
մար օգտագործվում է քիմիական նոր պրոդուկտ՝ միզանյութը, որը նպաստում
է կովերի կաթնատվության բարձրացմանը:
Այդ հանդիպման ժամանակ ֆերմայի առաջավոր կթվորուհիներ Դոնարա
և Արուս Ղազարյանները, Սվետլանա Ենգիբարյանը և ուրիշներ խորհրդի ան-
դամներին պատմեցին, թե ինչպես են խնամում ու կերակրում կովերին, իսկ
ֆերմայի վարիչ Սիմոն Ջապուխյանը հյուրերին պատմեց կովերի արհեստա-
կան սերմնավորման արդյունքների և այն մասին, թե ինչ են անում իրենց ա-
նասնապահները կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչմանն արժա-
նանալու համար: Խորհրդի անդամները եղան նաև Ուզունթալայի կոլտնտեսու-
թյունում և ուսումնասիրեցին ծխախոտագործների առաջավոր փորձը:
— Մեզ մոտ ծխախոտը նոր կուլտուրա է,— ասաց Ղազախի արտադրա-
կան վարչության Սաբիրի անվան կոլտնտեսության վարչության նախագահ
Ք. Քերիմովը,— և մենք անչափ շնորհակալ ենք ձեր փորձին այդպես մանրա-
կրկիտ մեզ ծանոթացնելու համար: Երեկոյան տեղի ունեցավ պարտիական
կոմիտեի նախաձեռնությամբ կազմակերպված բարեկամության երեկո՝ նվիր-

ված Ադրբեջանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու 150-ամյակին։ Միջշրջանային առաջավոր փորձի և գիտության ներդրման խորհուրդը որոշեց հաջորդ նիստը գումարել Ղազախում։

Նոր է կազմակերպվել խորհուրդը. այն ունեցել է մեկ պարապմունք. սակայն այդ ևս ցույց է տալիս, որ Իջևանի և Ղազախի գյուղական արտադրական պարտիական կոմիտեները գտել են երկու վարչությունների գյուղատնտեսության առաջավոր փորձի, գիտության նվաճումների պրոպագանդման ու արմատավորման նոր, արդյունավետ ձև, որը կօգնի երկու արտադրական վարչությունների գյուղատնտեսության աշխատողներին՝ աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումներով լավագույն արդյունքի հասնելու։

Խ. ԴՐԱՄՐՅԱՆ

## ՏԵՍԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐ

Աշտարակի շրջանի Կարբի գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությունում նախապատրաստվում էին սկսելու պարտիական լուսավորության նոր ուսումնական տարին։

Գյուղատնտեսական ձեռնարկությունների էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարի ղեկավար, ագրոնոմ Սենիկ Ստեփանյանը գյուղական գրադարանում նյութեր էր հավաքում առաջին պարապմունքի համար։ Նրան մոտեցավ կոլտնտեսության բրիգադավար Վալուշ Նանյանը։

— Նորից օժանդակ գրականություն, փաստեր, թվեր, կոնսպեկտներ, դիտողական նյութեր...

— Ծանր, պատասխանատու գործ է,— ծոր տվեց գրույցին ներկա գտնվող ֆերմայի վարիչ Ս. Ավետիսյանը։

— Պրոպագանդիստ լինելը, կարդալը, նյութեր հավաքելը, հարցեր կազմելը դժվար չէ,— հավաքած գրքերը սեղանի վրա դնելով պատասխանում է սեմինարավար Ստեփանյանը,— մենք Ձեզ հետ անցյալ տարի պարապմունքներում բազմաթիվ տեսական հարցեր ենք վերլուծել, բանավիճել. այդ ծանր չէ, նույնիսկ հետաքրքրական է ու հաճելի։ Կարևորը պարապմունքի գաղափարական նպատակասլացությունն է։ Մեր պարապմունքները ո՛չ միայն հարստացնում են ունկնդիրների գիտելիքները, օգնում յուրացնելու մարքս-լենինյան տեսությունը, այլև՝ այդ լույսի տակ մեր կյանքի, տնտեսության կոնկրետ հարցերը վերլուծելու, գործնական եզրակացություններ հանելու։

Փորձված պրոպագանդիստ Ստեփանյանը նախապատրաստական աշխատանքն սկսում է Մարքսի, Էնգելսի, Լենինի համապատասխան աշխատությունները, ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, պարտիայի և կառավարության ղեկավարների ելույթները վերընթերցելուց։ Նա չի բավարարվում իր իմացածով, պարբերաբար կարդում է համապատասխան գրականություն, օգտվում թերթերից ու ամսագրերից, լսում դասախոսություններ, մասնակցում պրոպագանդիստների համար կազմակերպվող սեմինարներին։ Ընկ. Ստեփանյանի ղեկավարած սեմինար պարապմունքները մեթոդապես ճիշտ և հաջող են անցնում նաև այն պատճառով, որ նա օգտվում է պրոպագանդիստական աշխատանքին վերաբերող մեթոդական գրականությունից։ Նա օգտագործում է նաև դիտողական նյութեր, պլակատներ, դիագրամներ, ուշի-ուշով հավաքում տեղական փաստերը և այլ նյութեր։



Պարապմունքի նախապատրաստությունն ավարտելուց հետո Ստեփանյանը կազմում է պլանը, որտեղ նշում է սեմինարում քննարկվող գլխավոր հարցերը։ Հատուկ ուշադրություն է նվիրում ունկնդիրներին տրվելիք առաջադրանքներին, աշխատելով չծանրաբեռնել նրանց ավելորդ գրականությամբ։

Սեմինար պարապմունքների ընթացքում Կարբիի կոլտնտեսության մասնագետները, բրիգադավարները, ֆերմաների վարիչները, օղակավարները, արտադրության առաջավոր կոլտնտեսականներն ուսումնասիրում են գյուղատնտեսության էկոնոմիկայի տարբեր պրոբլեմներն, որը օգնում է նրանց՝ հանձնարարված տեղամասում ավելի գործիմացությամբ, ուժերի առավել լարումով աշխատելու։ Դիմենք օրինակների։

Ուսումնական ծրագրով նախատեսված Կոլտնտեսային և սովխոզային արտադրության պլանավորումը թեման խոր ու բազմակողմանի ուսումնասիրելու նպատակով սեմինարավարն այն բաժանեց ութ ենթաթեմաների։

Երեկոյան ժամը 7-ն է։ Սեմինարավարը ճիշտ ժամին սկսում է պարապմունքը։

— Այսօրվա սեմինարի թեման,— ասում է նա,— կոլտնտեսային և սովխոզային արտադրության պլանավորումն է։ Հարցերը վերլուծելիս աշխատեք օրինակներ բերել մեր տնտեսության պլանավորման պրակտիկայից, հանգամանորեն վերլուծեք մեր արտելում նկատվող սխալներն ու բացերը։

Մի պահ լռություն է տիրում։ Ձեռք են բարձրացնում առաջին ցանկացողները։ Սեմինարավարը ձայնը տալիս է բրիգադավար Ս. Ավետիսյանին։ Խոսելով գյուղատնտեսության պլանավորման առավելությունների մասին, Ավետիսյանն իրենց կոլտնտեսությունից վերցված օրինակներով ցույց է տալիս ճիշտ պլանավորման նշանակությունը՝ պարզաբանելով, թե գյուղատնտեսության մեջ պետական պլանների մշակման ժամանակ ինչպիսի խնդիրներ են դրվում պլանավորող օրգանների, կամ կոլտնտեսության ղեկավարության առաջ, որոնք հաշվի առնելու և կիրառելու դեպքում պլանավորումը կլինի ավելի ճիշտ։

— Արտադրական ճյուղերը պլանավորելիս,— շարունակում է Ավետիսյանը,— պետք է նկատի ունենալ տարբեր ճյուղերի փոխադարձ կապերը. եթե բուսաբուծությունը պլանավորում ենք առանց հաշվի առնելու անասնաբուծության պահանջները, ապա խախտվում է նրանց համամասնությունը գյուղատնտեսության զարգացման մեջ, որի հետևանքով տուժում է տնտեսությունը։

— Վատ չէր լինի մեր կոլտնտեսությունից օրինակ բերեիք,— ուղղություն է տալիս պրոպագանդիստը։

— Մինչև անցյալ տարի,— շարունակում է Ավետիսյանը,— բուսաբուծությունը պլանավորելիս ճիշտ չէինք պլանավորում եգիպտացորենի ցանքը։ Ելնելով այն բանից, որ մեր տնտեսությունում աշխատող ձեռքերի պակաս կա, եգիպտացորենի քիչ ցանք էինք պլանավորում. հաշվի չէր առնվում անասունների գլխաքանակը, հետևանքը լինում էր այն, որ եգիպտացորենի քիչ մասսա էր ստացվում, և տուժում էր անասնաբուծությունը. սիլոսը չէր բավարարում։ Սակայն անցյալ տարի, պլանավորման ժամանակ, նկատի ունենալով եգիպտացորենի մշակության մեքենայացումը, մենք ավելի մեծ տեղ հատկացրինք նրա ցանքին, որի շնորհիվ ո՛չ միայն ավելացավ եգիպտացորենի բերքը, այլև իջավ ինքնարժեքը։ Յուրաքանչյուր հեկտարի մշակման համար տնտեսվեց 110 աշխօր։ Ուրեմն, պլանավորման ժամանակ հաշվի պետք է

առնել նաև հողի, տեխնիկայի, բոլոր ռեզերվների առավելագույն չափով օգտագործումը։

— Պլանավորման ժամանակ,— լրացնում է Ա. Հովհաննիսյանը,—նկատի պետք է ունենալ տվյալ տնտեսության հետագա մասնագիտացումը՝ նրա պայմաններին համապատասխան։ Մեր տնտեսությունը պետք է զարգանա այգեգործության ու բանջարաբուծության ուղղությամբ։ Հետևաբար, տնտեսությունը պետք է մասնագիտացնենք աստիճանաբար։ Զվերացնելով մյուս ճյուղերը, ներկայումս մենք պետք է պայմաններ ստեղծենք այգեգործության հետագա զարգացման համար, իսկ անասնաբուծության բնագավառում՝ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացման համար։

Ունկնդիրներ Խ. Խաչատրյանը (գյուղական սովետի նախագահ), խոսելով մեր երկրում գյուղատնտեսության պլանավորման կատարելագործման մասին, Կարբիի կոլտնտեսության օրինակներով ցույց տվեց մինչև 1955 թ. գյուղատնտեսության պլանավորման գործում եղած սխալների հետևանքները։

— ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի 1955 թվականի մարտի 9-ի Գյուղատնտեսության պլանավորման պրակտիկայի փոփոխման մասին որոշումը,— ասում է Խաչատրյանը,— կոլտնտեսություններին ու սովխոզներին հնարավորություն տվեց լրիվ օգտագործել հողային տարածությունները, նյութական և աշխատանքային ռեսուրսները։ Մենք գիտենք մեր հողն ու ջուրը, մենք էլ կպլանավորենք արտադրությունը։ Այն ժամանակ, երբ Կարբին ջուր չունենալու պատճառով չէր կարողանում ապահովել ավելի շահութաբեր կուլտուրայի՝ ծխախոտի արտադրության առաջադրանքը, մեզ ստիպում էին մշակել բանջարեղեն, որն ավելի շատ ջուր է պահանջում։ Ջրի պակասի հետևանքով ամռանը չորանում էին թե՛ մեկի և թե՛ մյուսի ցանքերը։

Սեմինարում քննարկվող տեսական հարցերն արդիականացվում, կապվում են պարտիայի ու կառավարության որոշումների հետ։ Արտադրության պլանավորման պրակտիկայում թույլ տրվող կոպիտ խախտումների և աղավաղումների փաստերի մասին ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի 1964 թ. մարտի 20-ի որոշումը պարզաբանեց մեքենայական բրիգադայի բրիգադավար Ա. Հովակիմյանը։ Նա նշեց, որ 1955 թվականին կիրառված պլանավորման նոր կարգը լիովին արդարացրեց իրեն։ Արտադրության ճիշտ պլանավորումը հնարավորություն տվեց արտադրական ռեզերվները հայտաբերելու և գործադրելու, հողի յուրաքանչյուր հեկտարից աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումներով առավելագույն արտադրանք ստանալու։

— Սակայն վերջին ժամանակներս,— շարունակում է Հովակիմյանը,— ինչպես մի շարք ռեսպուբլիկաներում, այնպես էլ մեզ մոտ, թույլ է տրվել վերևից արտադրությունը շաբլոն ձևով պլանավորելու՝ պարտիայի կողմից վաղուց դատապարտված պրակտիկան։ Տնտեսություններին վերևից պարտադրում էին ցանքատարածությունների, բերքատվության, անասունների գլխաքանակի և մթերատվության պլաններ։ Դրանով իսկ խափանվում է մեր՝ կոլտնտեսականներիս նախաձեռնությունը։

— Հիշիր «Փարպիի» հանդամասը,— ընդհատում է Ս. Պետրոսյանը։

— Ճիշտ է ընկեր Պետրոսյանը,— շարունակում է Հովհաննիսյանը,—մեր շրջանի պլանավորող օրգանները վերջին տարիներս մեր արտելին տվել էին 120 հեկտար բազմամյա խոտացանության պլան։ Դրա համար հատկացվեց «Փարպի» կոչվող հանդամասը։ Երեք տարի այդ հողը մատնվեց անգործության, ջուր չունենալու պատճառով այնտեղից խոտ չստացանք։ Միաժամանակ այն չէին կարողանում քանդել, որովհետև խոտացանության նոր պլան պետք է իջեցվեր, որը նորից նույն ճակատագրին կարժանանար։ Չի կարելի վերևից պարտադրել ցանքի պլանները։ Այսպես է ասված ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի 1964 թ. մարտի 20-ի որոշման մեջ։ Այնուհետև Օհանյանը պատմում է վերջին որոշման մեջ առաջ քաշված մի քանի հարցերի մասին՝ ավելացնելով.

— Կոլտնտեսություններին ու սովխոզներին վերևից առաջադրվելու է միայն գյուղատնտեսական մթերքների գնումների պետական պլան։ Իսկ թե կոլտնտեսությունն ինչ ճանապարհով կկատարի պլանը, այդ արդեն կոլտնտեսության, կամ սովխոզի գործն է։

— Եթե պլանավորման հարցում վերջին խոսքը մեզ է պատկանում,— նկատում է բրիգադավար Կ. Մուխսյանը,—ուրեմն մեծանում է մեր պատասխանատվությունը հողի ճիշտ օգտագործման, գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետությանը դրանք վաճառելու ուղղությամբ։ Պլանները չկատարելու դեպքում մեղքն այլևս չենք կարող գցել պլանավորող օրգանների վրա, այն կապելով սխալ պլանավորման հետ։ Մենք ենք պլանավորողը, մենք ենք կատարողը, պատասխանն էլ մենք ենք տալու։

Բացառիկ ակտիվ անցավ Տնտեսության զարգացման հեռանկարային պլանների հարցի քննարկումը։

— Մեր հեռանկարն արդեն մեր դռանն է,— ասում է № 1 բրիգադայի բրիգադավար Ա. Հակոբյանը,— տարիներ շարունակ մեր կոլտնտեսությունը ետ է մնացել, բայց մենք արդեն հաղթահարել ենք մեր ետ մնալը։

Բայց առաջին հաջողությունները մեզ չեն բավարարում։ Արզնի—Շամիրամ ջրանցքն արդեն հասել է մեր գյուղին. այս տարվա վերջում մենք ջուր կստանանք։ Կունենանք ոռոգման անսպառ ջուր. արդեն միայն մեզ է մնում այգիներով ու ծառաստաններով ծածկել մեր քարքարոտ կանաչազուրկ դաշտերը։

Այսպես քննարկում են պլանում նախատեսված մյուս հարցերը ևս։ Վերջում սեմինարավարն ամփոփում է պարապմունքի արդյունքները, հանրագումարի բերում այն։

Իր եզրափակիչ խոսքում հանգամանորեն խոսելով պլանների կատարման համար ծավալված կազմակերպական աշխատանքի մասին, նա շեշտը դնում է այն բանի վրա, որ ամենալավ մշակած պլանը կմնա թղթի վրա, եթե այն չամրապնդվի կազմակերպական աշխատանքով։

Օգտագործելով մեր պարտիայի Կենտկոմի դեկտեմբերյան և փետրվարյան պլենումների նյութերը՝ նա ցույց տվեց, որ ամենից առաջ պետք է լրիվ օգտագործել ռեզերվները, հացահատիկի արտադրության ավելացման համար պետք է դուրս մղել սակավ բերքատու կուլտուրաները, արմատավորել առավել բերքատու կուլտուրաներ, օգտագործելով գիտության նվաճումները, առաջավոր փորձը։ Ընկեր Ստեփանյանը կոնկրետ օրինակներով ցույց տվեց գյուղատնտեսական մթերքների ավելացման համար մյուս ռեզերվների՝ ցանքատարածությունների ավելացման, ոռոգման սիստեմի կառուցման, մեքենայացման, հատկապես գյուղատնտեսության քիմիացման նշանակությունը։

Պարապմունքի ժամանակ հաճախ քննարկվող հարցերը տրամաբանորեն կապելով նախկինում անցած նյութերի հետ, սեմինարավարն առանձին թեզեր

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՀՈՂԸ ԵՎ ՆՐԱ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ

Գյուղատնտեսական ուրտադրության հիմքը հողն է, նրա արդյունավետ օգտագործումը: Գյուղատնտեսության մեջ հողը հիմնական ու գլխավոր արտադրամիջոցն է: Մարքսը գրում է, որ ամեն մի հարստության աղբյուրը հողն ու բանվորն են (տե՛ս Կ. Մարքս, Կապիտալ, առաջին հատոր, 1954 թ. էջ 530): Հողից է մարդն ստանում իր համար անհրաժեշտ սպառման մթերքները, կերանասունների, հումք՝ թեթև և սննդի արդյունաբերության համար: Հողը, որպես արտադրության միջոց, գյուղատնտեսության մեջ բացառիկ նշանակություն ունի: Արտադրության բոլոր այլ միջոցները կարող են ունենալ իրենց փոխարինողները, մինչդեռ հողը ոչ մի այլ բանով փոխարինել չի կարելի: Հողը ոչնչով չփոխարինվող հարստություն է, ժողովրդի ամենաարժեքավոր ունեցվածքը, գյուղատնտեսության արտադրության հիմքը. «Հողը,— գրում է Վ. Ի. Լենինը,— անկասկած, արտադրության գլխավոր միջոցն է գյուղատնտեսության մեջ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 16, 1950 թ., էջ 562):

Հողի հիմնական հատկությունը նրա բերրիությունն է: Մարքսիզմի կլասիկները տարբերում են հողի բնական բերրիությունը նրա իրական, արդյունավետ բերրիությունից. «...բնական պտղաբերության տարբերությունը,— գրում է Կ. Մարքսը,— կախված է հողի վերնաշերտի քիմիական բաղադրության տարբերությունից, այսինքն՝ բույսերի աճման համար անհրաժեշտ սննդանյութերի տեսակետից տարբեր բովանդակություն ունենալուց» (Կ. Մարքս, Կապիտալ, հատ. 3, 1949 թ., էջ 195): Գյուղատնտեսական բոլոր հողատեսքերն էլ ունեն բնական պտղաբերություն, սակայն, նայած հողի վերնաշերտի քիմիական բաղադրության տարբերության, հողերի բնական բերրիությունը տարբեր է: Հողի ամեն մի բնական պտղաբերություն դեռևս տնտեսական պտղաբերություն չէ, տնտեսության հարստություն չէ, եթե հողի մեջ չկան անհրաժեշտ քանակի սննդանյութեր: Հողի բնական բերրիությունը կարող է փոխվել տնտեսական, էֆեկտիվ բերրիության, եթե հողում գտնվող սննդանյութերն ընդունեն այնպիսի ձև, որով նրանք ավելի կամ պակաս չափով անմիջականորեն հարմար դառնան բույսերի սնման համար: Հողի ռացիոնալ օգտագործման, հողագործության վարման ճիշտ սիստեմի կիրառման շնորհիվ միշտ բարձրանում է հողի տնտեսական, արդյունավետ բերրիությունը: Այս է պատճառը, որ եթե արտադրության մյուս միջոցներն օգտագործման ընթացքում մաշվում, կորցնում են իրենց սպառողական արժեքը, օգտակարությունը, ապա հողը ընդհա-



կառակը, շարունակ լավանում է, եթե կանոնավոր է մշակվում: Ոչ մի արտադրամիջոց օգտագործման այնպիսի տևականություն չունի և չի կարող ունենալ ինչպիսին հողը: Հողը հավերժական արտադրամիջոց է, եթե այն գիշատիչ չի օգտագործվում:

Հողի օգտագործման արդյունավետությունը պայմանավորված է հասարակական արտադրողական ուժերի զարգացման աստիճանով և արտադրական հարաբերությունների բնույթով, նրա օգտագործման հասարակական ձևով:



Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից հետո հողի վերաբերյալ Վ. Ի. Լենինի ստորագրած դեկրետով վերացվեց նրա մասնավոր սեփականությունը:

Հողը ՍՍՌՄ-ում պետական համաժողովրդական սեփականություն է և կազմում է պետական միասնական հողային ֆոնդ: Հողային ընդհանուր ֆոնդի մեծ մասը գյուղատնտեսական օգտակար հողատարածությունն է, որն օգտագործվում է գյուղատնտեսական արտադրության մեջ:

Հայկական ՍՍՌ-ում 1961 թվականին գյուղատնտեսական օգտակար հողերի 99,8 տոկոսը գտնվում էր կոլտնտեսություններում, սովխոզներում ու պետական այլ տնտեսություններում:

Հայկական ՍՍՌ-ում 1961 թվականին գյուղատնտեսական օգտակար հողատարածությունները կազմում էին ռեսպուբլիկայի ընդհանուր հողատարածությունների 49,6 տոկոսը: Հողերի ավելի քան 50 տոկոսը դուրս էր գյուղատնտեսական արտադրության պրոցեսից, ըստ որի գյուղատնտեսական պիտանի հողատարածությունների մոտ 50 տոկոսը, իսկ առանձին շրջաններում էլ ավելին, արոտներ ու արոտավայրեր էին: Արտաշատի արտադրական վարչության տերիտորիայում արոտներն ու արոտավայրերը կազմում են գյուղատնտեսական հողատարածությունների 66,6, Ազիզբեկովի շրջանում՝ 68,0, Եղեգնաձորի շրջանում՝ 57,7, Գորիսի և Սիսիանի արտադրական վարչություններում՝ 65,7—67,7 տոկոսը և այլն: Այդ նշանակում է, որ հողատարածությունների մեծ մասն օգտագործվում է վերին աստիճանի ցածր արդյունավետությամբ, քանի որ դրանից ստացվում է շատ քիչ և հաճախ ցածրորակ խոտ:

Ներկայումս բնական խոտհարքների հեկտարից ստացվում է 8—15, իսկ արոտավայրերից՝ 5—8 ցենտներ խոտ: Մեր սակավահողության պայմաններում հողի այդպիսի էքստենսիվ օգտագործումը տնտեսական չարիք է: Փորձը ցույց է տալիս, որ բնական արոտավայրերի ու խոտհարքների բարելավման, լավ մշակման միջոցով կարելի է մի քանի անգամ բարձրացնել բերքատվությունը: Օրինակ, քարհավաքի միջոցով արոտավայրերի բերքատվությունը բարձրանում է 10—20 տոկոսով, պարարտացման միջոցով հնարավոր է արոտների բերքը մեկ տարում բարձրացնել 2—3, ջրարբիացման միջոցով 3—4 անգամ: Այսպես, օրինակ, Ալավերդու արտադրական վարչության Միխայլովկա գյուղի կոլտնտեսությունն անցյալում իր արոտավայրերի յուրաքանչյուր հեկտարից ստանում էր 6—8 ցենտներ բերք, մինչդեռ դրանց բարելավումից հետո բերքատվությունը հասավ 40—50 ցենտների:

Ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում կոլտնտեսություններն ու սովխոզները պատշաճ ուշադրությամբ չեն վերաբերվում վարելահողերի լրիվ ու ար-

դյունավետ օգտագործմանը։ 1961 թվականին կոլտնտեսությունների ու սովխոզների հողերից 11,2 հազար հեկտարը խամ հողեր էին։

Մի շարք կոլտնտեսությունների ու սովխոզների փորձը ցույց է տալիս, որ ի հաշիվ բնական արոտների ու խոպանի, համեմատաբար քիչ միջոցների ծախսմամբ, հնարավոր է զգալի չափով ընդլայնել խոտհարքների ու մշակվող վարելահողերի տարածությունը։ Կրասնոսելսկի արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները 1963 թվականին գյուղատնտեսական շրջանառությունից դուրս եկած և էրոզիայի ենթարկված հողերից 400 հեկտարի վրա խոտաբույսեր ցանեցին։ Այդպիսի մեծ հնարավորություններ ունեն նաև Արտաշատի, Նոյեմբերյանի, Սպիտակի, Շամշադինի և ռեսպուբլիկայի մյուս արտադրական վարչությունների կոլտնտեսություններն ու սովխոզները, որոնց մոտ չօգտագործվող հողատարածությունները ներկայումս զգալի չափերի են հասնում։

Անկասկած, վարելահողերի ընդլայնումը խոշոր նշանակություն ունի գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում։ Այս նպատակով սովետական իշխանության տարիներին ՍՍՌՄ-ում վարելահողերի տարածությունն զգալի չափով ընդարձակվեց։ Սակայն հնարավոր չէ վարելահողերն անսահման ընդարձակել։ Որոշ առումով այդ բնորոշ է գյուղատնտեսության վարման էքստենսիվ սիստեմին և չի կարող սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման հիմնական ուղին դառնալ։ «Գյուղատնտեսության վերելքի և գյուղատնտեսական արտադրանքի նկատմամբ երկրի աճող պահանջների բավարարման գլխավոր ուղին,— նշված է ՍՄԿԿ ծրագրում,— բազմակողմանի մեքենայացումն ու հետևողական ինտենսիվացումն է...» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութեր, Հայպետհրատ, 1962 թ., էջ 497)։

Գյուղատնտեսության ինտենսիվացման էությունը բացահայտել են մարքսիզմ-լենինիզմի կլասիկները։ Կ. Մարքսը գրում է. «...տնտեսագիտորեն մենք ինտենսիվ մշակույթ ասելով ուրիշ բան չենք հասկանում, քան կապիտալի համակենտրոնացումը միևնույն հողամասում՝ փոխանակ այդ կապիտալը բաշխելու կողք-կողքի ընկած հողամասերի միջև» (Կ. Մարքս, Կապիտալ, հատ. III, 1949 թ., էջ 218)։

Լենինը գտնում էր, որ գյուղատնտեսությունը ինտենսիվ կարող է զարգանալ «...ոչ թե մշակելի հողի քանակի մեծացման միջոցով, այլ մշակման որակի բարելավման միջոցով, հողի նախկին քանակի մեջ ներդրվող կապիտալ չափերի մեծացման միջոցով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 22, էջ 77, 1951 թ.)։

Տնտեսությունը ինտենսիվ կերպով վարել,—նշված է ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան (1964 թ.) պլենումի որոշման մեջ,— նշանակում է, նախ՝ հողի յուրաքանչյուր հեկտարից ստանալ ավելի շատ արտադրանք, երկրորդ՝ մեքենայացման ու քիմիացման հիման վրա բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, արտադրանքի մեկ միավորին ընկնող աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումներով ստանալ ավելի շատ հացահատիկ, միս, կաթ և այլ մթերքներ։

Գյուղատնտեսության արտադրության ինտենսիվ վարման վրա առանձնապես հատուկ ուշադրություն նվիրեցին ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) և փետրվարյան (1964 թ.) պլենումները։ Պարտիան սովորեցնում է, որ սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գլխավոր ուղին հողագործության ինտենսիվացումն է։ Այդ «...նշանակում է,— նշեց ընկեր Ն. Ս.



Խրուշչովը դեկտեմբերյան պլենումում,— հմտորեն օգտագործել գյուղատնտեսական գիտությունն ու տեխնիկան, հանքային և օրգանական պարարտանյութերը, ապահովել սերմնաբուծության ու տոհմաբուծության գործի լավ դրվածքը, ճիշտ կազմակերպել աշխատանքը, պայքարել խնայողության, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար»։

Գյուղատնտեսության ինտենսիվացման գլխավոր, վճռական գործոններից մեկը՝ կապիտալ ներդրումներն են։ Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը հսկայական աշխատանք են կատարել սոցիալիստական գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները տարեցտարի ավելացնելու համար։

Հայաստանում, սովետական իշխանության հաստատումից հետո, գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների մեծ մասը ծախսվում էր իռիգացիոն նպատակներով։ 1920—1940 թվականներին ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների ընդհանուր գումարը կազմեց 55,96 միլիոն ռուբլի, որից կոլտնտեսություններում՝ 25,67 միլիոն։ Միայն 1961 թվականին տրակտորների, կոմբայնների և այլ սարքավորումների ձեռքբերման համար ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները ծախսեցին 4,4 միլիոն ռուբլի, իսկ արտադրական կարիքների համար, ամորտիզացիոն և պետական ապահովագրական վճարումների հետ մեկտեղ՝ 31,2 միլիոն, որից հանքային պարարտանյութերի ձեռքբերմանը՝ 1,5 միլիոն ռուբլի։ 1964 թվականին, գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները, 1963 թվականի համեմատությամբ կաճեն 38 տոկոսով, իսկ 1964—1965 թվականներին ամբողջությամբ վերցրած, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ կներդրվեն այնքան միջոցներ, որքան ներդրվել են յոթնամյակի անցած հինգ տարում։ Դա հնարավորություն կտա գյուղատնտեսության մեջ լայն չափով օգտագործել քիմիական պարարտանյութերը, ընդլայնել ոռոգվող տարածությունները, ավելացնել գյուղատնտեսության էներգետիկ ռեսուրսները, հասնել գյուղատնտեսության ինտենսիվացման ավելի բարձր մակարդակի։

Գյուղատնտեսության ինտենսիվացման կարևորագույն գործոններից է նրա էներգազինվածության աճը։ 1940 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում յուրաքանչյուր աշխատողին ընկնում էր 0,46 և 100 հեկտար ցանքատարածությանը՝ 27 ձիաուժ էներգիա, իսկ 1961 թվականին այդ համապատասխանորեն հասնում էր 4,0 և 187,0 ձիաուժի, այսինքն՝ 1961 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, մեկ աշխատողի էներգազինվածությունն ավելացավ 8,7, իսկ 100 հեկտար ցանքատարածությանն ընկնող էներգիայի քանակը 5 անգամ։

Գյուղատնտեսական տեխնիկայի բարելավման, էներգիայի ավելացման շնորհիվ հնարավոր դարձավ գրեթե լրիվ մեքենայացնել գյուղատնտեսական արտադրության մի շարք հիմնական աշխատատար պրոցեսներ։

Գյուղատնտեսության ինտենսիվացման գործում վճռական նշանակություն ունի նրա էլեկտրիֆիկացումը։ Այժմ գրեթե ռեսպուբլիկայի բոլոր գյուղերում էլեկտրաէներգիա կա։ Սակայն մեծ մասամբ այն օգտագործվում է կենցաղային նպատակների համար։ Բայց իրականում գյուղատնտեսության արտադրության մեջ դեռևս ցածր է էլեկտրաէներգիայի օգտագործման տեսակարար կշիռը մեխանիկական էներգիայի նկատմամբ։

Գյուղատնտեսության մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը, էներգետիկ ռեսուրսների աճը հանդիսանում են յուրաքանչյուր տնտեսության եկամուտների աճի հիմնական աղբյուրը և նրա ինտենսիվության կարևոր ցուցանիշը։
Այդ երևում է հետևյալ աղյուսակից։

100 հեկտար վարելահողին ընկնող էներգիան և դրամական եկամուտները ռեսպուբլիկայի հյուսիս-արևելյան գոտու կոլտնտեսություններում 1960 թ.

| Կոլտնտեսությունների խմբերն ըստ իրենց էներգետիկ ռեսուրսների | Էներգետիկ ռեսուրսները 100 հեկտար վարելահողի հաշվով (ձիաուժ) խմբերում | Ստացվել է դրամական եկամուտ (հազ. ռ.) | | |
|---|---|---|---|---|
| | | 100 հեկտար հողատարածության հաշվով | 100 հեկտար վարելահողի հաշվով | 1 մարդ օրվա հաշվով |
| I | 76—100 | 54,8 | 171,9 | 28,6 |
| II | 126—150 | 86,2 | 258,1 | 45,4 |
| III | 201—400 | 148,2 | 465,3 | 41,9 |

Աղյուսակից երևում է, որ յուրաքանչյուր 100 հեկտարին ընկնող էներգետիկայի և տնտեսության ստացած ընդհանուր եկամուտների միջև գոյություն ունի ուղիղ հարաբերակցություն։

Գյուղատնտեսության ինտենսիվության բարձրացման, հողի առավել արդյունավետ օգտագործման կարևորագույն գործոններից մեկը գյուղատնտեսության քիմիացումն է։ Այն՝ կայուն, բարձր, անշեղ ավելացող բերքն ապահովելու, հողի բերրիությունը բարձրացնելու, ինչպես և անասնապահության արագ վերելքի կարևորագույն պայմաններից մեկն է։ Չափազանցություն չի լինի ասել,— նշել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— որ պարարտանյութերի արտադրությունը մենք պետք է դասենք գյուղատնտեսության մեքենայացման հետ միևնույն շարքում, քանի որ թե մեկը և թե մյուսը գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի վճռական պայմանն են։

Գյուղատնտեսության քիմիացումը, նշված է ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշման մեջ, ռևոլյուցիա է գյուղատնտեսական արտադրության մեջ։ Քիմիայի արմատավորումը բացում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության, անասնապահության մթերատվության, աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղին։

Ներկայումս գյուղատնտեսության քիմիացումը հիմնականում ընթանում է հանքային պարարտանյութերի օգտագործման, քիմիական միջոցներով բույսերը վնասատուներից և կենդանիները հիվանդություններից պաշտպանելու և կերային քիմիական միջոցների օգտագործման ուղղությամբ. քիմիական նյութերն անհրաժեշտ են նաև ուրիշ մթերքների վերամշակման, բույսերի և կենդանիների ֆիզիոլոգիական պրոցեսների փոփոխման համար։

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի այս տարվա փետրվարյան պլենումը ընդգծեց. «...գյուղատնտեսության մեջ հանքային պարարտանյութերի և քիմիական մյուս միջոցների առավել ճիշտ օգտագործման նպատակով անհրաժեշտ համարել 1964—65 թվականներին, երկրում ստեղծել ագրոքիմիական միասնական ծառայություն։ Երկրի տարբեր գոտիներում ստեղծել ժամանակակից սարքավորումով զինված անհրաժեշտ քանակությամբ ագրոքիմիական լաբորատորիաներ։ Ագրոքիմիական ծառայության հիմնական խնդիրները պետք է լինեն՝ հանքային պարարտանյութերի և քիմիական այլ միջոցների բաշխման



ու արդյունավետ օգտագործման գիտականորեն հիմնավորված հանձնարարականների մշակումը, հողի, պարարտանյութի և կերի մասսայական անալիզների անցկացումը, հողերի ագրոքիմիական քարտագրեր կազմելը, հողագործության և անասնապահության քիմիացման գործում կոլտնտեսություններին ու սովխոզներին կոնկրետ օգնություն ցույց տալը»։

Սովետական իշխանության տարիներին արագ աճեց հանքային պարարտանյութերի արտադրությունը։ 1913 թվականին ցարական Ռուսաստանում արտադրված էր 100 հազար տոննա հանքային պարարտանյութ, 1958 թ. ՍՍՌՄ-ում արտադրվեց 12,4 միլիոն, 1962 թ.՝ 17,3 միլիոն տոննա, իսկ 1963 թ.՝ 20 միլիոն տոննա։

Չնայած հանքային պարարտանյութերի արտադրության նման աճին, մեկ հեկտար վարելահողի հաշվով ՍՍՌՄ-ը դեռ ետ է մնում զարգացած կապիտալիստական երկրներից։ 1962 թ. մեկ հեկտար վարելահողին ՍՍՌՄ-ում հասնում է 62 կգ, ԱՄՆ-ում՝ 229, Ֆրանսիայում՝ 507, Արևմտյան Գերմանիայում՝ 715, Անգլիայում՝ 766 կգ հանքային պարարտանյութ։ Առաջին հերթին դրանով պետք է բացատրել, որ հացահատիկային կուլտուրաների բերքը մեկ հեկտարից 1962 թ. ՍՍՌՄ-ում կազմում էր 10,9, Ֆրանսիայում՝ 26, իսկ Անգլիայում՝ 35,8 ցենտներ։

Մեզ մոտ նույնպես կան շատ տնտեսություններ, որոնք օգտագործում են անհրաժեշտ քանակությամբ պարարտանյութ և կիրառում են առաջավոր ագրոտեխնիկա, յուրաքանչյուր հեկտարից ստանում են 35—40 ցենտներ ցորեն, 50—80 և մինչև 100 ցենտներ եգիպտացորենի չոր հատիկ, մինչև 400 ցենտներ կարտոֆիլ, շաքարի ճակնդեղ և այլն։ Ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ, հանքային պարարտանյութերը գյուղատնտեսության վերելքի հիմքերի հիմքն են։ Դրանց լայն օգտագործումը ուղի է բացում գյուղատնտեսական արտադրությունն ինտենսիվ կերպով վարելու համար։

Եթե ագրոտեխնիկական կոմպլեքս միջոցառումների (հողի մշակում, սելեկցիա և բարձրորակ սերմերի ներդրում, պարարտացում և բույսերի պահպանման միջոցառումներ) կիրառման շնորհիվ ավելացած բերքատվությունն ընդունենք 100 տոկոս, ապա հանքային պարարտանյութերի կիրառման շնորհիվ բերքատվության բարձրացման բաժինը կկազմի 30—65 տոկոս։ Հողի բերրիությունն ավելի է բարձրանում, երբ ճիշտ են զուգակցվում օրգանական և հանքային պարարտանյութերը։ Գյուղատնտեսական գիտությունների դոկտոր Ա. Հարությունյանի տվյալներով, հանքային և օրգանական պարարտանյութերի համատեղ օգտագործումը խաղողի այգիներում տվել է հետևյալ արդյունքը (4 տարվա միջինը)

| | Խաղողի բերքը ցենտներով հեկտարից | Բերքի հավելումը ցենտներով հեկտարից | Շաքարի %-ը |
|---|---|---|---|
| Առանց պարարտացման . . . | 85.3 | — | 25,7 |
| NPK . . . . . | 125.3 | 40.0 | 25.9 |
| NPK + գոմաղբ 5 տ/հ . . . | 141,2 | 55,9 | 25,8 |

Աղյուսակից երևում է, որ հանքային և օրգանական պարարտանյութերի համատեղ օգտագործման դեպքում խաղողի բերքը յուրաքանչյուր հեկտարից

ավելացել է մոտ 65, իսկ միայն հանքային պարարտանյութերի օգտագործման դեպքում՝ 12,6 տոկոսով, պահպանելով շաքարայնության տոկոսը։ Պարարտանյութերի օգտագործումը կոմպոնենտների տարբեր հարաբերակցությամբ մեծ արդյունք է տալիս գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների մշակման դեպքում։

Հայկական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի ագրոքիմիայի լաբորատորիայի մոտավոր հաշվումներով, հանքային պարարտանյութերի ռացիոնալ օգտագործումը կապահովի մեկ հեկտար բերքի հավելում, աշնանացան ցորենինը՝ մինչև 10 ցենտներով, գարնանացան ցորենինը՝ մինչև 8 ցենտներով, հատիկացու եգիպտացորենինը մինչև 20 ցենտներով, սիլոսացու եգիպտացորենինը՝ մինչև 100 ցենտներով, բանջարանոցային կուլտուրաներինը՝ մինչև 100 ցենտներով, առվույտինը՝ մինչև 80 ցենտներով և այլն։

Հողի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու գործում մեծ նշանակություն ունի մոլախոտերի դեմ տարվող պայքարը։

Մոլախոտերը բույսերի բազմաթիվ վնասատուների ու հիվանդությունների օջախ են, նվազեցնում են հողի սննդանյութերի ու խոնավության պաշարները, իջեցնում բերքը, ավելացնում աշխատանքի և նյութա-դրամական միջոցների ծախսումները՝ հողի լրացուցիչ մշակման, սերմի զտման վրա և դրանով մեծ վնաս հասցնում գյուղատնտեսությանը։

Բույսերի պաշտպանության համամիութենական ինստիտուտի տվյալներով բույսերի վնասատուներից ու հիվանդություններից, ինչպես և մոլախոտերից կրած տարեկան կորուստը միջին հաշվով կազմում է գյուղատնտեսական կուլտուրաների համախառն արտադրանքի 20 տոկոսը։ Յուրաքանչյուր տարի թունաքիմիկատների անբավարար օգտագործման հետևանքով գյուղատնտեսությունը կորցնում է մոտ 1,5 միլիարդ փութ հացահատիկ և 3 միլիոն տոննա կարտոֆիլ, մեծ քանակությամբ բամբակ, խաղող, պտուղներ և այլն։ ՍՍՌՄ-ում յուրաքանչյուր տարի գյուղատնտեսական վնասատուների և հիվանդությունների հասցրած վնասը կազմում է մինիմում 5 միլիարդ ռուբլի։ Թունաքիմիկատների օգտագործման վրա ծախսված յուրաքանչյուր ռուբլու դիմաց պահպանվում է 10—11 ռուբլու արդյունք դաշտավարության մեջ, 20—30 ռուբլու՝ պտղաբուծության և ավելի քան 50 ռուբլու արտադրանք խաղողագործության մեջ։

Մոլախոտերի դեմ տարվող պայքարը իրականացվում է ագրոտեխնիկական, բիոլոգիական, քիմիական, մեխանիկական և այլ միջոցներով։ Ներկայումս մոլախոտերի դեմ տարվող պայքարի ամենաարդյունավետ ու պրոգրեսիվ ձևը՝ հերբիցիդների կիրառումն է։

ՍՍՌՄ-ում մեծ թվով կոլտնտեսություններ ու սովխոզներ արդեն օգտագործում են հերբիցիդները և ստացել են տնտեսական մեծ օգուտ։ Նովգորոդի մարզի Սոլիցկոյի շրջանի «Լենինի դրոշ» կոլտնտեսությունը, օգտագործելով հերբիցիդներ, վուշի մշակման աշխատանքները մեկ հեկտարի վրա 20 մարդ-օրվանից իջեցրեց մինչև մեկ մարդ-օրվա, դրամական ծախսերը 19 ռուբլուց իջան մինչև 4 ռուբլու, 400 հեկտարի վրա 8 հազար մարդ-օր աշխատանքային ծախսումներն իջան մինչև 400 մարդ օրվա, իսկ դրամական ծախսումները՝ 7,6 հազար ռուբլուց իջան մինչև 1,6 հազար ռուբլու։

1960 թվականին նախկին Շահումյանի շրջանի Շենգավիթ կոլտնտեսության եգիպտացորենի ցանքերը սրսկեցին հերբիցիդով՝ կրոտիլինի տարբեր



դոզաներ ունեցող լուծույթով։ Սրսկումից առաջ մեկ քառակուսի մետրի վրա կար 356 մոլախոտ, իսկ սրսկումից մեկ ամիս հետո այն հասավ 6-ի, մինչդեռ չսրսկված ցանքատարածություններում մոլախոտերի քանակը մնաց անփոփոխ։ Կրոտիլինի շնորհիվ հացահատիկի բերքը հեկտարից ավելանում է 3—4 ցենտներով։ Հաշվի առնելով այդ, նախատեսված է հերբիցիդների ու բույսերի պաշտպանության մյուս միջոցների արտադրությունը 1970 թ. հասցնել 800—900 հազար տոննայի։

Հողի արդյունավետ օգտագործման, գյուղատնտեսության ինտենսիվության բարձրացման գործում վճռական նշանակություն ունեն հողագործության ռացիոնալ սիստեմների կիրառումն ու ցանքատարածությունների կառուցվածքների բարելավումը։

Հողի ռացիոնալ օգտագործման հիմնական ցուցանիշներից մեկը՝ յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով ստացած բուսաբուծության և անասնապահական մթերքների արտադրության չափն է։ Գյուղատնտեսական հողերը տարբեր ինտենսիվությամբ օգտագործելու հետևանքով դեռևս համանման պայմաններում գտնվող տնտեսությունները արտադրության տարբեր մակարդակ ունեն։ Այսպես, օրինակ, 1962 թվականին, 100 հեկտար գյուղատնտեսական պիտանի հողատարածության հաշվով Էջմիածնի արտադրական վարչության Շահումյան գյուղի կոլտնտեսությունն ստացավ 520,4 ցենտներ կաթ, 91,1 ցենտներ միս (սպանդանոցային քաշով), 6,4 ցենտներ բուրդ, իսկ նույն արտադրական վարչության Ծաղկունք գյուղի կոլտնտեսությունը՝ 389,9 ցենտներ կաթ, 31,0 ցենտներ միս և 2,5 ցենտներ բուրդ։ Այդպիսի պատկեր գոյություն ունի նաև մյուս շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում։

Հողի արդյունավետության ցածր մակարդակը հաճախ գյուղատնտեսական կուլտուրաների մշակման ցածր տեխնոլոգիայի, ագրոկանոնների խախտման հետևանք է։ Մի շարք տնտեսություններում խախտվում են գյուղատնտեսական կուլտուրաների ցանքի, մշակման, բերքահավաքի ժամկետները, ցանվող սերմի նորման, նոսրացվում են այգիները, որի հետևանքով հեկտարները կորցնում են իրենց լիարժեքությունը։

Ա. Ի. Մինասյանի տվյալներով, 1960 թվականին, ռեսպուբլիկայի գրեթե բոլոր այգիների 60 տոկոսն ունեին 20—25 տոկոսով ավելի նոսրացում։ Այդպիսի այգիներում բերքատու վազերի քանակը պակաս էր 200-ից մինչև 500-ով, որը կազմում է մոտ 750—900 հեկտար բերքատու այգի։ Այդ նշանակում է, որ այգիների նոսրացման հետևանքով, 1960 թվականին, մենք մոտ 103 հազար ցենտներ պակաս խաղող ստացանք։ Նոսրացումն ավելի մեծ չափերի է հասնում պտղատու այգիներում։

Վերին աստիճանի կարևոր նշանակություն ունի գյուղատնտեսական կուլտուրաների հետցանքային խնամքը։ Շատ ցանել դեռ չի նշանակում շատ բերք ստանալ։ Ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ բավականին զգալի տարածությունների վրա ցանում են եգիպտացորեն, սակայն ստանում են ցածր բերք։ Այդ կախված է ցանքատարածությունների մշակման որակից, բերքահավաքի ճիշտ ժամկետից ու նրա որակից և այլ գործոններից։ Կարելի է աճեցնել բարձր բերք, սակայն հավաքել շատ քիչ բերք։ Հայտնի է, որ բերքահավաքի ուշացումը կարող է պատճառել բերքի 30—40 և ավելի տոկոսի կորուստ։ Գյուղատնտեսության մեջ ժամանակի գործոնը ամենակարևորն է։

Գյուղատնտեսական արտադրությունն ավելի է ենթակա ժամանակի գործոնին, քան արդյունաբերությունը:

«Կարևոր է սահմանել ագրոնոմիական խստագույն կարգապահություն,— ասաց ընկեր Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿԿ XXII համագումարում,— հասնել այն բանին, որ ագրոտեխնիկական միջոցառումների կոմպլեքսը նույնքան պարտադիր լինի, որքան արտադրության տեխնոլոգիական պրոցեսը գործարանում, իսկ գյուղատնտեսի դերը կոլտնտեսություններում և սովխոզներում պետք է բարձրացվի այն նույն մակարդակին, ինչ արդյունաբերության մեջ ինժեների դերն է»:

Հողի արդյունավետ օգտագործման ասպարեզում մեծ հաջողությունների են հասել ռեսպուբլիկայի առաջավոր կոլտնտեսություններն ու սովխոզները: 1962 թվականին էջմիածնի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության Վ. Խաթունարխ գյուղի կոլտնտեսությունը խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացավ 172,3 ցենտներ խաղող. միայն պետությանը վաճառած խաղողից կոլտնտեսությունը մեկ հեկտարի հաշվով ստացավ 1967 ռուբլի զուտ եկամուտ, Ջրառատի կոլտնտեսությունը հեկտարից ստացավ 134 ցենտներ խաղող (1328 ռուբլու զուտ եկամուտ մեկ հեկտարից): Շամշադինի արտադրական վարչության Այգեձորի կոլտնտեսությունը 93 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացավ 34,1 ցենտներ ծխախոտ, որի ընդհանուր բերքից՝ 2075 ռուբլի զուտ եկամուտ: Այդպիսի օրինակները շատ են, բայց դեռևս տիրապետող չեն:

Հողի բերրիությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման, յուրաքանչյուր շնչին ընկնող գյուղատնտեսական մթերքների ավելացման, մեր բնակչության կենսամակարդակի բարձրացման, հասարակության տնտեսական հզորության կարևոր պայմանն է: Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ ռեսպուբլիկայում յուրաքանչյուր հեկտարից ստացվի ավելի շատ բերք, քան ստացվում է որևէ կապիտալիստական երկրում:

Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## ԽՈՍՏՈՒՄՆԱԼԻՑ ՏՎՅԱԼՆԵՐ

Երկրին ավելի շատ անասնաբուծական մթերքներ տալու ձգտումով են տոգորված Անիի Նոր Կյանք գյուղի կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները: Նրանց ջանասեր աշխատանքը վերջին տարիներս տվել է լավ արդյունք:

— Մենք կարողացանք մեր կոլտնտեսությունում անասնապահությունը դարձնել բարձր մթերատու ճյուղ,— ասում է կովաբուծական ֆերմայի վարիչ Արշալույս Կիրակոսյանը:

Մտնենք կովաբուծական ֆերմա և կհամոզվենք դրանում: Ահա Աստղիկ Հովհաննիսյանը, որ վաղուց լավ կթվորուհու համբավ է վաստակել: Իր խնամած 10 կովից անցյալ տարի նա ստացել է 12500 ցենտներ կաթ, յուրաքանչյուր մեկ ֆուրաժային կովից՝ 950 կիլոգրամով ավելի, քան նախատեսված էր պլանով: Գրեթե նույնանման ցուցանիշների են հասել ֆերմայի մյուս կթվորները: Անասնապահների ազնիվ ու բարեխիղճ աշխատանքի շնորհիվ կոլտնտեսությունը, 1955 թվականի համեմատությամբ, 1963 թվականին մեկ ֆուրա-



ժային կովի կաթնատվությունն ավելացրել է մոտ 2 անգամ, հասցնելով այն 2131 կիլոգրամի:

Այդպիսի ցուցանիշներ ձեռք են բերվել, ամենից առաջ, անասունների խնամքն ու կերակրումը բարելավելու շնորհիվ: Այստեղ մեծ գործ է կատարված նախրում և հոտում մայրական կազմն ավելացնելու և ցեղն ազնվացնելու ուղղությամբ: 1963 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, կովերի գլխաքանակն ավելացել է 40, մաքիներինը՝ 51%-ով: Անասնապահությունն ինտենսիվ վարելու համար կաթնապրանքային ֆերմայում դրվել են խմոցներ, կերը մշակելու սարքեր, գործում է ներֆերմային տրանսպորտը:

Կոլտնտեսությունն արդեն այս տարի կատարել է անասնագլխաքանակի ավելացման յոթնամյակի վերջին տարվա պլանները, իսկ այդ հնարավորություն է տվել զգալի չափով ավելացնելու անասնաբուծական մթերքների արտադրությունը և դրանց վաճառքը պետությանը: Այսպիսի առաջընթացի շնորհիվ կոլտնտեսության ընդհանուր եկամտում զգալիորեն ավելացել է անասնապահությունից ստացված եկամտի տեսակարար կշիռը: Այսպես, եթե 1962 թվականին կոլտնտեսության ընդհանուր դրամական եկամուտները կազմել են 94132 ռուբլի, որից 59399 ռուբլին անասնապահությունից, ապա 1963 թվականին այն, համապատասխանաբար, կազմել է 124475 և 78235 ռուբլի: Զգալիորեն իջել է անասնաբուծական մթերքների ինքնարժեքը:

Մեծ նվաճումների են հասել Անիի արտադրական վարչության ուրիշ շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնց թվում են՝ Արևիկի, Մարալիկի, Ջիթհանքովի կոլտնտեսությունները, Պեմզաշենի, Հացիկի սովխոզները:

Արևիկի կոլտնտեսությունը վերջին տասնամյակում (1953—1963 թթ.) կաթի համախառն արտադրանքն ավելացրել է մոտ 10, մսինը՝ 7, բրդինը՝ 3 անգամ: Նույն ժամանակաշրջանում կոլտնտեսության դրամական եկամուտներն աճել են 5 անգամ, 1963 թվականին կազմելով 373 հազար ռուբլի, երկուս ու կես անգամ բարձրացել է աշխօրի արժեքը, մոտ 10—12 տոկոսով կրճատվել են գյուղատնտեսական մթերքների արտադրության վրա կատարվող ծախսերը: Արևիկցիներն իրենց նվաճումների համար վերջերս արժանացան կոմունիստականի պատվավոր կոչմանը:

Անիի արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները ընդհանրապես որոշակի հաջողությունների են հասել հանրային անասունների գլխաքանակի ավելացման և մթերատվության բարձրացման բնագավառում: 1953 թվականին 671 կգ-ի փոխարեն մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը 1963 թվականին հասել է 1419 կգ-ի, կամ աճել է ավելի քան 2 անգամ: Կաթի արտադրությունն ավելացավ ո՛չ միայն անասնապահների քրտնաջան ու անդուլ աշխատանքի, կովերի ցեղայնության բարելավման ու լավ խնամքի, այլև կերի կայուն բազայի ստեղծման շնորհիվ: Կերի արտադրությունը 1963 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, արտադրական վարչության տնտեսություններում ավելացել է ավելի քան 2 անգամ:

Կերային կուլտուրաների մեջ գնալով ավելի մեծ կշիռ է կազմում հյութալի կերի, հատկապես եգիպտացորենի մշակությունը: Բավական է ասել, որ 1963 թվականին կուտակվել է 331556 ցենտներ սիլոս: Այդ հնարավորություն է տվել յուրաքանչյուր կովին օրական տալու 10—12, իսկ առանձին տնտեսություններում՝ 18—20 կգ սիլոս: Հատուկ ուշադրություն է նվիրվում կերի ռացիոնալ օգտագործմանը: Տնտեսություններում կազմվում են կերի ծախսման գրաֆիկ-

*ներ, ըստ անասունների տեսակների ու մթերատվության չափի պլանավորում են կերաբաժինները։*

*Անիի արտադրական վարչության շատ տնտեսություններում արտադրության մեջ հետևողականորեն արմատավորում են գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը։ Անցյալ տարի բազմաթիվ տնտեսություններ պրոֆեսոր Բայբուրթյանի մեթոդով ամորձատեցին 1963 թվականին ծնված 1495 գլուխ հորթեր և 4380 գլուխ գառներ։ Նախատեսված է ընթացիկ տարում այդ մեթոդը գործադրել բոլոր տնտեսություններում։*

*Լայնորեն կիրառվում է անասունների արհեստական սերմնավորումը։ 1963 թվականին արհեստական սերմնավորման են ենթարկվել ավելի քան 75 հազար գլուխ մայր ոչխարներ։ Դրա շնորհիվ զգալիորեն բարելավվել է ոչխարների ցեղական կազմը. այժմ ոչխարների ընդհանուր հոտում նուրբ և կիսանուրբ ոչխարների գլխաքանակը հասնում է մոտ 80 տոկոսի։ 1963 թվականին արհեստական եղանակով սերմնավորվել են 5878, իսկ 1964 թվականի անցած մի քանի ամսում՝ 1384 կովեր։ Խոշոր եղջերավոր անասունների ցեղի բարելավումը տարվում է կովկասյան գորշ ցեղի ուղղությամբ։*

*Հանրային հոտի որակական կազմը բարելավելու նպատակով բոլոր տնտեսություններում տարեկան առանձնացվում են 40—50-ական բարձրակիթ կովերի էգ մատղաշներ, որոնց նկատմամբ հատուկ խնամք է տարվում։ Անասունների քաշաճի ավելացման և հիվանդությունների բուժման նպատակներով օգտագործվում են անտիբիոտիկներ, բիոմիցին, բիովետին, բիովիտ—40։ Կովերի կաթնատվությունը բարձրացնելու համար կերին խառնվում է և միզանյութ։*

*Այս և մյուս միջոցառումների շնորհիվ Անիի անասնապահները վերջին 10 տարում (1953—1963 թթ.) զգալի չափով ավելացրել են անասնապահական մթերքների արտադրությունը. մսինը՝ 47,8, կաթինը՝ 107 տոկոսով, ձվինը՝ 7 անգամ, իսկ կաթի և բրդի արտադրության մակարդակը գերազանցել է 1963 թվականի համար նախատեսված պլանային առաջադրանքները։*

*Անիի արտադրական վարչության անասնապահները 1963 թվականին կատարեցին անասնապահական մթերքների արտադրության ու դրանք պետությանը վաճառելու պլանները։ Իսկ 1962 թվականի համեմատությամբ մսի արտադրությունն ավելացրին 21,1, կաթինը՝ 20,7, բրդինը՝ 50,8, ձվինը՝ 43,3 տոկոսով։ Մսի հանձնման տարեկան պլանները կատարվել են 102,3, կաթինը՝ 101,7, բրդինը՝ 103,9 տոկոսով։ ՀԿԿ ԿԿ և ՀՍՍՌ Մինիստրների սովետի ժյուրին, ամփոփելով 1963 թվականին ռեսպուբլիկայի անասնապահների շրջանում ծավալված սոցիալիստական մրցության արդյունքները, հաղթող ճանաչեց Շիրակի անասնապահներին. ՀԿԿ ԿԿ ու ՀՍՍՌ Մինիստրների սովետի փոխանցիկ դրոշը և առաջին կարգի դրամական մրցանակը շնորհվեց Անիի արտադրական վարչության անասնապահներին։*

*Վարչության անասնապահները մեծ գոհունակությամբ և հպարտությամբ ընդունեցին այդ պարգևը, որը նրանց պարտավորեցրեց է՛լ ավելի լարելու իրենց ուժն ու եռանդը՝ ավելի շատ ու էժան անասնապահական մթերքներ արտադրելու և փոխանցիկ դրոշն իրենց ձեռքում պահելու համար։*

Բ. ԱՆԴՐԵԱՍՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի պարտիական օրգանների
բաժնի տեսուչ

# Գիտության աշխարհում

Երևանից ընթերցող Փ. Կարապետյանը հարցնում է. ինչպե՞ս է ստեղծվել օրացույցը և ի՞նչ նշանակություն ունի այն։

Ստորև այդ հարցին պատասխանում է ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների թեկնածու Հ. ԲԱԴԱԼՅԱՆԸ։

## ՕՐԱՑՈՒՅՑԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ

ՄԱՐԴԻԿ դեռևս հին ժամանակներից կզացել են ժամանակը հաշվելու կարիքը, որի անհրաժեշտությունն է՛լ ավելի է կզացվել մարդկային պատմության ու կուլտուրայի կարգացմանը զուգընթաց։ Երբ դեռ օրացույցներ գոյություն չունեին, մարդիկ ժամանակի մասին գաղափար էին կազմում երկնային մարմինների շարժումների ու նրանց դիրքի օգնությամբ։

Քանի որ ժամանակի գաղափարն ու նրա հիմնական միավորները՝ *օրը, ամիսը, տարին,* կապված են երկնային մարմինների շարժման հետ, բնական է, որ օրացույցի պատմությունը սերտորեն առնչվել է աստղագիտության կարգացման հետ։ Այսպես, օրինակ, ամենավաղ ժամանակներից մարդիկ տարվա եղանակները որոշել են Արեգակի, Լուսնի, անզեն աչքով տեսանելի հինգ մոլորակների և նշանավոր համաստեղությունների ու պայծառ աստղերի *(Սիրիուսի, Կապելլայի, Անտառեսի, Բեղելգեյզի, Վեգայի և այլ աստղերի)* երկարատև դիտումների հիման վրա, որը գործնական նշանակություն ուներ որսորդությամբ, խաշնարածությամբ ու երկրագործությամբ զբաղվող ժողովուրդների կյանքում։

Մեզ հասած տեղեկությունների համաձայն, Քոռնեո կղզու բնակիչները երկրագործական աշխատանքներն սկսում էին այն ժամանակ, երբ հորիզոնի վրա ծագում էր Բազումքը։ Այդ կազմված է 7 պայծառ աստղերից, գտնվում է Ցուլի համաստեղության մեջ, որը կարելի է տեսնել ապրիլի վերջերին՝ երեկոյան կողմը և առավոտյան՝ օգոստոսի սկզբներին։ Աշնան և ձմեռվա ամիսներին Բազումքը երևում է ամբողջ գիշերը։

Հին Չինաստանում տարվա եղանակները որոշում էին *Մեծ Արջի* համաստեղության դիրքով՝ երբ նրա պոչն ուղղված էր արևելք, նշանակում է գարուն է, դեպի հարավ՝ ամառ, դեպի արևմուտք՝ աշուն, դեպի հյուսիս՝ ձմեռ է։

*Օրն այն ժամանակամիջոցն է, որի ընթացքում երկրագունդը մի լրիվ պտույտ է կատարում իր առանցքի շուրջը։* Ժամանակի այս միավորի առավելությունն այն է, որ նրա կայուն լինելու ճշտությունը շատ ավելի մեծ է և գործնական հաշվումների համար՝ հաստատուն։

Ժամանակակից տեխնիկայի և գիտության զարգացումը, հատկապես ատոմային և կվարցային ճշգրիտ ժամացույցների հայտնագործումը թույլ տվեցին պարզել, որ երկրագունդն իր առանցքի շուրջը պտտվում է անհավասարաչափ։ Սակայն պտույտի այդ տատանումներն այնքան աննշան են, որ ժամանակի հաշվումների համար, կարելի է ասել, գործնական նշանակություն չունեն։

Օրը ավելի փոքր միավորների բաժանելու գաղափարը հնում տարբեր ժողովուրդների մոտ տարբեր է եղել։ Բայց վերջիվերջո ընդունվել է օրը բաժանել 24 ժամի, ժամը 60 րոպեի, րոպեն 60 վայրկյանի, այնպես, ինչպես ներկայումս է։ Օրինակ, հայտնի է, որ հայերը ժամը բաժանել են հինգ մասի (լուսնի փուլերի հաշվումները կատարելիս), ֆրանսիական հանրապետական օրացույցի համաձայն օրը բաժանվել է 10 ժամի, ժամը՝ 100 րոպեի, րոպեն՝ 100 վայրկյանի և այլն։

Հետաքրքրական է, որ հայերը օրվա 24 ժամերին տվել են առանձին անուններ, որոնք հա-

համապատասխանում են Արեգակի տեսանելի շարժման ընթացքին: Ցերեկվա ժամերն են՝ Այգ, Ծայգ, Զօրացեալ, Ճառագայթեալ, Շառավիղեալ, Երկրատես, Շանթակող, Հրակաթ, Հուրափայլեալ, Թաղանթեալ, Արալուս և Արփող: Գիշերվա ժամերն են՝ Խավարակ, Աղջամուղջ, Մթացեալ, Շաղավոտ, կամավոտ, Բավական, Խորթափեալ-Հավաթափեալ, գիզակ, Առավոտ, Լուսափայլ և Փայլածու:

Մի քանի խոսք այն մասին, թե մարդիկ որ պահից են հաշվել օրվա սկիզբը:

Հնագույն ժամանակներից սկսած՝ բաբելացիները, հույները, պարսիկները, ասորիները, եգիպտացիները և այլ ազգեր օրվա սկիզբը համարել են արևածագը, հրեաները, հայերը, իտալական որոշ նահանգների բնակիչները, հին աթենացիք, չինացիները և ուրիշներ՝ արևը մայր մտնելուց, իսկ արաբները՝ կեսօրից: Սակայն հետագայում նպատակահարմար եղավ օրվա սկիզբը համարել կես գիշերը, այնպես, ինչպես ընդունված է այսօր:

Դեռ շատ հին ժամանակներում մարդիկ զգում էին ժամանակի մեծ պարբերությունները օրերով հաշվելու անհարմարությունը և բնականաբար կարիք է զգացվել ժամանակի ավելի մեծ միավորի: Ժամանակի չափման հարմար միավոր էր տարին: Տարին այն ժամանակամիջոցն է, որի ընթացքում երկրագունդը մի լրիվ պտույտ է կատարում Արեգակի շուրջը: Հավանաբար, մի քանի հազար տարի մեր թվականությունից առաջ եգիպտացիներին, չինացիներին, քաղդեացիներին և հայերին հաջողվել է որոշել, որ տարին պարունակում է 365 օր: Հետագայում հաստատվել է, որ արեգակնային տարին պարունակում է $365^1/_4$ օր: Մինչև նոր տոմարի բարեփոխությունը օրացուցային միջին տարվա տևողությունն ընդունվել է 365 օր 6 ժամ: Սակայն, օրացուցային հաշվումները չբարդացնելու համար, նպատակահարմար է եղել յուրաքանչյուր չորս տարին մեկ անգամ տարվա տևողությունն ընդունել 366 օր (նահանջ տարի), իսկ մնացած երեքը՝ 365 օր (հասարակ տարի):

Անտարակույս, հին ժողովուրդների մոտ ժամանակը երկնային մարմինների շարժման միջոցով որոշելու հիմնական պատճառը հանդիսացել է կենսական անհրաժեշտությունը: Այսպես, օրինակ, եգիպտացիների կյանքում ամենավաղ ժամանակներից խոշոր դեր է խաղացել Նեղոսի հորդացումը, որն ամեն տարի կրկնվում է և այն էլ տարվա նույն ժամանակում: Այդ օրինաչափությունը ժամանակի առումով եգիպտացիների կողմից ընկալվեց Սիրիուսի շարժումները դիտելու միջոցով: Եգիպտական քուրմերը հատուկ հերթապահություն էին սահմանում, որպեսզի Սիրիուսը ծագելուն պես ժողովրդին ազդարարեն Նեղոսի հորդանալու մասին: «Նեղոսի հեղեղումների ժամանակաշրջանները հաշվելու անհրաժեշտությունը,— գրում է Մարքսը,— ստեղծեց եգիպտական աստղագիտությունը, իսկ դրա հետ միասին քրմերի՝ որպես երկրագործությունը ղեկավարողների կաստայի տիրապետությունը» (Կ. Մարքս, Կապիտալ, հատոր 1, էջ 537, Երևան, 1954):

Այնուհետև Մարքսը մեջբերում է հետևյալ տողերը. «Արևադարձը տարվա մեջ այն մոմենտն է, երբ սկսվում է Նեղոսի ջրերի վարարումը. եգիպտացիներն արևադարձը պետք է դիտեին առանձին ուշադրությամբ... Նրանց համար կարևոր էր տարվա այդ շրջանը որոշելը, որպեսզի կարգավորեին իրենց գյուղատնտեսական միջոցառումները: Այդ պատճառով էլ նրանք պետք է երկնքում որոնեին այն նշանը (այսինքն՝ Սիրիուսի առաջին անգամ ծագելու պահը—Հ. Բ.), որը ցույց էր տալիս այդ շրջանի արևադարձը» (նույն տեղում):

Հնագույն ժամանակներում եգիպտացիները տարին բաժանել են երեք մասի՝ *Հեղեղում, Հասնում* և *Հունձ:* Նրանք նոր տարվա սկիզբն ընդունել են Նեղոսի հորդանալու կամ *Սիրիուսի* առաջին, այսպես կոչված, հելիոտիկ ծագման ժամանակը, որը տեղի է ունենում մոտավորապես ամառային արևադարձի շրջանում:

Հնագույն շրջանում չինացիների, բաբելոնացիների, քաղդեացիների և մյուս ժողովուրդների աստղագիտական գիտելիքները հիմնականում ծառայել են ժամանակը հաշվելուն, օրացույցներ կազմելուն:

Մարդիկ ձգտում էին դիտումների միջոցով որոշել գարնանային օրահավասարի, աշնանային օրահավասարի և ամառային ու ձմեռային արևադարձերի ժամանակը: Ենթադրվում է, որ առաջին անգամ ամառային արևադարձի ժամանակը որոշել են հույն գիտնականներ Մետոնը և Եվկթեմոնոսը, որը խոշոր նշանակություն է ունեցել տարվա եղանակները որոշելու գործում:

Մարդկային կուլտուրայի պատմության սկզբնավորումից ժամանակի չափման հիմնական միավոր է եղել նաև ամիսը, որի ընթացքում կրկնվում են լուսնի փուլերը: Լուսնի փուլերի կրկնման ժամանակամիջոցը հավասար է 29 օր 12 ժամ 44 րոպե 2,8 վայրկյանի: Լուսնային ամիսը չկոտորակելու նպատակով ամսվա տևողությունը 29,5 օրի փոխարեն ընդունել են մեկընդմեջ 29 և 30-ական օր-պարունակությամբ: Բնական է, որ այն ժողովուրդները (չինացիներ, հրեաներ, հույներ, արաբներ և այլն), որոնք առաջնորդվել են լուսնային ամիսներով, նրանց օրացույցի հիմքը կազմել է լուսնային տարին, որն ունեցել է 354 օր:

Պատմությունից հայտնի է, որ որոշ ժողո-



վուրդներ, ինչպես եգիպտացիները, հայերը, հնդիկները և այլն, ամսվա տևողությունը կապել են ոչ թե լուսնի փուլերի պարբերաշրջանների, այլ Արեգակի տարեկան շարժման (իրականում երկրագնդի շարժման) հետ:

Սակայն ամսվա հասկացողությունը լուսնի փուլերի հետ կապելը պատմականորեն ու գիտականորեն ավելի է հիմնավորված, որի պատճառով էլ այն համընդհանուր է դառնում: Մի քանի տարբեր լեզուներով լուսին և ամիս բառերն ունեն նույն *արմատը, կամ նույն* իմաստը, ինչպես, օրինակ, հունարեն *մինի* նշանակում է Լուսին, իսկ *մին*՝ ամիս: Ռուսերեն ամիս (месяц) բառը որոշ դեպքերում հասկացվում է Լուսին: Ադրբեջաներեն *այ*, պարսկերեն *մահի* բառերը նշանակում են լուսին, և ամիս:

Հին Հռոմում և մի շարք այլ երկրներում սովորություն է եղել յուրաքանչյուր նոր ամսի առաջին օրվա, այսինքն՝ լուսինը նորելու մասին ազդարարել ժողովրդին: Լատիներեն կալենդա (Calengae) նշանակում է ամսի մեկը կամ նորալուսին, որտեղից և առաջացել է օրացույց (կալենդար) բառը:

Յոթնօրյա շաբաթի ծագման վերաբերյալ գոյություն ունեն մի քանի կարծիքներ: Ոմանց կարծիքով յոթնօրյա շաբաթը նորալուսնից մինչև կիսալուսին կամ կիսալուսնից մինչև լիալուսին ընկած ժամանակամիջոցն է, որը հավասար է մոտավորապես 7,5 օրվա, իսկ ոմանք էլ գտնում են, որ յոթնօրյա շաբաթն առնչված է յոթ լուսատուների՝ Արեգակի, Լուսնի, Մերկուրիի, Վեներայի, Մարսի, Յուպիտերի և Սատուրնի հետ: Շաբաթը յոթ օր ընդունելու համար որոշ ժողովուրդների մոտ հիմք են ծառայել լուսնի փուլերը, իսկ մյուսների մոտ՝ յոթ լուսատուները, որի պատճառով էլ շաբաթվա օրերը կրել են հենց այդ լուսատուների անունները: Շաբաթը յոթ օր ընդունելու վերաբերյալ կա այն առասպելը, թե իբր աստված 6 օրում ստեղծեց աշխարհը և յոթերորդ օրը հայտարարեց հանգիստ, որն, իհարկե, անհեթեթություն է:

Հին Եգիպտոսում, Չինաստանում և մի շարք այլ երկրներում սովորություն է եղել յոթնօրյա շաբաթվա փոխարեն գործածել հնգօրյակ և տասնօրյակ, որն, անշուշտ, կապված է եղել հաշիվը մատներով կատարելու հետ, բայց, ինչպես հայտնի է, այն հետագայում դուրս մղվեց կյանքից և հիմա ընդունված է յոթնօրյա շաբաթը:

Այն բանից հետո, երբ մարդիկ սովորեցին որոշել տարին, տարվա եղանակները, ամիսներն ու շաբաթները, անհրաժեշտություն առաջացավ սիստեմավորել ժամանակի այդ միավորները և ունենալ գիտականորեն մշակված օրացույց:

Հայտնի է, որ գոյություն են ունեցել երեք տիպի օրացույցներ՝ *լուսնային, լուսնա-արեգակնային* և *արեգակնային:*

Տարբեր ժողովուրդներ տարբեր ժամանակներում առաջնորդվել են վերը նշված օրացույցներից որևէ մեկով: Մեզ հասած պատմական հավաստի աղբյուրները վկայում են, որ մարդկային կուլտուրայի սկզբնավորման շրջանում ժամանակի հաշիվը հիմնականում տարվել է համաձայն լուսնի շարժումների, այսինքն՝ *լուսնային օրացույցով:* Այն ժողովուրդները, որոնք առաջնորդվում էին լուսնային օրացույցով, ըստ որի տարին պարունակում էր 354 օր, տարվա եղանակների և օրացուցային հաշիվների միջև առաջացած տարամիտումը չտկելու նպատակով դիմեցին արեգակնային օրացույցի օգնությանը:

Ինչպես հայտնի է, արեգակնային և լուսնային օրացուցային տարիների տարբերությունը յուրաքանչյուր տարում մոտավորապես հավասար է 11 օրվա (365—354=11), որը օրացույցի պատմության մեջ ընդունված է անվանել տարվա վերադիր: Որպեսզի այս տարբերությունն անընդհատ չաճի և խլում չառաջանա լուսնային օրացույցի և տարվա եղանակների, կամ արևադարձային տարվա միջև, կիրառության մեջ դրվեց 13-րդ ամիսը: Այդ անհամաչափությունը կարգավորելու ուղղությամբ դեռևս մեր թվականությունից 330 տարի առաջ խոշոր հայտնագործություն կատարեց հույն գիտնական Մետոնը: Նա հայտնաբերեց, որ 19 արևադարձային տարին մոտավորապես այնքան օր է պարունակում, որքան լուսնային 235 կուգընթացական ամիսը: Այլ կերպ ասած, Մետոնը հայտնաբերեց լուսնի փուլերը յուրաքանչյուր 19 տարին մեկ անգամ նույնությամբ կրկնվելու օրինաչափությունը, որը կոչվեց «Մետոնի ցիկլ»: Սա նշանակում էր, որ 19-ամյա պարբերությամբ կրկնվում են նաև տարվա վերադիրները (տե՛ս ստորև բերված աղյուսակը):

| Ոսկե թվեր | 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 | 9 | 10 | 11 | 12 | 13 | 14 | 15 | 16 | 17 | 18 | 19 |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Վերադիրներ | 0 | 11 | 22 | 3 | 14 | 25 | 6 | 17 | 28 | 9 | 20 | 1 | 12 | 23 | 4 | 15 | 26 | 7 | 18 |

Ուրեմն, եթե հայտնի է տվյալ թվականի «ոսկե թիվը», այսինքն՝ թե տվյալ տարին 19-ամյա պարբերաշրջանի որերորդ տարին է, ապա կարելի է որոշել նաև տվյալ թվականի վերադիրը: Օրինակ, եթե «ոսկե թիվը» հավասար է 5-ի, աղյուսակից երևում է, որ դրան համապատասխանող վերադիրը հավասար է 14-ի: Տարվա ոսկե թիվը որոշելու համար պետք է տարեթվին ավե-

ցացնել 17 և գումարը բաժանել 19-ի, ստացված մնացորդը կլինի ոսկե թիվը: Օրինակ, 1964 թվականի ոսկե թիվն է 5-ը (1964+17:19 մնացորդը=5-ի), հետևաբար այդ թվականի վերադիրը հավասար է 14-ի (նոր տոմարի հաշվով):

Անհրաժեշտ է նշել, որ ամեն տարի 11 օրով ավելանում է վերադիրը, սակայն 30-ից ավելի ստացվելիս պետք է հանել 30-ը և մնացորդը հաշվել որպես վերադիր, որը երևում է աղյուսակի տվյալներից, այսինքն վերադիրը 33-ի փոխարեն հաշվում ենք 3 (33—30=3): Լուսնի 19-ամյա պարբերաշրջանը Մետոնից մոտ 150 տարի առաջ հավանաբար հայտնի է եղել չինացիներին:

Այսպիսով, Մետոնի հայտնագործությունը հնարավորություն տվեց որոշել, թե 19-ամյա պարբերաշրջանի որ տարիներին է հարմար ընդունել լրացուցիչ 13-րդ ամիսը, որպեսզի չտկվի լուսնի և արևադարձային տարիների միջև առաջացող տարամիտումը: Որպեսզի 19 լուսնային տարին այնքան օր պարունակի, որքան պարունակում է 19 արևադարձային տարին, յուրաքանչյուր 19 տարվա ընթացքում պետք է ընդունել ևս 7 լրացուցիչ ամիս, ուստի այդ պարբերաշրջանի 3, 6, 8, 11, 14, 17 և 19-րդ տարիները հաշվել են 13 ամսից (նահանջ տարի), իսկ մնացած տարիները՝ 12 ամսից (հասարակ տարի): Լուսնի փուլերի հասակը որոշելու համար պետք է վերադրին գումարել ամսաթիվը և ամսվա հերթական կարգն ու գումարը բաժանել 30-ի: Բաժանումից ստացված մնացորդը կլինի լուսնի փուլի հասակը: Օրինակ, որոշենք, թե 1964 թվականի մայիսի 26-ին լուսինը քանի օրական է եղել: Քիչ առաջ ստացանք, որ 1964 թ. վերադիրը հավասար է 14-ի, հետևաբար վերադրի, ամսաթվի և ամսվա հերթական կարգի գումարը տվյալ դեպքում հավասար է 45-ի (14+26+5==45), 30-ի բաժանելուց հետո մնացորդը ստացվում է 15, նշանակում է 1964 թ. մայիսի 26-ին լուսինը եղել է 15 օրական՝ լիալուսին:

Հնում տարբեր ժողովուրդներ նոր տարվա սկիզբը սկսում էին տարբեր ժամանակներից. ինչպես, օրինակ, գարնանային օրահավասարից, ամառային արևադարձից, աշնանային օրահավասարից՝ դեկտեմբերի 25-ից, հունվարի 1-ից և այլն:

Տարվա սկիզբը հունվարի 1-ից սկսելն առաջին անգամ կիրառել են հռոմեացիները մեր թվարկությունից 45 տարի առաջ: Նոր տարին հունվարի 1-ից սկսելու պատճառն այն էր, որ Հռոմում կոնսուլները—կենտրոնական իշխանության ընտրովի ներկայացուցիչներն անցնում էին իրենց պարտականությունների կատարմանը հունվարի 1-ից:

Հին Ռուսաստանում նոր տարվա սկիզբը դարեր շարունակ եղել է մարտի 1-ը, քրիստոնեության ներմուծումով տարվա սկիզբը տեղափոխվել էր սեպտեմբերի 1-ը, իսկ 1700 թվականին Պետրոս I-ի նախաձեռնությամբ, երբ ընդունվեց հին տոմարը, նոր տարվա սկիզբը համարվեց հունվարի 1-ը:

Ժամանակի գործոնը մարդկության ի սպաս դնելու տեսակետից, խոշոր նվաճում է նաև միջին ժամային գոտիական սիստեմին անցնելը, որը կիրառվել է 1884 թվականից: Ըստ այդ սիստեմի երկրագունդը բաժանված է 24 ժամային գոտու, դրա համար էլ իրար հաջորդող գոտիների միջև ժամացույցների սլաքներն իրարից տարբերվում են մեկ ժամով, իսկ րոպեն ու վայրկյանը մնում են անփոփոխ: Օրինակ, Մոսկվան գտնվում է 2-րդ ժամային գոտում, իսկ Երևանը 3-րդ. դրա համար էլ Երևանի ժամանակը Մոսկվայի նկատմամբ մեկ ժամով առաջ է, որովհետև Երևանը Մոսկվայի նկատմամբ դեպի արևելք է գտնվում: Ռուսաստանը ժամանակի գոտիական սիստեմի կիրառմանն անցել է 1919 թվականից:

Օրացույցի պատմության մեջ հիշատակության արժանի են *հռոմեական, չինական, եգիպտական, հայկական* [1], *պարսկական, արաբական, հրեական, քաղդեական, հունական, հնդկական, ֆրանսիական հանրապետական* և այլ ժողո-

---

1 *Հայերը վաղ ժամանակներից ունեցել են արեգակնային սիստեմի օրացույց, տարին 365 օր, 12 ամսից յուրաքանչյուրը 30 օր պարունակությամբ և ավելյաց 5 օր: Հայոց հին տոմարի ամիսներն են՝ Նավասարդ, Հոռի, Սահմի, Տրե, Քաղոց, Արաց, Մեհական, Արեգ, Ահեկան, Մարերի, Մարգաց, Հրոտից և Ավելյաց: Հայերը նոր տարվա սկիզբը համարել են Նավասարդի 1-ը, որը համապատասխանում էր օգոստոսի 11-ին: Նախքան Հովհաննես Սարկավագի բարեփոխությունը, հայերն ունեցել են շարժական տոմար, ըստ որի նահանջ տարիների ժամանակ հայոց տոմարը հուլյանի նկատմամբ 1 օրով առաջ էր ընկնում: Հայերը նոր թվականությունն սկսել են Քրիստոսի ծննդյան 553 թվականի հուլիսի 11-ին, երբ Նավասարդի 1-ը համապատասխանում էր հուլիսի 11-ին:*

*Հայոց տոմարը հետաքրքրական է նաև այն տեսակետից, որ ամսվա 30 և ավելյաց 5 օրերն ունեցել են առանձին անուններ: Ամսվա անունները հայկական ծագում ունեն և հիմնականում կրում են հեթանոսական շրջանում պաշտամունքի վայրերի, լեռների, ամրոցների, մեհյանների անուններ:*

*Ներկա և հայոց մեծ թվականը մեկը մյուսով արտահայտելու համար պետք է վարվել հետևյալ կերպ՝ եթե հայոց անշարժ տոմարով իրադարձությունը տեղի է ունեցել օգոստոսի 11-ից առաջ, հայոց և հուլյան թվականների տարբերությունը պետք է վերցնել 552-ը, իսկ օգոստոսի 11-ից հետո՝ 551 տարի, որովհետև հուլյան տոմարով թվականը, մեկ տարով մեծանում է հունվարի 1-ից, իսկ հայոց տոմարով՝ Նավասարդի 1-ից (օգոստոսի 11-ից):*



վուրդների օրացույցները: Դրանցից համեմատաբար լայն կիրառության է արժանացել հռոմեական օրացույցը, որն ունեցել է երեք հիմնական բարեփոխություն, որով առաջնորդվում ենք ներկայումս: Ուստի անհրաժեշտ ենք համարում մի քանի խոսքով ծանոթացնել այդ օրացույցի պատմության հետ:

Հռոմեական օրացույցը առասպելական Հռոմուլոս կայսրի օրոք (753 տ. մ. թ. ա.) ունեցել է 10 ամիս և պարունակել է 304 օր, որը ոչ լուսնային տարի էր և ոչ էլ արեգակնային: Քանի որ այդ օրացույցի հաշիվները չէին համընկնում տարվա եղանակների հետ, Հռոմի կայսր Նումա Պոմպիլիոսը 10 ամիսների թվին ավելացրեց ևս երկուսը՝ հունվարը և փետրվարը: Սակայն Նումա Պոմպիլիոսի կատարած բարեփոխությունը քուրմերի կողմից ճիշտ չկիրառելու հետևանքով օրացուցային հաշվումների մեջ խառնաշփոթություն է առաջանում, որի հետևանքով օրացուցային տարին խիստ շեղվում է արևադարձային տարուց: Նումա Պոմպիլիոսից մոտ 650 տարի հետո օրացույցի բարեփոխման հարցով զբաղվեց Հռոմի կայսր Հուլիոս Կեսարը (45 տ. մ. թ. ա.), երբ օրացուցային և արևադարձային տարիների միջև մոտ 70 օրվա շեղում էր առաջացել: Այդ սխալը վերացնելու նպատակով բարեփոխման առաջին տարին հաշվել են 445 օր, որը կոչվել է շփոթության տարի:

Հուլիոս Կեսարը տարվա միջին տևողությունն ընդունեց $365^1/_4$ օր, իսկ որպեսզի տարին կոտորակային մաս չունենա, գործածության մեջ մըտցըվեցին նահանջ և հասարակ տարիները: Յուրաքանչյուր չորս տարուց երեք տարին հաշվեցին 365 օր (հասարակ տարի), իսկ չորրորդ տարին՝ 366 (նահանջ տարի): Այս օրացույցը կոչվեց «հուլյան տոմար» կամ հին տոմար, որի համաձայն այն տարեթվերն են համարվել նահանջ, որոնք առանց մնացորդի բաժանվում են 4-ի վրա: Հին տոմարով օրացուցային տարին արևադարձայինի նկատմամբ յուրաքանչյուր տարում 11 րոպե 14 վայրկյանով ետ էր ընկնում, որը կուտակվելով մեկ օր էր դառնում մոտավորապես 128 տարում: Սկզբնական շրջանում այդ նշմարելի չէր, սակայն 16-րդ դարում օրացուցային տարին այդ սխալի պատճառով ետ էր մնում 10 օրով:

Այդ սխալը շտկելու և նորից թույլ չտալու նպատակով 1582 թվականին Հռոմի Գրիգորիոս 13-րդ պապի նախաձեռնությամբ կատարվում է օրացույցի արմատական բարեփոխություն: Ինչպես հայտնի է, ըստ հին տոմարի բոլոր դարագլուխ թվականները հանդիսանում էին նահանջ, որովհետև այդ թվականներն առանց մնացորդի բաժանվում են 4-ի վրա: Նոր, Գրիգորյան տոմարով դարագլուխ թվականներից միայն այն տարիները համարվեցին նահանջ, որոնք առանց մնացորդի բաժանվում են 400-ի վրա: Այսպիսով, եթե ըստ հին տոմարի 400 տարուց 100-ը համարվում էր նահանջ, իսկ 300-ը հասարակ, ապա նոր տոմարով յուրաքանչյուր 400 տարուց 97-ն է նահանջ, 303-ը հասարակ: Ընդ որում հին տոմարի 400 տարվա ընթացքում 3 օրվա շեղումը շտկվում է:

Հին տոմարի մեջ առաջացած 10 օրվա սխալը ճշտելու համար Հռոմի Գրիգորիոս 13-րդ պապը 1582 թվականին հրամանագրեց հոկտեմբերի 4-ից հետո հինգի փոխարեն հաշվել 15, այսինքն օրացույցը 10 օրով առաջ գցել: Հարկ է նշել, որ Ռուսաստանը նոր տոմարի անցավ Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո: 1918 թ. փետրվարի 2-ը համարվեց փետրվարի 14, որովհետև այդ ժամանակ հին և նոր տոմարի տարբերությունն արդեն դարձել էր 13 օր:

Այսպիսով, դարերի ընթացքում օրացույցների բարեփոխությունների հիմնական նպատակն էր՝ ունենալ կյանքի կարգացման պահանջները բավարարող ավելի ճշգրիտ ու հարմար տոմար: Այս առումով արեգակնային օրացույցին անցնելը խոշոր հեղաշրջում էր մարդկային կուլտուրայի կարգացման մեջ: Համաշխարհային գիտության ու տեխնիկայի կարգացման այսօրվա մակարդակը պահանջում է ունենալ միասնական ու մըշտական օրացույց աշխարհի բոլոր ժողովուրդների համար:

Ահա այս կապակցությամբ ցանկանում ենք ընդհանուր գծերով շարադրել ներկայիս օրացույցի թերությունները և ապագա համաշխարհային միասնական օրացույցի համար կազմած նախագծերի առավելությունները:

Ինչպես հայտնի է, ներկայումս գործող օրացույցի ամիսներն ունեն անհավասար թվով օրեր՝ 31 և 30 օր, իսկ փետրվարը՝ 28 (հասարակ տարիներում) և 29 օր (նահանջ տարիներում): Ամիսները չեն պարունակում ամբողջ թվով շաբաթներ՝ յոթնօրյակներ, բացառությամբ փետրվարի, այն էլ միայն հասարակ տարիներում: Հավասար թվով օրեր չեն պարունակում նաև կիսամյակներն ու եռամսյակները: Տարվա առաջին կիսամյակը 181 օր է (հասարակ տարիներին) և 182 օր նահանջ տարիներին, իսկ երկրորդ կիսամյակը 184 օր: Տարվա առաջին եռամսյակը պարունակում է 90 կամ 91 օր, երկրորդը՝ 91 օր, երրորդը և չորրորդը՝ 92-ական օր: Այս անհամաչափությունները մեծ դժվարություններ են ստեղծում ինչպես համաշխարհային տնտեսական կապերի ընդլայնման, այնպես էլ ներքին պլանավորման հարցերում: Այսպես օրինակ, քանի որ ամսվա մեջ աշխատանքային օրերի թիվը փոխվում է մեկ կամ երկու օրով

հարկ է լինում յուրաքանչյուր ամսվա և եռամսյակի համար կազմել առանձին պլան:

Համաշխարհային միասնական օրացույց ունենալու պրոբլեմը միջազգային առումով առաջին անգամ քննության է առնվել 1922 թվականին կայացած միջազգային աստղագիտական համագումարում: Օրացույցի մեջ բարեփոխություններ կատարելու աշխատանքները կազմակերպելու և ղեկավարելու համար 1923 թ. Ազգությունների լիգային կից կազմակերպվել է համաշխարհային միասնական, մշտական օրացույցի բարեփոխման կոմիտե, որը մինչ 1931 թվականը քննության էր առել տարբեր երկրներից ներկայացված ավելի քան 200 նախագիծ:

Ըստ իրենց բնույթի այդ նախագծերը կարելի էր բաժանել երկու հիմնական տիպի. առաջինը՝ 13 ամսյա և երկրորդը՝ 12 ամսյա օրացույց: 13 ամսյա օրացույցում յուրաքանչյուր ամիսը պետք է ունենար 28 օր, որից 24-ը աշխատանքային, իսկ չորսը հանգստյան: Այս հաշվով տարին պետք է պարունակեր 364 օր, բայց որպեսզի այն համապատասխաներ արևադարձային տարվան, հասարակ տարիների ժամանակ նախատեսվում էր մեկ, իսկ նահանջ տարիներին երկու լրացուցիչ օր, որը չպետք է մտներ ամիսների և շաբաթների հաշվի մեջ: Հասարակ տարիներին այդ մեկ օրը նախատեսվում էր դեկտեմբերի վերջին օրվա և հունվարի մեկի միջև, որպես ժողովուրդների բարեկամության ու խաղաղության տոն, իսկ նահանջ տարիներին երկրորդ լրացուցիչ օրը հունիսի 30-ի և հուլիսի 1-ի միջև: Այդ նախագծի համաձայն 13-րդ ամիսը պետք է կոչվեր «Արեգակ» և տեղավորվեր հուլիսի և օգոստոսի միջև:

13-ամսյա օրացույցի նախագիծը մի շարք թերություններ ունի. նախ՝ տարին հնարավոր չէ բաժանել կիսամյակի կամ եռամսյակի, որովհետև 13-ը չի բաժանվում 2-ի և 4-ի, որը շատ կարևոր է, և երկրորդ՝ դժվարություններ ու խառնաշփոթություններ կստեղծեր պատմական տարեթվերի համադրության գործում:

Համաշխարհային մշտական օրացույցի համար Ազգերի լիգայի խորհրդի 1937 թ. հունվարի 23-ի որոշմամբ ընդունվել է 12-ամսյա օրացույցի նախագիծը: Այդ նախագծի էությունն ընդհանուր գծերով հետևյալն է. տարին բաժանել 4 եռամսյակի, յուրաքանչյուրը 91 օր պարունակությամբ: Բոլոր եռամսյակների առաջին ամիսը հաշվել 31 օր, իսկ երկրորդ և երրորդ ամիսները՝ 30-ական օր: Այդ հաշվով տարվա տևողությունն ստացվում է 364 օր, որպեսզի օրացուցային և արևադարձային տարիների միջև անհամապատասխանություն չառաջանա, նախատեսված է հասարակ տարիներում ընդունել մեկ, իսկ նահանջ տարիներում՝ երկու լրացուցիչ օր:

12-ամսյա համաշխարհային օրացույցի նախագծի հիմնական առավելությունն այն է, որ նոր տարին միշտ կսկսվի կիրակի օրով և կվերջանա շաբաթ օրով: Եռամսյակների առաջին ամիսները նույնպես կսկսվեն կիրակի օրով և կվերջանան շաբաթ օրով, երկրորդ ամիսները կսկսվեն չորեքշաբթի օրով և կվերջանան հինգշաբթի օրով, եռամսյակների վերջին ամիսները կսկսվեն ուրբաթ օրով և կվերջանան շաբաթ օրով: Այսպես, եթե հայտնի է, թե առաջին եռամսյակի ամիսների օրերը շաբաթվա որ օրերն են, ապա կարելի է անմիջապես որոշել մյուս ամիսների շաբաթվա օրերը, որովհետև եռամսյակների համապատասխան ամիսների միջև տարբերություն չկա:

Պարզության համար բերենք մի օրինակ. եթե որևէ տարեթվի՝ մարտի 20-ը շաբաթ է, նշանակում է մյուս եռամսյակների երրորդ ամիսների 20-ը նույնպես շաբաթ է, և այդպես շարունակ: 12-ամսյա օրացույցի նախագիծը Գրիգորյան տոմարի համեմատությամբ ունի նաև այն առավելությունը, որ տարին բաժանվում է երկու հավասար կիսամյակի, 182 օր պարունակությամբ, չորս եռամսյակի՝ 91-ական օր պարունակությամբ, յուրաքանչյուր եռամսյակ ունի 13 լրիվ շաբաթ և ամենահիմնականը բոլոր ամիսներում աշխատանքային օրերի թիվը հավասար է 26-ի: Սովետական Միությունում միայն այն ամիսները կունենային 26 աշխատանքային օր, որոնց մեջ ռևոլյուցիոն տոն օրեր չկան: Համաշխարհային մշտական 12 ամսյա օրացույցը նախատեսվել էր գործածության մեջ մտցնել 1937 թ. հունվարի 1-ից (որովհետև այդ թվականի նոր տարին սկսվել է կիրակի օրով), սակայն մինչև հիմա չի հաջողվել անցնել այդ օրացույցի կիրառմանը:

1954 թվականին Հնդկաստանի առաջարկությամբ 12-ամսյա օրացույցի նախագիծը իրագործելու հարցով զբաղվում է Միավորված Ազգերի Կազմակերպությունը: Համաշխարհային նոր օրացույցի նախագիծը պաշտպանում են Սովետական Միությունը, Ֆրանսիան, Հնդկաստանը, Հարավսլավիան, Եգիպտոսը և ուրիշ շատ երկրներ: Սակայն մինչև այժմ ընդհանուր համաձայնություն չի կայացել: Այս հարցում որոշ երկրների հիմնական առարկությունն այն է, որ օրացուցային նոր բարեփոխությունը կտեղաշարժի կրոնական տոների ժամանակը:

Չնայած նոր օրացույցին անցնելու վերաբերյալ կան տարաձայնություններ, սակայն պետք է հուսալ, որ վաղ թե ուշ այն կընդունվի, որովհետև այդ են պահանջում մարդկության շահերը:

Անտարակույս նոր օրացույցին անցնելը նոր ավանդ կլինի համաշխարհային կուլտուրայի պատմության մեջ:

# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ՈՐՏԵ՞Ղ Է ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ

### ԱՐՏՈ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

Լենինյան ուղիով ամսագրի 1963 թ. 9-րդ համարում մտքերի փոխանակության կարգով հրապարակվեց մեր հոդվածը՝ Սոցիալիստական ազգերի հատկանիշների հարցի շուրջը վերտառությամբ:

Այդ հոդվածում քննադատության էինք ենթարկել սովետական առանձին տեսաբանների առաջադրած այն կոնցեպցիան, ըստ որի իբր կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում սոցիալիստական ազգերի չորս հատկանիշներից միայն լեզվի ընդհանրության հատկանիշն է մընում ուժի մեջ, իսկ մնացած երեք հատկանիշները, այն է՝ տնտեսական կյանքի, տերիտորիայի և հոգեկան կերտվածքի ընդհանրության հատկանիշները մարում են և այդպիսով դադարում են արդի ժամանակաշրջանում սոցիալիստական ազգերի հատկանիշներ լինելուց, նրանք այլևս կիրառելի չեն սոցիալիստական ազգերի նկատմամբ: Նշել էինք նաև, որ այս կոնցեպցիան իր վառ արտահայտությունն է գտել «Вопросы Истории» հանդեսի 1961 թվականի № 12-ում:

Սոցիալիստական ազգերի երեք հատկանիշների մարման կոնցեպցիան իր պաշտպանության տակ առավ փիլիսոփայական գիտությունների դոկտոր Հ. Աղաջանյանը, որը հանդես եկավ Լենինյան ուղիով ամսագրի այս տարվա երրորդ համարում՝ Հիմնովին առարկում ենք հոդվածով:

Մեր ընդդիմախոսի փաստարկները հանգում են հետևյալին.

ա) ժամանակին իբր Լենինն է ասել մարման պրոցեսի մասին.

բ) իբր «սովետական սոցիալիստական շինարարության փորձի ամփոփումն է հաստատում մարման պրոցեսը»:

գ) իբր «ազգերի ծաղկման և մերձեցման դիալեկտիկան» է հաստատում երեք հատկանիշների մարման պրոցեսը.

Կանխատեսե՞լ է արդյոք Լենինը սոցիալիստական ազգերի երեք հատկանիշների մարումը սոցիալիզմի և սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանում:

Հ. Աղաջանյանը գրում է. «Էլ ե՞րբ կարող է տեղի ունենալ այդ հատկանիշների մարման պրոցեսը, եթե ոչ այսօր, կոմունիզմին անցնելու շրջանում»:

Նա հետևեցնում է, որ «Լենինը դեռևս կապիտալիզմի զարգացման պայմաններում նշում էր պրոլետարիատի պատմական դերը ազգերի մերձեցման և ձուլման գործում: Էլ ի՞նչ խոսք կարող է լինել սոցիալիզմի մասին, երբ նման պրոցեսի համար ստեղծված են բոլոր քաղաքական, սոցիալական և տնտեսական նախադրյալները» (Լենինյան ուղիով, № 3, 1964 թ.):

Լենինը շատ անգամ նշել է, որ «Սոցիալական անխտիր բոլոր հարցերը վերլուծելիս մարքսիստական թեորիայի անպայմանորեն պահանջն է՝ այդ հարցերը դնել որոշ պատմական շրջանակների մեջ» (Երկեր, հ. 20, էջ 408), այլապես մարքսիստական թեորիան կվերածվեր դոգմաների գումարի, դոգմատիզմի:

Տեսնենք, թե Հ. Աղաջանյանի՝ Լենինից բերած ցիտատը ի՞նչ կապակցությամբ է ասված և ո՞ր ժամանակին է վերաբերում: Լենինը սուր քննադատության էր ենթարկում մանրբուրժուական «կուլտուր-ազգային ավտոնոմիայի» տեսությունն ու ծրագիրը, որոնք ժամանակին պաշտպանում էին ավստրիական սոցիալ-դեմոկրատները, «Բունդը», ուկրաինական և կովկասյան նացիոնալիստական պարտիաները՝ հակադրվելով մեր պարտիայի ծրագրային դրույթին, ազգերի ինքնորոշման իրավունքի պահանջին:

«Կուլտուր-ազգային ավտոնոմիայի» ծրագիրը, ինչպես Լենինն է նշում, կառուցված էր «ազգային կուլտուրայի» լոզունգի, «ազգության» սկզբունքի վրա:

## ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ՈՒ ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Արդյո՞ք ամսագիրը բավարարում է ընթերցողների պահանջը, իր հրապարակած նյութերով որքանո՞վ է օգնում նրանց պրակտիկ աշխատանքում. նրանք ի՞նչ թեմաներով կուզենային հոդվածներ կարդալ և ո՞ր հեղինակներին կուզենային, որ հանդես գան ամսագրում. ի՞նչ կարծիք ունեն ամսագրի ձևավորման, տպագրված հոդվածների մատչելիության և ոճի մասին. տպագրված հոդվածներից որո՞նք չեն բավարարել իրենց պահանջը և ինչո՞ւ— ահա այն հարցերը, որոնցով «Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը դիմել էր իր բոլոր ընթերցողներին և խնդրել՝ նամակով հայտնել իրենց պատասխանը։

Բազմաթիվ ընթերցողներ սիրով են կատարել մեր խնդրանքը։ Խմբագրությանն ուղարկած իրենց նամակներում նրանք սրտաբաց կերպով խոսում են ամսագրում տպագրված տարբեր հոդվածների, բարձրացված առանձին հարցերի և բոլոր այն նյութերի մասին, որոնք հետաքրքրել են նրանց և օգնել պրակտիկ աշխատանքում։ Շատ ընթերցողներ նշում են, որ ամսագիրը ճիշտ է վարվում, երբ իր յուրաքանչյուր համարում հոդվածներ է տպագրում մարքսիստական-լենինյան տեսության առանձին հարցերի, կոմունիզմի կառուցման պրոբլեմների, պարտիայի ընթացիկ քաղաքականության և այն գործնական հարցերի մասին, որոնք այսօր ծառացած են պարտիական կազմակերպությունների, արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների կոլեկտիվների, ստեղծագործական միությունների, գիտության ու կուլտուրայի գործիչների, մեր ամբողջ հասարակայնության առջև։

Սիսիանի շրջանի Բռնակոթ գյուղից Լ. Ղուկասյանը, Աշտարակի շրջանի Օհանավանի դպրոցից Մ. Սերոբյանը, Ադրբեջանական ՍՍՌ Լեռնային Ղարաբաղի ինքնավար մարզի Հադրութի շրջանի Տումի դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցիչ Խ. Բաղդասարյանը, Երևան քաղաքից Ա. Մարտիրոսյանը, Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղից Մ. Ալավերդյանը, Շահումյանի տրիկոտաժ ֆաբրիկայից Ա. Օհանյանը և մյուսները գրում են, որ տեսության տարբեր հարցերի առթիվ տպագրված հոդվածներն օգնում են պրոպագանդիստներին, մեր բոլոր կադրերին՝ հարստացնելու իրենց քաղաքական գիտելիքները, ավելի խոր պատկերացնելու մեր պարտիայի ներքին և արտաքին քաղաքականության հարցերը, գիտական կոմունիզմի հիմունքները։ Այդ առումով,— գրում է պրոպագանդիստ Մ. Սերոբյանը,— ինձ մեծ բավականություն պատճառեցին Ռ. Վարդանյանի՝ «Գիտական կոմունիզմը մարքսիզմ-լենինիզմի բաղկացուցիչ մասն է», Լ. Կարապետյանի՝ «Գիտական կոմունիզմի զարգացման լենինյան էտապը», ինչպես նաև Տ. Ալեքսանյանի և Մ. Մարտիկյանի՝ «Խաղաղությունը սոցիալիզմի դաշնակիցն է» հոդվածները։

Ընթերցող Լ. Ղուկասյանը գրում է, որ մեր մարդկանց կոմունիստական դաստիարակության և մարքսիստական աշխարհայացքի ձևավորման գործում «Լենինյան ուղիով» ամսագիրը դեռևս մեծ անելիքներ ունի։ Լուրջ թերություն է, երբ ամսագրում առանձին հոդվածներ համարյա կրկնվում են և չեն պատասխանում տեսական շատ հարցերի։ Կան հեղինակներ, որոնք տարվում են այլ աղբյուրներից անընդհատ մեջբերումներով ու երբեմն էլ արտագրություններով, որի հետևանքով հոդվածում չի երևում իրենց սեփական դեմքը։

Ինչպես ընկ. Լ. Ղուկասյանը, այնպես էլ ընկերներ Ա. Պողոսյանը, Ս. Ավագյանը, Ա. Համբարձումյանը, Խ. Բաղդասարյանը, Գ. Սարգսյանը և մյուսները ցանկություն են հայտնում ամսագրում հոդվածներ տպագրել գիտական կոմունիզմի, դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի, խաղաղ ճանապարհով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ուղիների, երկու սիստեմների խաղաղ գոյակցության և պատերազմի կանխման հնարավորության, միջազգային դրության, մեր պարտիայի երեք ծրագրերի, արդի ժամանակաշրջանում կապիտալիստական աշխարհում ծավալվող դասակարգային պայքարի, ազգային ազատագրական շարժումների, տարբեր երկրներում սոցիալիզմի կառուցման ուղիների ու ձևերի, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների պառակտիչ գործունեության դեմ ՍՄԿՊ-ի ու եղբայրական մյուս կոմպարտիաների մղած պայքարի մասին։

Մի շարք ընթերցողներ ցանկանում են նյութեր տպագրել պարտիայի ու պետության ականավոր գործիչների, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման լիդերների, Սովետական Միության հայրենական մեծ պատերազմում աչքի ընկած զորավարների, հերոսների ու մարտիկների, ինչպես նաև հայ ժողովրդի պատմության, Երևան քաղաքի վերակառուցման հեռանկարների, գիտական աշխատանքների կոորդինացման, երկրաբանության, գիտության նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորման մասին և այլն։

Կիրովականից ընկ. Ա. Սահակյանը գրում է. «Որպես ուսուցիչ և պրոպագանդիստ անձամբ ինձ համար, այնպես էլ մեր մյուս ուսուցիչների ու պրոպագանդիստների համար, խիստ ցանկալի է, որ ամսագրում հաճախ լինեն պատմա-աշխարհագրական ակնարկներ սոցիալիստական երկրների մասին, ապա նաև այդ երկրների տնտեսական, կուլտուրական կյանքի զարգացման, համագործակցության վերաբերյալ։ Այդպիսի նյութերը մեզ մեծ չափով կօգնեն թարմ ու նոր փաստերով հագեցնել ու ավելի հետաքրքիր դարձնել ուսուցողական մեր աշխատանքները, էլ ավելի լավ իմանալու այդ երկրների ժողովուրդների պայքարն ու առօրյան։

Ոչ պակաս հուզիչ են մեզ համար նույնպիսի նյութեր նաև անկախության հասած Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի երկրների մասին...։

Լավ կլինի ամսագրում, որպես լավագույն փորձի փոխանակում ու տարածում, նյութեր զետեղվեն մեր սովետական, տնտեսական ու քաղաքական ղեկավար աշխատողների պրակտիկ գործունեության վերաբերյալ, որոնցում արտահայտվեր նրանց աշխատանքի դրական և ուսանելի կողմերը. դրանով իսկ ամսագիրը օգնած կլիներ մեր կադրերի դաստիարակությանը...»։

Առանձին ընթերցողներ իրենց նամակներում անդրադարձել են գրականության առթիվ ամսագրում տպագրված հոդվածներին։ Սպիտակի շրջանի Ծիլքար գյուղից Ս. Ավագյանը ջերմորեն է խոսում ամսագրի № 4-ում տպագրված Գ. Լալայանցի՝ «Լենինի կերպարը արևելքի ժողովուրդների պոեզիայում» հոդվածի մասին։ Դրվատելով ամսագրի № 5-ում տպագրված Ս. Արզումանյանի՝ «Նոր մարդու գրական կերպարը» հոդվածը, Խ. Բաղդասարյանը ցանկանում է հոդված տպագրել նաև «Կերպար, տիպ, բնավորություն» թեմայով։

Տարբեր բնագավառներում աշխատող բազմաթիվ ընկերներ ցանկություն են հայտնում, որ ամսագիրն ավելի լայնորեն լուսաբանի արվեստի ու գրականության, կուլտուրական շինարարության, կենցաղի, երիտասարդության աշխատանքային դաստիարակության հարցերը, ինչպես նաև, կոմունիզմի ծավալուն կառուցման ուղղությամբ մեր երկրի ձեռք բերած հոյակապ նվաճումները։

Ընթերցող Ա. Համբարձումյանը ցանկանում է ամսագրում հոդված տպագրել բանվորների ու ծառայողների դաստիարակության ուղղությամբ արհմիութենական կազմակերպությունների անելիքների մասին, իսկ Ա. Միքայելյանը ցանկանում է իմանալ, թե ինչ ցուցանիշների առկայության դեպքում են օղակներն ու բրիգադներն արժանանում կոմունիստական աշխատանքի կոչման։

Ընթերցողների հետաքրքրասիրությունն առանձնապես մեծ է քիմիական արդյունաբերության զարգացման և գյուղատնտեսության քիմիացման հարցերի նկատմամբ։ Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղի դպրոցի դիրեկտոր Մ. Ալավերդյանը, Ալավերդու շրջանի Շնող գյուղի սովխոզի պարտկազմակերպության քարտուղար Ա. Թամազյանը, Երևանի Սովետաշեն ավանից Մ. Երմազյանը և ուրիշներ ցանկություն են հայտնում ամսագրում հոդվածներ տպագրել այն մասին, թե ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում ինչպե՞ս է ներդրվում քիմիան և ինչ արդյունք է տալիս։ Արդյո՞ք լավ չի լինի,— գրում է Մ. Երմազյանը,— որ քիմիային նվիրված հոդվածները լինեն առանձին հարցերի մասին, որպեսզի հնարավոր լինի կոնկրետ օրինակներով ցույց տալ քիմիական նյութերի օգտագործման չափերն ու տնտեսական արդյունավետությունը։ Այս առումով ցանկալի է հոդվածներ տպագրել հետևյալ թեմաներով. «Քիմիան այգեգործության մեջ և նրա օգտագործման նորմաները», «Քիմիան թեթև արդյունաբերության մեջ» և այլն։ Դրանց անհրաժեշտությունը բխում է նրանից, որ տվյալ հարցերի վերաբերյալ թարմ օրինակներով քիչ գրականություն կա, իսկ առանձին թեմաների վերաբերյալ համարյա չկա։

«Շատ ցանկալի է իմանալ,—գրում է Ա. Թամազյանը,— թե ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան և փետրվարյան պլենումներից հետո գյուղատնտեսության մեջ գիտության կողմից ինչ նորամուծություններ են կատարված»։

Ընթերցողներից շատերը ցանկանում են, որ տնտեսության և գիտության հարցերի առթիվ

ամսագրում հանդես գան ակադեմիկոսները և անվանի գիտնականները։

Էջմիածնից Գ. Սարգսյանը և ուրիշ ընթերցողներ ամսագրի խմբագրությունից պահանջում են քննադատական հոդվածներ տպագրել և խիստ պարսավանքի ենթարկել այն աշխատողներին, որոնք տեղիք են տալիս բյուրոկրատիզմի, պետական ունեցվածքի հափշտակության, չարաշահում են իրենց պաշտոնական դիրքը, զբաղվում են աչքակապությամբ և հանդուրժողականություն են ցուցաբերում այն երևույթների նկատմամբ, որոնք անհարիր են մեր հասարակության բնույթին և չեն բխում կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքներից։

Մի շարք ընկերներ և, առանձնապես, սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներ պահանջում են, որ ամսագրում ավելի լայն տեղ հատկացվի պարտիական կյանքի հարցերին։ Նրանք ցանկանում են հոդվածներ կարդալ պարտիական ու տնտեսական աշխատանքի զուգակցման, կադրերի ընտրության, դաստիարակության ու տեղաբաշխման, ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրականացման, ժողովների նախապատրաստման ու անցկացման, կոլեկտիվ ղեկավարության, պարտիական վերահսկողության հանձնաժողովների աշխատանքի փորձի և նման մի շարք հարցերի մասին։ Մարտունու շրջանից ընկ. Ս. Դարբինյանը գրում է, որ անհրաժեշտ է մեկ հոդվածով որոշակիություն մտցնել գյուղական պարտիական կոմիտեի հրահանգչի և արտադրական վարչության տեսուչ-կազմակերպչի աշխատանքի բնույթի մեջ և ցույց տալ նրանց ֆունկցիաներն ու իրավունքները։

Արթիկի արտադրական կոմբինատի աղյուսի ցեխի վարիչ Ա. Պողոսյանը ցանկություն է հայտնում, որ խմբագրության աշխատողները հաճախակի լինեն տեղերում, մոտիկից զրույցներ ունենան ընթերցողների հետ, հաշվի առնեն նրանց ցանկություններն ու առաջարկությունները։ Ընթերցողները նաև պահանջում են, որ խմբագրության աշխատողները ուշադիր վերաբերմունք ցուցաբերեն նամակների ու թղթակցությունների նկատմամբ, ժամանակին պատասխանեն ստացված հարցերին։

Դրականորեն արտահայտվելով ամսագրի ձևավորման, հոդվածների մատչելիության ու ոճի մասին, մի շարք ընթերցողներ ցանկություն են հայտնում ավելի գեղեցիկ ձևավորելու ամսագրի շապիկը։ Երևանից ընկ. Ա. Մարտիրոսյանը գրում է, որ ամսագրում քիչ տեղ է հատկացվում գիտության ու տեխնիկայի նորություններին։ Քիչ է նաև առանձին հոդվածների թեմաներին համապատասխան քարտեզների ու լուսանկարների տպագրումը։

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությանն ուղարկած իրենց նամակներում ընթերցողներն արտահայտել են նաև բազմաթիվ այլ ցանկություններ, արել արժեքավոր առաջարկություններ ու դիտողություններ։ Խմբագրությունը ուշի-ուշով հաշվի կառնի այդ բոլորը և ամենկերպ կաշխատի բավարարել ամսագրի ընթերցողների ներկայացրած պահանջներն ու ցանկությունները։

# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ



## ԼԱՎ ԳՈՐԾԻ ՍԿԻԶԲԸ

Դեռևս անհրաժեշտ չափով գրված ու պարզաբանված չեն Հայաստանի ռևոլյուցիոն շարժումների, կոմունիստական պարտիայի, սովետական իշխանության պատմության բոլոր հարցերը։ Մանավանդ լուսաբանված չէ հայ կանանց մասնակցությունը, նրանց հերոսական գործունեությունը Սովետական իշխանության համար մղված պայքարում։ Այս առումով էլ կարևոր և գրվատանքի արժանի գործ է կատարել պատմական գիտությունների թեկնածու Ռոզա Փաշինյանը, հրապարակի վրա դնելով իր «Հայ ռևոլյուցիոն կանայք» աշխատությունը [1], որը պատմական առաջին ուսումնասիրությունն է՝ նվիրված հայ ռևոլյուցիոն կանանց գործունեությանը։

Ռ. Փաշինյանն իր աշխատությունը բաժանում է վեց գլուխների։ Հակիրճ կերպով բնորոշելով կանանց ծանր վիճակը Ռուսաստանում, առավել ևս Անդրկովկասում, հեղինակը մատնանշում է այն սոցիալ-տնտեսական պայմանները, որոնք արթնացնում են կնոջը և նրան ակտիվ ռևոլյուցիոն պայքարի կոչում։ Աշխատավոր կանայք, ուսուցանում էր Վ. Ի. Լենինը, ո՛չ միայն ռեզերվ են, այլ իսկական բանակ, որը գործում է կապիտալիզմի դեմ, չի կարող սոցիալիստական հեղաշրջում լինել, առանց աշխատավոր կանանց հսկայական մասի մասնակցության։

Գրքի առաջին գլուխը կրում է «Հայ առաջին սոցիալ-դեմոկրատ կանայք և նրանց մասնակցությունը 1905—1907 թթ. ռևոլյուցիային» վերնագիրը։ Հեղինակը թվում է Ռուսաստանի առաջին կոմունիստ կանանց անունները, որոնք վճռական դեր խաղացին բանվոր դասակարգի, կոմունիստական պարտիայի վարած պայքարում, կանանց ազատագրման գործում։ Ն. Կ. Կրուպսկայայի, Ե. Դ. Ստասովայի, Ա. Ի. Ելիզարովայի, Ինեսա Արմանդի, Ա. Մ. Կոլոնտայի և շատ ուրիշների կողքին բարձրանում են հայ ռևոլյուցիոն կանայք՝ Նինա Ալաջալովան, Եղենա Բեկզադյանը, Նուշիկ Զավարյանը և ուրիշներ։ Դեռևս փոքր է նրանց թիվը, բայց մարքսիստական գիտությամբ զինված, մի հրաշալի համաստեղություն են կազմում նրանք ռևոլյուցիոն բանվորական շարժման մեջ։ Առավել ևս մեծ է հայ ռևոլյուցիոն կանանց դերը Անդրկովկասում, Արևելքում։ Ռուսաստանից, Եվրոպայից վերադառնալով Բաքու, Թիֆլիս, Շուշի, Երևան, իրենց ռուս, վրացի, հայ եղբայրների հետ, ընդհատակյա պայմաններում հայ կանայք ծավալում են ակտիվ ռևոլյուցիոն գործունեություն՝ մասնակցում ցույցերին, ռևոլյուցիոն գրականություն փոխադրում, կոմունիստական մամուլը տարածում, կապ և օգնություն կազմակերպում բանտի, աքսորի ընկերներին, օգնում բանտարկվածների ընտանիքներին։

Հայ կանայք առաջին զոհերն են տալիս։ 1905 թվականի խաղաղ ցույցի ժամանակ կազակների գնդակից ընկնում է երիտասարդ կոմունիստ Թամարա Մելիք-Շահնազարյանը. կանայք բանտ են նետվում, բռնում աքսորի ճանապարհը, բայց ետ չեն կանգնում ռևոլյուցիայից։ Այդ օրերին ավելի բարձր է հնչում ռևոլյուցիոն բանաստեղծների ձայնը։ Ռ. Փաշինյանը հատուկ տեղ է հատկացնում Շուշանիկ Կուրղինյանին, որի առնական թափով լեցուն բանաստեղծությունները ոգեշնչում են ճնշվածներին, պայքարի հանում աշխատավորական մասսաներին։ Մեծ պայքարի օրերին կոփվում, ամրանում և նոր մարտիկներով են համալրվում հայ կոմունիստ կանանց շարքերը։

Պահպանելով պատմական ժամանակագրությունը, հեղինակը երկրորդ գլխում բնութագրում է հայ բոլշևիկ կանանց ռեակցիայի, ռևոլյուցիոն նոր վերելքի և առաջին համաշխարհային պատերազմի տարիներին։ Դրան հաջորդում է «Հայ կանանց մասնակցությունը փետրվարյան բուր-

[1] Ռ. Հ. Փաշինյան, Հայ ռևոլյուցիոն կանայք, Հայպետհրատ, 1963, Երևան։

շարժման մասին։ Ըստ որում, առաջաբանում տեղ են գտել փաստական և ոճական կարգի մի շարք վրիպումներ ու սխալներ։ Այսպես, օրինակ, առաջաբանում կարդում ենք. «Կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում, առավել մեծ ուժով են ընդգծվում աշխատավորության ստեղծագործական ակտիվության և աշխատանքային դաստիարակության նախաձեռնության նշանակությունն ու դերը» (էջ 3)։ Ինչո՞ւ «ընդգծվում» և ո՛չ թե «դրսևորվում», և բացի դրանից, մի՞թե «ակտիվությունը» և «աշխատանքային դաստիարակությունը» նախաձեռնություն են։ Այնուհետև, այս առաջաբանից առաջին անգամ իմանում ենք, որ կոմունիստական աշխատանքի շարժման նախաձեռնողները եղել են «Մոսկվա-Ռյազան երկաթուղու Մոսկվա-Սարտիրովոչնայա դեպոյի կոմունիստ և կոմերիտական բանվորները» (էջ 4), և որ այդ շարժումը ծնունդ է առել «պարտիայի XXII համագումարի նախօրյակին» (էջ 4)։ Մինչդեռ ո՞վ չգիտե, որ շարժման նախաձեռնողները եղել են Մոսկվա—Կազան երկաթուղու Մոսկվա—Սարտիրովոչնայա դեպոյի աշխատողները և որ այդ շարժումը ծնունդ է առել ոչ թե մեր պարտիայի XXII, այլ XXI համագումարի նախօրյակին։

Սովորաբար, հանձնարարվող գրականության ցանկի կամ բիբլիոգրաֆիայի նպատակն է հնարավորություն տալ ուսումնասիրողին թեմային վերաբերող հսկայական գրականության մեջ ժամանակի և ջանքերի նվազագույն ծախսումով գտնել իրեն հետաքրքրող հարցի պատասխանը։ Դրա համար հանձնարարվող գրականության ցանկը պետք է դասակարգվի թեմատիկ, առարկայական և ժանրային սկզբունքներով։ Իսկ ի՞նչ է ստացվել գրախոսվող գրքույկում։ Հանձնարարական գրականության ցանկը, իհարկե, ընդհանուր պատկերացում է տալիս թեմայի շուրջը հայերեն լեզվով հրապարակված գրականության մասին, բայց ցանկի դասակարգման համար ելակետ է ընդունվել ոչ թե առարկայի մեջ ընդգրկված հարցերի թեմատիկ ու ժանրային բազմազանությունը, այլ այն ձևական սկզբունքը, թե ինչպիսի աղբյուրներից է ստեղծվել գրականությունը, որը թեմայի առանձին ասպեկտներն ուսումնասիրողին կանգնեցնում է այնպիսի փաստի առաջ, որ իրեն հետաքրքրող կոնկրետ հարցի պատասխանը գտնելու համար նա պետք է կարդա ամբողջ գրականությունը։ Սա էլ հենց նսեմացնում է ցանկի արժեքը և, որ ամենակարևորն է, օգտագործման տեսակետից անմատչելի է դառնում բազմահազար ագիտատորների և պրոպագանդիստների համար։ Այս ցանկը տառապում է մի թերությամբ ևս։ Կազմողները սահմանափակվել են միայն մեր ռեսպուբլիկայում հրապարակված գրականությամբ, հետևաբար այն լիակատար և ամբողջական չի կարելի համարել։

«Աշխատել և ապրել կոմունիստաբար» խորագիրը կրող հանձնարարական գրականության ցանկը լավ նախաձեռնություն է, որը, սակայն, կես ճանապարհին չպետք է մնա։ Հարկավոր է շարունակել սկսած գործը և մեր գրադարանային աշխատողներին, լեկտորներին, պրոպագանդիստներին ու ագիտատորներին զինել գիտականորեն մշակված բիբլիոգրաֆիաներով։

---

## ՄԵՐ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԻ ՄՈՏ

# ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ՄԵԾ ՔԻՄԻԱՆ

Ժողովրդական իշխանությունը բուլղարական բուրժուազիայից ժառանգել է կոսմետիկական և պարֆյումերային ապրանքների, եթերային յուղերի, գինու և քացախի թթուների արտադրության մի քանի մանր տնայնագործական ձեռնարկություններ ու արհեստանոցներ։ Այդ մանր և ոչ շահութաբեր ձեռնարկությունները ընդլայնվեցին և վերանորոգվեցին, կառուցվեցին քիմիական նոր գործարաններ։ Քիմիական արդյունաբերության արտադրանքի ծավալը 1948 թվականին արդեն կազմում էր 6,9 միլիոն լև, իսկ 1960 թվականին այն հասավ 109,1 միլիոն լևի։ 1963 թվականին քիմիական և ցելյուլոզա-թղթային ձեռնարկությունները թողարկել են մոտ 300 միլիոն լևի արտադրանք։ Իսկ վերջին 15 տարիների ընթացքում 50 անգամ մեծացել է Բուլղարիայի քիմիական արդյունաբերության արտադրանքի ծավալը։ Այժմ այն արտադրում է տարբեր տեսակի պարարտանյութեր, անօրգանական աղեր, թթուներ, բյուրեղներ, քիմիական-դեղագործական ապրանքներ, ձյութեր, սինթետիկ թելեր, սինթետիկ կաուչուկ և այլն։

Մշակվում է Բուլղարիայի քիմիական արդյունաբերության զարգացման հեռանկարային պլանը։ Մինչև 1980 թվականը նրա ծավալը, համեմատած 1960 թվականի հետ, կավելանա 24,4 անգամ։ Ընդհանուր արդյունաբերական արտադրանքում քիմիական արտադրանքի տեսակարար կշիռը կհասնի 14,3 տոկոսի (1962 թվականին այն հազիվ էր կազմում 4 տոկոս)։

Բուլղարիայի աշխատավորների նպատակն է. մոտակա տարիներին լրիվ բավարարել գյուղատնտեսության՝ քիմիական պարարտանյութերի, գյուղատնտեսական կուլտուրաների ու կենդանիների վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարելու պրեպարատների, բիոքիմիական խթանիչների պահանջը։ Մեծանում է կարբամիդի, կերային ֆոսֆատի և կերային դրոժների արտադրությունը։ Ռազլոգում և Պլևենի մարզի Դոլնա Միտրոպոլիա գյուղում կկառուցվեն հիդրոլիզային կերային դրոժների երկու գործարան։ Դրանք կարտադրեն 28 հազար տոննա չոր դրոժներ՝ 50—55 տոկոս դյուրամարս սպիտակուցների պարունակությամբ։ Արհեստական պարարտանյութերի արտադրությունը 1980 թվականին կավելանա 10 անգամ։

1962 թվականին ազոտային պարարտանյութերի արտադրությունն աճել է 4 անգամ։ 1963 թվականի հունիսին շահագործման հանձնվեց Հին Զագորի մոտ գտնվող ազոտատուկերի գործարանի առաջին հերթը։ Մինչև 1964 թվականի վերջը շահագործման կհանձնվի նաև գործարանի երկրորդ հերթը։ 1970 թվականին նախագծվում է շահագործման հանձնել ազոտատուկային նոր գործարան։ Յուրացվելու է համակցված և բարդ պարարտանյութերի, բակտերիալ և միկրոպարարտանյութերի արտադրությունը։

ԲԿՊ-ի VII համագումարը խնդիր է դրել վերացնել օրգանական քիմիական սինթեզի նյութերի արտադրության ետ մնալը։ Արդեն առկա են օրգանական սինթեզի նյութերի բողարկման մի fանի բազաներ։ Դիմիտրովգրադի fիմիական կոմբինատում ստեղծված են 25 հազար տոննա մեթանոլի, 40 հազար տոննա կարբամիդի, 40 հազար տոննա ֆորմալինի և 30 հազար տոննա կարբամիդային սոսնձի արտադրության կարողություններ։ Կոմբինատն ապահովում է փայտամշակման, կահույfի և բժշկական արդյունաբերության պահանջները։

Օրգանական սինթեզի երկրորդ բազան ստեղծվում է Կարլ Մարfսի անվան սոդայի գործարանին կից։ Այստեղ հենց այս տարի կյուրացվի ամենատարածված պլաստմասսաներից մեկի՝ պոլիվինիլfլորիդի արտադրությունը։ Ընթացիկ տարում fիմիական արդյունաբերության համար արտադրանf կըտա Կրեմիկովսկի կոfսաfիմիական գործարանը։ Կոստենեց կայարանում ընդլայնվում է սինթետիկ բյուրեղների գործարանը։ Գործարկվել է «Վերիլա» ֆաբրիկային կից էմուլսիոն յուղերի արտադրության բաժանմունfը։ Բուրգասի նավթա-fիմիական կոմբինատը կդառնա օրգանական fիմիայի կենտրոն։ 1970 թվականին շահագործման կհանձնվի նավթավերամշակման երկրորդ գործարանը Պլեվենի մոտ։

Կրնդլայնվի գունավոր մետաղների փոխարինիչների, ֆենոլային մամլափոշիների և սինթետիկ ձյութերի, խիստ ամուր և ջերմադիմացկուն պլաստմասսաների արտադրությունը։ Հին Զագորայի մոտ Սովետական Միության օգնությամբ պլանավորված է կառուցել կապրոլակտամից ստացվող պոլիամիդային թելերի գործարան։ Այն կբավարարի կորդի և տեfստիլ արդյունաբերության պահանջները։

Սովետական Միության աջակցությամբ և Փոխադարձ տնտեսական օգնության անդամ երկրների սերտ համագործակցությամբ Բուլղարիան հաջողությամբ է լուծում fիմիական արդյունաբերության արագ զարգացման խնդիրները։



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.։

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենf, հեռ. 2—02—24

Адрес редакции. Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 05237 Պատվեր 1875 Տիրաժ 8500 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ. մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 30/VI 1964 թ.

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյանի փ. № 51, 1964 թ.։

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԳԵՐԵՐԿԱՐԱԿՅԱՑ ՊՈՄՊԵՐ

Բելոռուսական Բոբրույսկ քաղաքի Լենինի անվան գործարանը յուրացրել է հզոր թթվադիմացկուն պոմպերի արտադրությունը։ Իրենց երկարակեցությամբ այդ պոմպերը աշխարհում հավասարը չունեն։ Դրանք կարող են 10 հազար ժամ անընդհատ, առանց կապիտալ վերանորոգման, արտամղել ֆոսֆորաթթու։ Առաջին չորս այդպիսի մեքենաներն արդեն աշխատում են քիմիական գործարաններում։

## ԱՎՏՈՄԱՏ-ՀԱՒԲԵՐ

Շնորհիվ միկրոէլեմենտների, կենդանիների մոտ տեղի են ունենում հրաշքներ. կովերը տալիս են զգալի չափով ավելի կաթ, իսկ ոչխարները, խոզերը և թռչունները՝ միս։ Բայց ամեն օր կենդանուն պետք է կերակրել մեկ հարյուրերորդական գրամ միկրոէլեմենտով։ Հասկանալի է, որ դա բավականին ջանքեր է պահանջում։ Որպեսզի անասնապահներին ազատեն այդ գործից, լատվիական գիտնականները ստեղծել են յուրահատուկ հաբ։ Ընդամենը 10 գրամ կշիռ ունեցող այդ հաբը ընկնելով կովի որովայնը, կես տարվա ընթացքում հավասարաչափ լուծվում է և կարծես թե ավտոմատիկ կերպով գոզավորում միկրոէլեմենտի օրական բաժինը։

## ԿԻԲԵՌՆԵՏԻԿԱՆ ԲԺՇԿՈՒԹՅԱՆԸ

ՍՍՌՄ բժշկական գիտությունների ակադեմիայի Վիշնևսկու անվան վիրահատման ինստիտուտում հաջողությամբ կիրառվում են կիբեռնետիկայի իդեաներն ու մեթոդները։ Այստեղ նախագծվել է գործիք՝ այրվածքի մակերեսը ավտոմատ կերպով որոշելու համար։ Գործիքի էլեկտրոնային սարքը կայծակի արագությամբ կատարում է հաշվարկումներ և ցույց տալիս վնասվածքի մակերեսը։ Դա մեծ նշանակություն ունի հիվանդին ժամանակին օգնելու համար։

## ՀԻՊԵՐՏՈՆԻԱՆ ԲՈՒԺՈՒՄ ԵՆ ՎԻՐԱԲՈՒՅԺՆԵՐԸ

Վիրաբույժները թերապևտների հետ համատեղ մշակել են հիպերտոնիայի տեսակներից մեկի բուժման եղանակը։ Կլինիկական խիրուրգիայի գիտահետազոտական ինստիտուտում կատարվել է ավելի քան 20 վիրահատություն։ Վիրահատման ենթարկվածներից մեծ մասի մոտ ստացվել է դրական արդյունք։ Ինստիտուտի գիտնականների կարծիքով գոյություն ունի երիկամային ձևի հիպերտոնիայի բուժման միայն մեկ՝ խիրուրգիական եղանակ։ Ինստիտուտում կատարվում են վերականգնման վիրահատություններ, այդ թվում և երիկամային արյունատար անոթների վրա։ Եթե արյունատար անոթը խցանված է, վիրահատողը բացում է այն, հեռացնում խցանը, իսկ այնուհետև անոթի պատի վրա դնում պլաստմասսայից կամ վիրահատվողից վերցված երակի հատվածից պատրաստված «կարկատան»։ Արյունատար անոթի նեղացման դեպքում նույնպես այն երկայնքով կտրում են և դնում «կարկատան», որն ապահովում է պատերի լայնացումը։ Երբ հնարավոր չէ կատարել վերականգնման վիրահատություն արյունատար անոթների վրա, վիրահատողը երիկամի արյունասնման շրջանցիկ ուղի է ստեղծում։ Դրա համար որովայնի արտասովոր պլաստմասսայից պատրաստված խողովակ պրոտեզով շրջանցում են նեղացված տեղը, որից հետո արյունը սկըսում է մուտք գործել երիկամի մեջ։ Այդպիսի օպերատիվ միջամտություններով վերականգնվում է արյան հոսքը և դրանով իսկ վերացվում հիվանդության պատճառը։

ԳԻՆԸ 25 Կ. ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՎԻՏՈԲԻՈՄԻՑԻՆԸ ԳՈՐԾԱԾՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Սամարղանդի գյուղատնտեսական ինստիտուտում սկսել է գործել բիոլոգիական ցեխ, որը դեղամիջոցներ է արտադրում ինչպես փորձնական նպատակներով, այնպես էլ կոլխոզային և սովխոզային ֆերմաներում մասսայական օգտագործման համար։ Ցեխի առաջին նորույթը վիտոբիոմիցինն է, որը երկակի գործողությամբ պրեպարատ է. արագացնում է կենդանիների աճը և բուժում ստամոքսային հիվանդությունները։ Նոր պրեպարատը փորձարկվել է մարզի մի քանի տնտեսություններում։ Այն կերի հետ միասին տրվել է հորթերին և խոճկորներին այն ֆերմաներում, որտեղ եղել են ստամոքսային հիվանդությունների բռնկումներ։ Կենդանիները արագորեն ապաքինվել են և իրենց քաշաճը օրական միջին հաշվով ավելացրել 100 գրամով։*

## «ԳՐՊԱՆԻ» ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆ

*Խոպանի ժողտնտխորհի Տոգուզակի գործարանը, որը մասնագիտացված է քամու շարժիչների արտադրության մեջ, թողարկել է փոքր չափի «ВЭ—2М—2» էլեկտրակայաններ։ Դրանցից յուրաքանչյուրի քաշը 50 կգ. է, հզորությունը 100 վատտ։ Պորտատիվ մեխանիզմներն օգտագործում են օդային հոսանքների ուժը։ Մինչև տարվա վերջը գործարանը բաց կթողնի մի քանի հարյուր այդ տիպի քամաէլեկտրակայան։*

## ՍՂՈՑԻ ՏԵՂ ՋՐԻ ՇԻԹ

*Ջրի հզոր շիթը փայտանյութերը կտրում է շատ ավելի խնայողաբար, քան սղոցը։ Նախկինում թեփի վերածվող փայտանյութի հաշվին կարելի է ստանալ պատրաստի արտադրանքի ծավալի 40%-ի չափ տախտակ։*

*Ջրով կտրելու արագությունը զգալի չափով բարձր է, իսկ սարքավորումը շատ պարզ։ Առաջարկված եղանակը կարող է լայնորեն կիրառվել արդյունաբերության մեջ (ԱՄՆ)։*

## ՆՈՐ ՇԻՆԱՆՅՈՒԹ

*Էլեկտրալիտային պղնձի ձուլման ժամանակ առաջացած խարամի օգտագործման նոր մեթոդ է մշակվել։ Գործարանային լաբորատորիայում խարամից ստացված բրիկետները օգտագործվում են փողոցները սալարկելու և այլ նպատակներով։ Բրիկետները մեկ քառակուսի սանտիմետրի վրա դիմանում են 1000 կգ բեռնվածության (Լեհաստան)։*

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ «ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐ»

*Նովոսիբիրսկի էլեկտրատեխնիկական ինստիտուտի ամբիոններում աշխատում են 25 սովորեցնող մեքենաներ։ Էլեկտրոնային ուսուցիչների թիվը արագորեն աճում է։ Մեքենաները նախագծում են ինստիտուտի դասախոսներն ու ուսանողները հասարակական հիմունքներով և պատրաստվում են լաբորատորիաներում ու արհեստանոցներում, առանց լրացուցիչ հատկացումների։ Բուհական կոնստրուկտորների որոնումների շնորհիվ ծնվել է նոր սարք։ Այն աչքի է ընկնում փոքր չափսերով և մեծ դիմացկունությամբ։ Իր չափսերով այն հիշեցնում է պորտատիվ գրամեքենայի։ Տրված ծրագրի համաձայն այդ փոքրածավալ ռեպետիտորը մանկավարժին օգնում է ստուգելու ուսանողների գիտելիքները կամ իրենք ուսանողներն են ստուգում իրենց պատրաստականությունը զանազան դիսցիպլինների գծով։*